


ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք



# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀՈԿՏԵՄԲԵՐ 10 1984



# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ


10

ՀՈԿՏԵՄԲԵՐ, 1984
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 г.
Выходит один раз в месяц
на армянском языке

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении


## Բ Ո Վ Ա Ն Դ Ա Կ Ո Ւ Թ Յ Ո Ւ Ն




ԵՐԵՎԱՆ ◆ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ





# ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ

# Հ Ր Ա Մ Ա Ն Ա Գ Ի Ր Ը

**ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԳԼԽԱՎՈՐ ՔԱՐՏՈՒՂԱՐ, ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԱՀ, ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԿՐԿՆԱԿԻ ՀԵՐՈՍ ԸՆԿԵՐ ԿՈՆՍՏԱՆՏԻՆ ՈՒՍՏԻՆՈՎԻՉ ՉԵՌՆԵՆԿՈՅԻՆ ԼԵՆԻՆԻ ՇՔԱՆՇԱՆՈՎ ԵՎ «ՄՈՒՐՃ ՈՒ ՄԱՆԳԱՂ» ԵՐՐՈՐԴ ՈՍԿԵ ՄԵԴԱԼՈՎ ՊԱՐԳԵՎԱՏՐԵԼՈՒ ՄԱՍԻՆ**

Լենինյան ներքին ու արտաքին քաղաքականության մշակման և իրականացման, էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման, ՍՍՀՄ-ի պաշտպանունակության ամրապնդման ուղղությամբ կուսակցական ու պետական գործունեության մեջ ունեցած ակնառու ծառայությունների, ժողովուրդների խաղաղության և անվտանգության ամրապնդման գործում ներդրած անձնական մեծ ավանդի համար ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ, սոցիալիստական աշխատանքի կրկնակի հերոս ընկեր Կոնստանտին Ուստինովիչ **ՉԵՌՆԵՆԿՈՅԻՆ** պարգևատրել **ԼԵՆԻՆԻ** շքանշանով և **«ՄՈՒՐՃ ՈՒ ՄԱՆԳԱՂ» ԵՐՐՈՐԴ ՈՍԿԵ ՄԵԴԱԼՈՎ:**

ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահի առաջին տեղակալ՝ Վ. ԿՈՒԶՆԵՑՈՎ

ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության քարտուղար՝ Թ. ՄԵՆԹԵՇԱՇՎԻԼԻ

Մոսկվա, Կրեմլ, 22 սեպտեմբերի 1984 թ.

# ՀԱՍՏԱՏԵԼ ԿՅԱՆՔԻ ՃՇՄԱՐՏՈՒԹՅՈՒՆԸ, ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՎԵՀ ԻԴԵԱԼՆԵՐԸ

## Ընկեր Կ. ՈՒ. ՉԵՌՆԵՆԿՈՅԻ ճառը ՍՍՀՄ գրողների միության վարչության հոբելյանական պլենումում 1984 թվականի սեպտեմբերի 25-ին

*Թանկագին ընկերնե՛ր։*

*Ձեր պլենումը նվիրված է սովետական մշակույթի պատմության շատ նշանակալից իրադարձության՝ սովետական գրողների առաջին համամիութենական համագումարի 50-ամյակին։ Եվ այսօր մենք հպարտությամբ ենք նայում մեծ Հոկտեմբերի ծնունդը հանդիսացող սովետական գրականության անցած ուղուն, գրականություն, որի մեջ իրենց փայլուն արտացոլումն են գտել քսաներորդ հարյուրամյակի հեղափոխական վերափոխումները։* (Ծափահարություններ)։

*Դա մի գրականություն է, որն ապրում է ժողովրդի, կուսակցության, երկրի հետ միևնույն կյանքով։ Նրա էջերում ողջ հասակով խոյանում են Լենինը և նրա զինակիցները, քաղաքացիական պատերազմի և առաջին հնգամյակների հերոսները, մեծ Հայրենականի անմահ ռազմիկների հոյակապ կերպարները։ Դա մի գրականություն է, որի կենտրոնում աշխատանքի մարդն է և մարդը աշխատանքում, սոցիալիզմի պրպտուն, որոնող, գործունյա, ակտիվ կառուցողը։ Դա մի գրականություն է, որը կարողանում է հասկանալ ու պատկերել իր ժամանակակցին՝ նրա ներաշխարհի և բարոյական որոնումների ողջ բարդությամբ, նրա ուրախություններով ու տագնապներով, ճշմարտության և արդարության նրա ձգտումով։*

*Այն գործը, որ այնքան հիանալի կերպով սկսեցին Գորկին և Մայակովսկին, Ֆադեևը և Շոլոխովը, այսօր շարունակում են մեր բազմազգ գրականության մեջ ակտիվորեն և արգասավոր կերպով աշխատող գրողներն ու բանաստեղծները։* (Ծափահարություններ)։ *Ես, հասկանալի է, այստեղ չեմ հիշատակի անուններ կամ կոնկրետ ստեղծագործություններ։ Կասեմ մի բան. այն նորը, տաղանդավորն ու խորիմաստը, որ գրականության մեջ երևան են եկել վերջին տարիներս, ինչը հուզում է սովետական ընթերցողին, ստիպում է մտածել ու վիճել, ճշմարիտ վկայությունն է այն բանի, որ մեր աչքի առաջ սովետական, ինչպես նաև համաշխարհային դասական գրականության մեջ մուտք են գործում այնպիսի ստեղծագործություններ, որոնք իրենց ժամանակից շատ ավելի կապրեն և դրա մասին ճշմարտացիորեն կպատմեն սերունդներին։*

*Ես երևի սխալված չեմ լինի ասելով, որ ամբողջ գրականության և ար-*



*վեստի հաջողությունների ամենաճիշտ չափանիշը այն ներգործության իրական աստիճանն է, որ դրանք ունենում են ժողովրդի գաղափարաբարոյական նկարագրի ձևավորման վրա։ Այս իմաստով սովետական գրականությունը, իրոք, իր հավասարը չունի։ Նա իր մեջ մարմնավորում է նոր, սոցիալիստական քաղաքակրթության հոգևոր հարստությունը։ Ահա թե ինչու կուսակցությունը, ժողովուրդը այդպիսի հարգանքով են վերաբերվում գրողների, արվեստի բոլոր վարպետների ազնիվ աշխատանքին։* (Ծափահարություններ)։

*Ընկերնե՛ր, գրողների առաջին համագումարի տարեդարձը տրամադրում է անկեղծ, հանգամանալից խոսակցության ո՛չ միայն գրականության վիճակի մասին, այլև ընդհանրապես գեղարվեստական ստեղծագործության պրոբլեմների մասին, մեր կյանքում արվեստի ունեցած տեղի մասին։ Այդպիսի խոսակցության պահանջ դուք, սովետական արվեստի գործիչներդ, կարծում եմ, ունեք։ Վստահ եմ, որ դրանով շահագրգռված են նաև ձեր տասնյակ միլիոնավոր ընթերցողները, հանդիսականները, ունկնդիրները, մի խոսքով՝ մեր ողջ հասարակությունը։ Չեմ թաքցնի. այդ խոսակցությանը ես նույնպես կուզենայի մասնակցել։ Եվ, բնական է, խոսելով գեղարվեստական ստեղծագործության պրոբլեմների մասին, ես մտադիր չեմ ձեզ դեղատոմսեր տալ, թե դրանք ինչպես լուծել։ Ես կուզենայի նախ և առաջ արտահայտվել այդ պրոբլեմների քաղաքական կողմերի մասին, ձեզ հաղորդակից դարձնել իմ հոգսերին, պատմել կուսակցական քաղաքականության այսօրվա արմատական խնդիրների մասին, այն մասին, թե մենք ինչպես ենք դրանք հասկանում, ինչպես ենք գործում։*

*Գեղարվեստական ստեղծագործության պրոբլեմներ քաղաքականությունից դուրս գոյություն չունեն։ Մեզ համար դա ակնհայտ ճշմարտություն է։ Սակայն դա, ինչպես հայտնի է, հեշտությամբ ուղի չի բացել իր համար։ Եվ հազիվ թե կարելի լինի գերագնահատել այն ավանդը, որ այդ ճշմարտության սկզբունքային հաստատման մեջ ներդրեց գրողների առաջին համագումարը։*

*Այդ համագումարում խոսքը վերաբերում էր սոցիալիստական հասարակության մեջ գրականության կոչումին, նոր մարդու դաստիարակության գործում դրա խաղացած դերին, գրողի քաղաքացիական պարտքին։ Այդ հարցերին լայնորեն, լենինաբար վերաբերվեց Ալեքսեյ Մաքսիմովիչ Գորկին։ Դուք, անշուշտ, հիշում եք նրա գլխավոր միտքը. գրողը պետք է սովորի ակտիվորեն օգտագործել այն մեծ իրավունքը, որ իրեն տվել է սոցիալիզմը։ Նոր կյանքի կառուցմանը անմիջականորեն մասնակցելու, ամեն քարագծի, իր դարն ապրածի խիստ դատավորը լինելու, իր արվեստով իսկական մարդասիրություն, սոցիալիզմի վեհ իդեալները հաստատելու իրավունքը։ Այսպիսին է ըստ էության մեր գրականության, արվեստի հիմնական գեղարվեստական մեթոդի՝ սոցիալիստական ռեալիզմի քաղաքական իմաստը։*

*Առաջին համագումարը բեկումնային ուղենիշ դարձավ նոր, սոցիալիստական ուղղության գրականության ձևավորման պրոցեսում։ Եվ այն սկսվեց, ինչպես ասում են, ոչ թե մաքուր թերթից, այլ աճեց առաջավոր ռուս գրականության, Ռուսաստանի բոլոր ժողովուրդների դեմոկրատական մշակույթի, համաշխարհային դասական ժառանգության հիմքի վրա։*

*Ամփոփելով համագումարի արդյունքները՝ Գորկին այն գնահատեց որպես բոլշևիզմի հաղթանակ։ Եվ նա անպայման իրավացի էր. կոմունիստական կուսակցականության և կազմակերպվածության ներմուծումը գրականության ոլորտ նրան օգնեց դառնալու, ինչպես կանխատեսել էր Լենինը, իրոք, ազատ, աշխատանքի մարդու հետ բացեիբաց կապված գրականություն։ Գրողների միավորման՝ երկար որոնումից հետո գտնված և համագումարում վավերացված կազմակերպական ձևն ընդունեցին մյուս արվեստների վարպետները։ Եվ դա բռնեց ժամանակի քննությունը։*

*Բայց առաջին համագումարի նշանակությունը դուրս եկավ գեղարվեստական կյանքի շրջանակներից. այն բնագիծ դարձավ նաև սովետական մտավորականության ձևավորման պատմության մեջ։ Վերհիշեք. համագումարի պատգամավորների երկու երրորդ մասը ծագումով բանվորներ ու գյուղացիներ էին։*

բողջ կոմպլեքսը։ Դա լիովին համապատասխանում է լենինյան պատկերացման այն մասին, որ «կոմունիզմը սոցիալիզմի զարգացման բարձրագույն աստիճանն է»։ Եվ ես ուզում եմ հատկապես շեշտել, ընկերնե՛ր, զարգացած սոցիալիզմի փուլի տևականությունը բնավ չի նշանակում, թե մենք չենք կարող չհոգալ տեմպերի մշտական արագացման մասին, հետաձգել ինչ-որ հասունացած գործեր։ Այսօր մենք մեր զարգացման առավելագույն արագացմանն ենք նպատակամղում ժողովրդի բոլոր ստեղծագործական ուժերը, նրա աշխատանքային ձեռներեցությունը։

Այնպես որ, «զարգացած սոցիալիզմ» բանաձևից չի կարելի օգտվել սոսկ որպես այնպիսի փաստաթղթից, որը հավաստագրում է, այսպես ասած, մեր անցյալ հաջողությունները և ինքնաբերաբար երաշխավորում մեր ապագա հաջողությունները։ Դա մեզ ուրիշ բանի է նպատակամղում, այն բանին, որ սովետական հասարակության կյանքի բոլոր կողմերը համապատասխանեցնենք սոցիալիզմի մասին ամենավեհ, ամենապահանջկոտ և, իհարկե, գիտականորեն հիմնավորված պատկերացումներին։

Պարզ է, որ դա տնտեսական ու կազմակերպչական եռանդագին ջանքեր է պահանջում։ Դրա հետ մեկտեղ անհրաժեշտ է նաև հաստատակամ աշխատանք տանել բարձրացնելու մասսաների գիտակցականությունը, եթե ուզում ենք, որոշակիորեն վերակողմնորոշել հասարակական գիտակցությունը, որպեսզի այն ավելի արագ յուրացնի կուսակցության կողմից առաջադրվող նոր գաղափարները, ավելի վճռականորեն ազատվի հնացած, հետամնաց հայացքներից։ Եվ այդ կարևոր գաղափարաքաղաքական աշխատանքում մենք հույս ենք դնում մեր մտավորականության ակտիվ օգնության վրա։

Ես վստահ եմ, որ այդ խնդիրը ոգեշնչող հսկայական նշանակություն կունենա մեր գրականության և արվեստի գործիչների համար։ Նրանք կոչված են իրենց միջոցներով հաստատելու կյանքի, նրա պրոբլեմների նկատմամբ հենց այն մոտեցումը, որի օգտին հանդես է գալիս, որի համար պայքարում է կուսակցությունը։ Ի դեպ, եթե պահանջվեր համառոտակի բնորոշել այդ մոտեցման էությունը, կարելի կլիներ, թերևս, օգտվել ձեզ լավ ծանոթ բառերից՝ սոցիալիստական ռեալիզմ։

Այժմ գրականությունը, կինոն, թատրոնը հաճախ են դիմում բարդ, հակասական երևույթներին։ Եվ դրանում զարմանալի ոչինչ չկա։ Հակասությունները բնական և անխուսափելի են սոցիալիստական հասարակության զարգացման պրոցեսում։ Եվ, իհարկե, դրանք միշտ այսպես թե այնպես ազդում են մարդկանց ճակատագրի վրա, դառնում բարոյական բախումների աղբյուր, մանավանդ որ այդ հակասությունների հաղթահարումը, թեև դրանք մեզ մոտ անտագոնիստական բնույթ չեն կրում, պահանջում են մեծ ջանքեր, քաղաքացիական մեծ համարձակություն, սկզբունքայնություն։ Սա շատ հարուստ սնունդ է գրողի խորհրդածությունների համար, գրականության մշտնջենական առաքելության կատարման համար. հասարակությանը, յուրաքանչյուր մարդու մղել ավելի սևեռուն, ավելի խստորեն նայելու ինքն իրեն, այն բանի համար, որ մարդուն օգնություն ցույց տրվի միշտ և ամեն ինչում գրավելու մեր ընդհանուր գործի տոկուն մարտիկի ակտիվ դիրքորոշում։

Մեր գրականությունը, արվեստը, կուսակցությանն օգնելով մարդկանց դաստիարակելու կոմունիստական ոգով, ձևավորելու իրոք սովետական բնավորություն, շատ բան են արել այդ բնավորության բնույթը բացահայտելու համար, ժողովրդին, սոցիալիզմին անսահմանորեն նվիրված, նոր աշխարհի կառուցման հերոսականությունը մարմնավորող մարդկանց ճշմարտացի, լիարյուն կերպարներ ստեղծելու համար։ Մենք ամենքս հասկանում ենք. հեշտ չէ այդ բանն անել, կյանքից գեղարվեստական ստեղծագործություն փոխադրել այդպիսի մարդկանց։ Դրա համար էլ, երևի, ստեղծագործական միջավայրում բնական ու անհրաժեշտ են վեճերը այն մասին, թե ինչպիսին պետք է լինի դրական հերոսը։ Ես, իհարկե, մտադիր չեմ միջամտել դրանց։ Կուզենայի միայն մի նկատառում հայտնել։

Ինձ այնքան էլ արդյունավետ չեն թվում այն բանավեճերը, թե ինչպիսին



պետք է լինի, օրինակ, հերոսի դրական և բացասական հատկությունների «չափավորումը»։ Կարևոր է, ընկերնե՛ր, որ արվեստագետի ստեղծագործական որոնումները ունենան, եթե կարելի է այդպես արտահայտվել, միասնական մեկնակետ— հավատարմություն կյանքի ճշմարտությանը, սոցիալիստական իդեալներին։ Սա արվեստի կուսակցականության, ժողովրդայնության անհրաժեշտ պայմանն է։

Ինչ խոսք, ընթերցողը, հանդիսականը, հատկապես երիտասարդները, կցանկանային ավելի հաճախ գրքում կամ էկրանին հանդիպել իրենց այնպիսի ժամանակակցի, որին իրենք կարողանային հավատալ, որին իրենք կարողանային սիրել, որին ցանկանային նմանվել։ Կրկնեմ այն, ինչ ասել եմ Կենտկոմի հունիսյան պլենումում, քանի որ համոզված եմ. ոչինչ չի կարող փոխարինել գրականությանը, արվեստին հասարակական բարքերի ու մարդկանց զգացմունքների դաստիարակության գործում և մտքի ու սրտի վրա ներգործելու նրանց ունակության գործում։

Կցանկանայի այս առնչությամբ ահա թե էլի ինչ ասել։ Գեղարվեստական մշակույթին մարդկանց հաղորդակցությունը, գեղագիտական դաստիարակությունը կայուն արդյունքներ են տալիս, երբ սկսվում են փոքր հասակից։ Մեր դպրոցի անվիճելի արժանիքն այն է, որ մեզ մոտ փաստորեն չկան դասականի կողմից ծաղրված «միտրոֆանուշկաներ»։ Բայց ահա հուզական-հոգեբանական իմաստով տհասների մենք դեռևս, ցավոք, հանդիպում ենք։ Հարկավոր է ըստ երևույթին դպրոցական ռեֆորմն օգտագործել անհատի ձևավորման վրա գրականության և արվեստի ազդեցությունն ուժեղացնելու համար։ Համոզված եմ, որ այսօր մատաղ սերնդի գաղափարաբարոյական զարգացմանը, զգացմունքների կուլտուրայի դաստիարակմանը ավելի քիչ ուշադրություն չպետք է նվիրել, քան գիտությունների հիմունքների ուսուցմանը։ Կուսակցությունն այս գործում ակնկալում է ստեղծագործական միությունների, մեր գեղարվեստական մտավորականության կոնկրետ օգնությունը։

Քաղաքացիականության, սովետական հայրենասիրության, ինտերնացիոնալիզմի կարևոր գործիք է եղել և մնում է պատմությամբ դաստիարակելը։ Եվ լավ է, որ գրականության մեջ, արվեստում յուրօրինակ վերածնունդ է ապրում պատմական թեման։ Կարողանալ անցյալի հետ խոսել լրջորեն, կշռադատված, մարքս-լենինյան աշխարհհայացքի դիրքերից. ահա թե ինչն է, ինչպես ցույց է տալիս պրակտիկան, հաջողություն բերում այդ գործում։ Պատմությունը չի կարելի ոչ արտագրել, ոչ սրբագրել։ Առանձնապես խորագնին, իրոք դասակարգային մոտեցում է պահանջում սոցիալիզմի համար սովետական ժողովրդի պայքարի պատմության գեղարվեստական մարմնավորումը։ Եվ ճշմարտությունից չշեղվելու համար արվեստագետը պարտավոր է ամուր կանգնել փաստերի հողի վրա, հասարակական զարգացման օրինաչափությունների և իրական ընթացքի իմացությունը չփոխարինել հույզերով ու երևակայության կամայական խաղով։

Մի բան ևս։ Ուրախալի է, որ սովետական արվեստագետներն սկսել են ավելի հաճախ դիմել հրապարակախոսությանը։ Սա նրանց հնարավորություն է տալիս համարձակ և ժամանակին թափանցել ամենահրատապ պրոբլեմների, տնտեսական և սոցիալական այն կոնկրետ հարցերի մեջ, որոնք հուզում են մարդկանց։ Սա օգնում է այնպիսի ստեղծագործությունների կերտմանը, որոնք արվեստի միջոցներով երբեմն ասես առաջ են անցնում ժամանակից, սուր կերպով արծարծելով հասունացած կենսական պրոբլեմները և առաջարկելով դրանց լուծման կոնկրետ ուղիներ։

Մի խոսքով, ընկերնե՛ր, ինչ թեմայի էլ, որ արվեստագետը դիմի, ժամանակակից թե պատմական, ներքին թե միջազգային, ինչ ժանրով էլ, որ նա աշխատի, նրա աշխատանքի հասարակական արժեքն առաջին հերթին որոշվում է նրա գրաված ու հաստատած ակտիվ գաղափարաքաղաքական, աշխարհհայացքային դիրքով։

Ընկերնե՛ր։ Մեր առաջընթացի տեմպերի վրա քիչ ազդեցություն չի գործում արտաքին քաղաքական իրադրությունը։ Իսկ այն այժմ տագնապալի

բնույթ է ստանում։ Վերջին ժամանակներս ես արդեն մի անգամ չէ, որ առիթ ունեցել եմ խոսելու այդ մասին։ Այնպես որ, թույլ տվեք արտահայտել միայն մի քանի նկատառումներ։

Ներկա միջազգային իրավիճակի դաժան ճշմարտությունն այնպիսին է, որ միջուկային սպառնալիքը, ցավոք, մեծ է։ Դրանից ո՛չ թաքնվել կլինի, ո՛չ էլ կատակի տալով պրծնել։ Միջուկային սպառնալիքի դեմ հարկավոր է ակտիվ և նպատակասլաց պայքարել։ Մենք այդպես էլ անում ենք։

Դրանով է առաջին հերթին բնորոշվում նաև մեր վերաբերմունքը Միացյալ Նահանգների հետ հարաբերությունների նկատմամբ։ Չէ՛ որ այդ հարաբերությունների վիճակով է զգալի չափով պայմանավորված միջազգային ասպարեզում տիրող իրադրությունը։ Սակայն, դատելով ըստ ամենայնի, ԱՄՆ-ում կամ չեն ուզում, կամ էլ առայժմ պատրաստ չեն հասկանալու, որ բացի հավասարության, փոխադարձ հարգանքի և միմյանց ներքին գործերին չմիջամտելու սկզբունքներով սովետա-ամերիկյան հարաբերությունների կարգավորումից, ուրիշ խելամիտ ուղի չկա։

Մեր օրերում միջուկային հզոր պոտենցիալ ունենալը հսկայական բեռ է։ Ես նույնիսկ չեմ խոսում այն մասին, թե որքան թանկ է դա նստում։ Ես խոսում եմ այն մեծագույն պատասխանատվության բեռի մասին, որ դա դնում է քաղաքական գործիչների վրա, նրանցից պահանջում է խիստ լուրջ վերաբերմունք պատերազմի ու խաղաղության հարցերի, կոնֆլիկտային իրավիճակների նկատմամբ։ Հենց դրանից էլ մենք ելնում ենք։ Մեր նպատակները պարզ են ու անփոփոխ. մենք կտրականապես դեմ ենք ռազմական բնագավառի առճակատմանը։

Մենք վճռականորեն հանդես ենք գալիս սպառազինությունների մրցավազքի արմատական սահմանափակման և կրճատման օգտին, միջուկային զենքի արգելման և լիակատար վերացման օգտին։

Այդ նույն նպատակների օգտին էլ արտասահմանում այսօր հանդես են գալիս տարբեր հայացքների ու համոզմունքների միլիոնավոր ու միլիոնավոր մարդիկ։ Նրանց համատեղ գործողությունները նկատելի ազդեցություն են գործում հակապատերազմական հասարակական կարծիքի ձևավորման վրա։ Իսկ դա, ընկերնե՛ր, շատ կարևոր է։

Եվ այստեղ ևս շատ բան կարող են անել մտավորականությունը, մշակույթի գործիչները։ Ահա թե ինչու այսօր այդքան աննախադեպ տագնապալի ու պահանջկոտ է հնչում Գորկու նշանավոր կոչ-հարցը. «Ո՞ւմ հետ եք դուք, մշակույթի վարպետներ»։ Եվ բանը, իհարկե, չի հանգեցվում ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի միջև ուղղակի ընտրություն կատարելուն, ինչպես դա հաճախ պատկերում են հակակոմունիստները։ Բանը կյանքի և մեր քաղաքակրթության կործանման միջև ընտրությունն է։ Ոչ մի «ոսկե միջին» այստեղ չկա. կա՛մ դու նրանց հետ ես, ովքեր պատերազմ են նախապատրաստում, կա՛մ էլ նրանց հետ, ովքեր մերժում են իմպերիալիզմի արկածախնդրական քաղաքականությունը, պայքարում հանուն խաղաղ գոյակցության, հանուն զինաթափման։

Ուստի և այնքան կարևոր է, որ մեր ստեղծագործական մտավորականությունն իր արտասահմանյան կոլեգաներին օգնի այդպիսի ընտրություն կատարել։ Դրանից, ի դեպ, Արևմուտքի կառավարող շրջանները շատ են վախենում։ Նրանք ձգտում են իրենց երկրների մտավորականության աչքում վարկաբեկել սոցիալիզմի գաղափարներն ու պրակտիկան, նրան գժտեցնել սոցիալիստական պետությունների ստեղծագործական մտավորականության հետ։ Խաղաղության թշնամիները վախենում են մշակույթի վարպետների համախմբումից, որոնց ձայնին ունկնդրում են միլիոնավոր մարդիկ։

Իսկ մինչդեռ Արևմուտքում սիրում են դատողություններ անել գաղափարների ու հայացքների համադրման, մարդկանց կոնտակտների զարգացման օգտակարության մասին։ Մենք, իհարկե, դրան ենք կողմնակից։ Բայց ինչի՞ ենք մենք բախվում պրակտիկայում։ Անամոթաբար մեր ներքին գործերին միջամտելու փորձերի, իսկական հոգեբանական պատերազմի։ Եվ դրա



նպատակներից մեկն է գոնե փոքր-ինչ սասանել կուսակցության հետ մեր մշակույթի գործիչների միասնությունը։

Ինչպես գիտեք, դիմում են, ուղղակի ասենք, անվայել հնարանքների՝ կեղծիք, փաստերի խեղաթյուրում, հասկացությունների նենգափոխում։ Ասում են, օրինակ, թե սոցիալիզմը «չի հանդուրժում» ստեղծագործության ազատություն, թե ՍՄԿԿ-ն, իբր, փակում է գեղարվեստական որոնումների ուղին, պահանջում «միատեսակություն» գրականության և արվեստի ոլորտում։ Այստեղ ամեն ինչ գլխիվայր է շուռ տրված։ Եվ, իհարկե, ամենևին էլ ոչ անտեղյակությունից։ Այնպես որ, մեր գաղափարական հակառակորդներին վերահամոզելը, իհարկե, անհույս բան է։ Բայց հարկավոր է անդուլ կերպով պաշտպանել ու պարզաբանել մեր հայացքները, բռնել նոր կարգերի անմաքրաբարո «քննադատների» ձեռքը, մարդկանց ակտիվորեն ճշմարտությունը հասցնել սոցիալիզմի մասին, սովետական մարդկանց, հատկապես երիտասարդության, անդուլ կերպով դաստիարակել դասակարգային գգոնության, մեր մեծ հայրենիքի պաշտպանությանը պատրաստ լինելու ոգով։

Կցանկանայի ահա թե էլի ինչ նկատել։ Մենք հույս ունենք, որ Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի տարած հաղթանակի 40-րդ տարեդարձի տոնակատարության նախապատրաստության ժամանակաշրջանում ստեղծագործական միությունների և կազմակերպությունների ղեկավարությունը հնարավորություն կգտնի արվեստի վարպետների առավել խոր ուշադրությունը հրավիրել ռազմահայրենասիրական թեմայի վրա։

Այսօր մենք չենք կարող բողոքել այդ թեմայով երկերի քանակից, թեմա, որը վաղուց ի վեր արժանի տեղ է գրավում մեր մշակույթի գործիչների ստեղծագործության մեջ։ Բայց կցանկանայինք, որ այդպիսի ստեղծագործություններ երևան գալը ավելի հաճախ իսկական իրադարձություն դառնա երկրի գեղարվեստական կյանքում, սովետական գրականության և արվեստի զարգացման գործում։

Ընկերնե՛ր։ Մեր կուսակցությունն ու պետությունը ստեղծում են այնպիսի պայմաններ, որոնք տաղանդին օգնում են բացահայտվելու լիովին, ստեղծագործելու հանուն ժողովրդի բարօրության։ Մենք վճռականորեն մերժում ենք ստեղծագործական աշխատանքի մարդկանց նկատմամբ մանրախնդիր խնամակալությունը։ Ստեղծագործությունը հենց նրա համար էլ ստեղծագործություն է, որ ազատ է. մահակի սպառնալիքով, իրոք, նոր, գեղեցիկ ոչինչ չես ստեղծի։ Հին ճշմարտություն է, այն ապացուցելը նման է բաց դուռ բախելուն։

Սակայն ստեղծագործության ազատությունը ընտրյալների առանձնաշնորհը չէ։ Կուսակցությունը հոգատարությամբ է վերաբերվում տաղանդի նկատմամբ, հանձին նրա տեսնում է հասարակության ամենաարժեքավոր սեփականությունը։ Բայց ոչ ոք և ոչինչ չի կարող մարդուն ազատել հասարակության՝ բոլորի համար պարտադիր պահանջներից, նրա օրենքներից։

Միամտություն կլիներ մտածել, թե կարելի է սասանել մեր կարգերի բարոյաքաղաքական հիմքերը և միաժամանակ նրանից բարիք ու երախտագիտություն սպասել։ Եվ, իհարկե, ժողովուրդը ոչ ոքի չի ների այսօր աշխարհում մղվող անչափ սուր պայքարում մեր գաղափարական հակառակորդների կողմն անցնելու համար։ Այստեղ երկու կարծիք լինել չի կարող։

Այո՛, ընկերնե՛ր, Արևմուտքում շատ անհեթեթություններ, բացահայտ ստեր են գրվել և ասվել արվեստի նկատմամբ մեր կուսակցական մոտեցման բուն իմաստը խեղաթյուրելու համար։ Ահա թե ինչպես է լինում երբեմն։ Վերցնում են սովետական հեղինակի մի ոչ այնքան հաջող ստեղծագործություն, որտեղ կյանքի գեղարվեստական հետազոտությունը փոխարինված է դեկլարատիվությամբ։ Եվ համոզում են բոլորին ու ամենքին. ահա, իբր, տեսեք, թե ՍՄԿԿ-ն ինչ նմուշի է ստիպում հետևել։ Իսկ խորիմաստ, խիզախ սուր գիրքը՝ գրված կուսակցական դիրքերից, բնութագրվում է որպես «շեղում» նորմայից։ Կարծում եմ, ինձ թույլ կտաք չդիմել կոնկրետ օրինակների. այս դահլիճում նստած ընկերներից մի քանիսը նման մեքենայությունների զոհ են դարձել։

խոր գաղափարայնություն, քաղաքացիականություն և գեղարվեստական վարպետության բարձր մակարդակ. սա է արվեստի գործիչների նկատմամբ կուսակցության, ժողովրդի գլխավոր պահանջը։ Հենց դրան էլ մեր ստեղծագործական մտավորականությանը կողմնորոշում են ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումի որոշումները և մշակույթի հարցերին նվիրված վերջին ժամանակների ձեզ հայտնի մի շարք որոշումներ։

Մեր մեծ գործը, մեր մարդասիրական նպատակները կարիք չունեն հանգավոր և արձակ անհոգի փառաբանության։ Այն ստեղծագործությունները, որոնց մեջ ինքնատիպ, թարմ միտքը, ինչպես կծու կերպով նկատել է Շչեդրինը, փոխարինվում է «տարրական ճշմարտությունների անտարբեր որոճմամբ», միայն ծաղրանքով կարելի է անվանել գեղարվեստական։ Վատ գրված գրքերն ու օպերաները, պարզունակ նկարահանված հեռուստաֆիլմերն ու կինոֆիլմերը, անարվեստ մշակված քանդակներն ու նկարները ոչ թե ուղղակի փչացնում են միլիոնավոր մարդկանց ճաշակը։ Դրանք վարկաբեկում են այն թեմաներն ու գաղափարները, որոնց ձեռնամուխ են լինում դրանք կերտողները։ Այնպես որ, արվեստում գորշության և դիմազրկության դեմ հարկավոր է պայքարել համառորեն ու սկզբունքայնորեն և, իհարկե, ոչ մի ներողամտություն չի լինի անգաղափարայնության կամ աշխարհայացքային խառնիճաղանջության դրսևորումների նկատմամբ։

Ի դեպ, այն չէ՞, արդյոք, ընկերնե՛ր, մեր որոշ քննադատների դժբախտությունը, որ նրանք գործին վերաբերվում են միակողմանիորեն և կամ հաճոյախոսություններ են շռայլում թույլ վեպի, ներկայացման, ֆիլմի հասցեին «թեմայի կարևորության» համար, կամ էլ հիանում են գաղափարապես սնանկ ստեղծագործության «գեղագիտական գյուտերով»։

Մինչդեռ մեր հայրենական, ինչպես և համաշխարհային փորձը ցույց է տալիս, որ մեծ գրականությունը, մեծ արվեստը չեն կարող գոյություն ունենալ առանց պրոֆեսիոնալ բարձր մակարդակի, քաղաքացիականորեն պատասխանատու քննադատության։ Իսկ դա նշանակում է, որ մեր մարքս-լենինյան քննադատությունը պետք է ո՛չ միայն ճշգրիտ գնահատի այս կամ այն ստեղծագործությունը։ Մենք ավելի շատ սպասելիքներ ունենք գեղարվեստական քննադատությունից։ Կարողանալ բացահայտել այն պրոբլեմների հասարակական խոր իմաստը, որոնք շոշափվում են ստեղծագործություններում, պաշտպանել հեղինակներին, եթե նրանք ճիշտ են առաջադրում դրանք, փաստարկված կերպով բանավիճել նրանց հետ, երբ նրանք մոլորության մեջ են։ Մի խոսքով, մեր քննադատությունը պետք է օգնի ժողովրդի հոգևոր կյանքի շարժմանը։ Ահա թե ինչու, ինչպես գտնում էր Լենինը, անհրաժեշտ է «գրական քննադատությունը ևս ավելի սերտորեն կապել կուսակցական աշխատանքի հետ»։

Բոլոր նրանք, ում կուսակցությունը վստահել է լենինյան գիծը վարել արվեստի ոլորտում, պետք է այդ բանը անեն խելացի, նախաձեռնողաբար։ Իսկ դա նշանակում է անկեղծ, սկզբունքային խոսակցություն ունենալ ստեղծագործական աշխատանքի մարդկանց հետ։ Ոչ մի դեպքում չխուսափել սուր, արվեստագետին հուզող պրոբլեմներից։ Դրանց լուծումը չդնել այսպես կոչված վերադաս ատյանների վրա, կարողանալ համոզել, իսկ եթե պետք է՝ նաև վերահամոզել զրուցակցին։ Առանց դրա անհնար է գրականության և արվեստի կուսակցական ղեկավարումը։ Հենց դա էլ, Գորկու դիպուկ արտահայտությամբ, նրան դարձնում է «բարոյապես հեղինակավոր ուժ»։

Ընկերնե՛ր։ Ստեղծագործական միությունների քաղաքական միջուկը, համախմբող ուժը դրանցում աշխատող կոմունիստներն են։ Նրանք կոչված են հետևողականորեն հաստատելու կուսակցականության ոգին գեղարվեստական միջավայրում, ակտիվորեն ներգործելու ստեղծագործության գաղափարական ուղղվածության վրա, նպաստելու գրականության և արվեստի գործիչների մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորմանը, օգնելու ստեղծագործական երիտասարդության կազմավորմանը։ Հատուկ նշանակություն ունի միմյանց նկատմամբ արվեստագետների բարձր պահանջկոտության մթնոլորտի ամրապնդումը։ Դա միայն օգուտ է բերում հենց արվեստագետներին և ամբողջ արվեստին։

Սովետական մշակույթն այսօր ներկայանում է երկրի բոլոր ազգերի ու ազգությունների կողմից ստեղծված հոգևոր արժեքների մի օրգանական համաձուլվածք։ Դրա համար էլ միանգամայն հասկանալի է գրողի ու նկարչի, երաժշտի ու ճարտարապետի ձգտումը՝ հենվելու իր ժողովրդի բազմադարյան մշակութային ավանդույթների վրա, ավելի խոր ու վառ արտացոլելու իր հանրապետության կյանքը։

Դրա հետ մեկտեղ գեղարվեստական պրակտիկան համոզում է. ազգային մշակույթը որքան սերտ է շաղկապված մյուսների հետ, որքան ինտենսիվորեն է ներառնում եղբայր ժողովուրդների հոգևոր և գեղարվեստական փորձի այն հատկանիշները, որոնք ինտերնացիոնալ նշանակություն են ձեռք բերել, այնքան ավելի արագ ու բեղմնավոր է նա զարգանում։ Այնքան մեծ ավանդ է նա մուծում ամբողջ սովետական ժողովրդի, մեր ողջ հասարակության հոգևոր կյանքի հարստացման մեջ։

Թանկագին ընկերնե՛ր։ Ելույթս ավարտելուց առաջ կցանկանայի հաղորդել մի նորություն, որը, չեմ կասկածում, բոլորիդ կուրախացնի։ Սովետական գրականության ասպարեզում ունեցած վաստակի, կոմունիստական շինարարության գործում սովետական գրողների ներդրած մեծ ավանդի համար և ՍՍՀՄ գրողների միության ստեղծման 50-ամյակի կապակցությամբ ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը նրան պարգևատրել է Ժողովուրդների բարեկամության շքանշանով։ (Բուռն, երկարատև ծափահարություններ):

Իսկ հիմա թույլ տվեք ձեզ բոլորիդ մաղթել քաջառողջություն, ստեղծագործական հաջողություններ և գրողների միությանը հանձնել նրա արժանի բարձր պարգևը։ (Բուռն, երկարատև ծափահարություններ):

---

# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1984 թվականի սեպտեմբերի 22-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենում:

Պլենումը քննարկեց «Կոմերիտմիության կուսակցական ղեկավարման հետագա բարելավման և երիտասարդության կոմունիստական դաստիարակության գործում կոմերիտմիության դերի բարձրացման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման կատարման, այդ հարցերի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Կ. Ու. Չեռնենկոյի ելույթների բովանդակած դրույթների ու հետևությունների իրականացման ուղղությամբ հանրապետական կուսակցական կազմակերպության խնդիրների մասին» հարցը:

Զեկուցումով հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկեր **Կ. Ս. Դեմիրճյանը:**

Զեկուցման շուրջ ծավալված մտքերի փոխանակությանը մասնակցեցին ՀԿԿ Լենինականի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. **Դ. Ա. Հարությունյանը**, ՀԿԿ Երևանի քաղկոմի երկրորդ քարտուղար ընկ. **Ն. Պ. Ստեփանյանը**, Սիսիանի շրջանի Բռնակոթ գյուղի կոլտնտեսության մեխանիզատոր ընկ. **Ա. Տ. Խաչատրյանը**, ՀԼԿԵՄ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. **Ա. Օ. Թոփուզյանը**, Զանգեզուրի պղնձամոլիբդենային կոմբինատի մեքենավար ընկ. **Վ. Գ. Ջհանգիրյանը**, ՀԿԿ Հրազդանի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. **Ս. Գ. Դանիելյանը**, Կիրովականի Կամոյի անվան տրիկոտաժի արտադրական միավորման կարող բանվորուհի ընկ. **Գ. Ա. Ղազարյանը**, ընկ. **Լ. Վ. Տիմինը**, Արարատի շրջանի Մեծ Վեդի գյուղի Ա. Խանջյանի անվան կոլտնտեսության վարչության նախագահ ընկ. **Ս. Մ. Վարդանյանը**, ՀԿԿ Մյասնիկյանի շրջկոմի առաջին քարուղար ընկ. **Գ. Հ. Մուրադյանը**, ՀԱՄԽ-ի քարտուղար ընկ. **Ն. Մ. Բալայանը**, Հայկական ՍՍՀ պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության պետական կոմիտեի նախագահ ընկ. **Ս. Ա. Միքայելյանը**, ժողովրդական դեպուտատների Կրասնոսելսկի շրջանային սովետի գործկոմի նախագահ ընկ. **Մ. Յու. Ալիևը**, Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդին առընթեր ֆիզիկական կուլտուրայի և սպորտի կոմիտեի նախագահ ընկ. **Մ. Ա. Նուրիջանյանը**, «Հայէլեկտրալույս» արտադրական միավորման գլխավոր դիրեկտոր ընկ. **Բ. Հ. Թումասյանը**, Երևանի Վ. Բրյուսովի անվան ռուսաց և օտար լեզուների պետական մանկավարժական ինստիտուտի ռեկտոր ընկ. **Յա. Ի. Խաչիկյանը**, «Երևանշին» շինմոնտաժային արտադրական միավորման կուսկոմիտեի քարտուղար ընկ. **Է. Կ. Թադևոսյանը:**

Քննարկված հարցի առթիվ Կենտկոմի պլենումն ընդունեց համապատասխան որոշում:

Պլենումում եզրափակման խոսքով հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. **Կ. Ս. Դեմիրճյանը:**

Պլենումը ընկ. **Բ. Հ. Անանիկյանին** հաստատեց «Սովետական Հայաստան» թերթի խմբագիր:

Դրանով պլենումն ավարտեց աշխատանքը:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումի աշխատանքին մասնակցում էր ՍՄԿԿ Կենտկոմի կազմակերպական-կուսակցական աշխատանքի բաժնի սեկտորի վարիչ ընկ. **Վ. Ա. Կոնդրատևը:**



## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՌԱՋԻՆ ՔԱՐՏՈՒՂԱՐ ԸՆԿ. Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ

### ՀԿԿ Կենտկոմի 1984 թ. սեպտեմբերի 22-ի պլենումում*

*Ընկերնե՛ր:*

*Ինչպես ձեզ հայտնի է, կոմերիտական կազմակերպությունների քարտուղարների մայիսին կայացած համաքանակային խորհրդակցությունում արտասանած իր ճառում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Կ. Ու. Չեռնենկոն խնդիր դրեց է՛լ ավելի բարելավել կոմերիտմիության ամբողջ գործունեությունը, աշխատանքի ոճը, ձևերն ու մեթոդները, բարձրացնել նրա դերը երիտասարդության կոմունիստական դաստիարակության գործում: Առանձնապես շեշտվեց կոմերիտմիության կուսակցական ղեկավարումը մշտապես կատարելագործելու կարևորությունը:*

*Այդ ասպարեզում կուսակցական և կոմերիտական կազմակերպությունների գործունեության կոնկրետ ծրագիր է «Կոմերիտմիության կուսակցական ղեկավարման հետագա բարելավման և երիտասարդության կոմունիստական դաստիարակության գործում կոմերիտմիության դերի բարձրացման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը: ՍՄԿԿ-ն ելնում է այն բանից, ասված է որոշման մեջ, որ երիտասարդական շարժման կուսակցական ղեկավարումը միշտ եղել է և այժմ էլ հանդիսանում է սոցիալիստական հասարակության մեջ սերունդների հեղափոխական հաջորդայնության առաջնահերթ պայմանն ու կարևորագույն երաշխիքը, կոմերիտմիության գաղափարայնության, մարտունակության և ստեղծագործական ակտիվության գրավականը:*

*Հենց կուսակցության ղեկավարությամբ է կոմերիտմիությունը անցել իր փառավոր ուղին, ապրել, աշխատել, պայքարել լենինաբար, իր բոցակրով ամբողջ կրակը նվիրաբերել անմահ առաջնորդի պատգամների կենսագործմանը, կոմունիզմի իդեալների հաղթանակին, հայրենիքին անձնվիրաբար ծառայելով արժանացել ժողովրդի սիրուն ու հարգանքին:*

*Մեծ Լենինի հաղթական դրոշին հավատարիմ՝ կոմերիտմիությունը, երիտասարդությունը միշտ այնտեղ են, ուր կոչում է կուսակցությունը, ուր պահանջվում են երիտասարդ ժրաջան ձեռքեր և ջերմ սրտեր: Նրանք պատվով են շարունակում ավագ սերունդների գործը, ամենաեռանդուն մասնակցությունը բերում էկոնոմիկայի, գիտության ու մշակույթի զարգացմանը, ոգևորությամբ ձեռնամուխ լինում երկրի համար առավել կարևոր խնդիրների լուծմանը, իրենց անձնվեր աշխատանքով նոր վառ էջեր գրում կոմերիտական փառքի տարեգրության մեջ:*

*Կոմունիստական շինարարության առաջավոր բնագծերում է գտնվում նաև Հայաստանի կոմերիտմիությունը, որն իր շարքերում ունի ՀամԼԿԵՄ ավելի քան 600 հազար անդամ: Լինելով հանրապետության երիտասարդության ճանաչված առաջատարը՝ նա բազմակողմանի աշխատանք է ծավալում մատաղ սերնդի*

* *Տպագրվում է համառոտումներով:*

կոմունիստական դաստիարակության, կուսակցության վսեմ կանխագծումների իրականացման, ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումների, տասնմեկերորդ հնգամյակի առաջադրանքների կատարման համար երիտասարդության ջանքերի մոբիլիզացման բնագավառում։

Մեր կենսագործունեության բոլոր ոլորտներում կոմերիտականները, երիտասարդությունը հանդես են գալիս որպես ստեղծարար մեծ ուժ, ակտիվորեն մասնակցում հանրապետության առջև ծառացած տնտեսական, սոցիալ-կուլտուրական և քաղաքական խնդիրների լուծմանը։ Բավական է ասել, որ ներկայումս հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ աշխատողների մոտ կեսը երիտասարդներ են։ Եվ ուրախալի է, որ գործարաններում ու ֆաբրիկաներում, դաշտերում ու ֆերմաներում, կառույցներում ու գիտական լաբորատորիաներում, ժողովրդական կրթության ու մշակույթի զարգացման ասպարեզում մեր երիտասարդությունը դրսևորում է իրեն նորանոր գործերով և ձեռքբերումներով։

Հանրապետության ավելի քան 400 հազար պատանիներ ու աղջիկներ, 6.289 կոմերիտական-երիտասարդական արտադրական կոլեկտիվներ «Երիտասարդների հարվածային աշխատանքը, գիտելիքները, նախաձեռնությունն ու ստեղծագործությունը տասնմեկերորդ հնգամյակին» հայրենասիրական շարժման շրջանակներում ակտիվորեն ներգրավվել են 1984 թ. և ամբողջ հնգամյակի պլանային առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու, Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի տարած հաղթանակի 40-ամյակը արժանավայել դիմավորելու սոցիալիստական մրցության մեջ։ Կոմերիտական կազմակերպություններնստանձնել են տասնմեկերորդ հնգամյակի 43 խոշոր օբյեկտների շեֆությունը, որոնք հայտարարված են հարվածային կոմերիտական կառույցներ։

Հանրապետության կոմերիտմիությունն իր ավանդն է ներդնում ՌՍՖՍՀ-ի ոչ սևահողային գոտու գյուղական և մելիորատիվ շինարարության, Բայկալ—Ամուր երկաթուղու, Տյումենի մարզ— երկրի եվրոպական մասի կենտրոնական շրջաններ, Ուրենգոյ—Պոմարի—Ուժգորոդ գազամուղների կառուցման, պարենային և էներգետիկ ծրագրերի իրականացման գործում։

Ավելի ու ավելի արգասավոր է դառնում նաև կոմերիտականների, երիտասարդության մասնակցությունը հանրապետության հասարակական, քաղաքական կյանքին, տնտեսական և մշակութային շինարարության ղեկավարմանը, պետական գործերի կառավարմանը։ Իրենց պարտականությունները հաջողությամբ են կատարում ժողովրդի 9.266 երիտասարդ ընտրյալները՝ տեղական սովետների, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի և ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատները։

Հանրապետության կոմերիտական կազմակերպությունն իր բազմակողմանի գործունեությամբ ակտիվորեն նպաստում է նոր մարդու դաստիարակմանը, մատաղ սերնդի մեջ գաղափարաբարոյական վեհ հատկանիշների, ակտիվ կենսադիրքի մշակմանը, հոգ է տանում, որ երիտասարդները ՀամԼԿԵՄ շարքերում անցնեն քաղաքական և քաղաքացիական հասունացման մեծ դպրոց, աճեն որպես սովետական ջերմ հայրենասեր-ինտերնացիոնալիստներ՝ միշտ պատրաստ հայրենիքի պաշտպանությանը, նվիրված մեր հասարակության իդեալներին, կուսակցության ու ժողովրդի գործին։

Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեն բարձր է գնահատում հանրապետության կոմերիտմիության ավանդը կոմունիստական շինարարության բարդ ու բազմակողմանի խնդիրների լուծման, կոմերիտական կազմակերպությունների հետևողական աշխատանքը ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումների կատարման գործում։ Կոմերիտմիութան գործերն ու հոգսերը մշտապես գտնըվում են հանրապետական կուսակցական կազմակերպության, նրա Կենտրոնական կոմիտեի, քաղաքային և շրջանային կոմիտեների, սկզբնական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում, որոնք հետևողականորեն զբաղվում են կոմերիտմիության կուսակցական ղեկավարման արդյունավետության բարձրացման, բովանդակության հարստացման, ձևերի ու մեթոդների կատարելա-



գործման, կոմերիտական կազմակերպությունների կազմակերպական-քաղաքական ամրապնդման հարցերով։

ՍՄԿԿ XXVI համագումարից հետո կոմերիտմիությունում աշխատելու են երաշխավորվել ավելի քան 350 երիտասարդ կոմունիստներ։ Նույն ժամանակամիջոցում մոտ 120 կոմերիտական ակտիվիստներ առաջ են քաշվել կուսակցական, սովետական, արհմիութենական և տնտեսական պատասխանատու աշխատանքի։ Եվ դա բնական է։ Հենց կոմերիտմիության շարքերում են քաղաքական կոփվածք ստացել, կազմակերպչի գործնական հմտություններ ձեռք բերել հանրապետության այսօրվա կուսակցական, արհմիութենական և տնտեսական շատ աշխատողներ։

Կոմերիտական կազմակերպությունների գործունեության կուսակցական ղեկավարման դրական փորձ են կուտակել կուսակցության Երևանի, Լենինականի, Կիրովականի քաղկոմները, Արթիկի, Ախուրյանի, Գորիսի, Եղեգնաձորի, Հրազդանի, Ղափանի, Սիսիանի և ուրիշ կուսշրջկոմներ։ Նրանք պարբերաբար քննարկում են կոմերիտմիության աշխատանքին առնչվող հարցերը, ձեռնամուխ լինելով հերթական տնտեսական-քաղաքական խնդիրների լուծմանը, հստակորեն որոշում կոմերիտական կազմակերպությունների տեղը առաջիկա աշխատանքում, նրանց հանձնարարում պատասխանատու գործեր և օգնում իրականացնելու դրանք։

Ուշադրության է արժանի կոմերիտմիության ղեկավարման ասպարեզում Սիսիանի շրջանային կուսակցական կազմակերպության փորձը։ Կուսակցության շրջկոմը սիստեմատիկաբար քննարկում է կոմերիտական կազմակերպությունների գործունեության զանազան հարցեր։ Ընդունվում են գործնական, կոնկրետ որոշումներ, որոնք սկզբնական կուսակցական ու կոմերիտական կազմակերպությունների ջանքերն ուղղում են երիտասարդությանը աշխատասիրությամբ համակելու, նրան կազմակերպվածության ու կարգապահության ոգով դաստիարակելու, շրջանի առջև ծառացած սոցիալական և տնտեսական զարգացման խնդիրների լուծման գործում պատանիներին ու աղջիկներին լայնորեն ներգրավելու, հասարակական-քաղաքական կյանքին նրանց ակտիվ մասնակցությունն ապահովելու նպատակին։ Միայն վերջին երեք տարում շրջանի կոլտնտեսություններն ու սովխոզները աշխատանքի են ուղարկվել 386 պատանիներ ու աղջիկներ, որոնցից 210-ը՝ անասնապահության բնագավառ։ Եվ օրինաչափ է, որ շրջանի կոմերիտականներն ընթանում են սոցիալիստական մրցության ավանգարդում։ Նրանցից շատերը հանդես են բերում անձնվեր աշխատանքի օրինակներ, մշտապես ձգտում բարձր ցուցանիշների։

Մեզանում շատ են այն ձեռնարկությունները, տնտեսությունները, հիմնարկությունները, որոնց կուսակցական կազմակերպությունները բարելավել են կոմերիտմիության ղեկավարումը։

Մենք գոհունակությամբ ենք նշում կոմերիտմիության բանիմաց ղեկավարումը «Հայէլեկտրալույս», «Մասիս» արտադրամիավորումների, Լենինականի տեքստիլ կոմբինատի, գուլպեղենի միավորման, Կիրովականի «Ավտոգենմաշի», «Հրազդանմեքենա» գործարանի, Ջանգեզուրի պղնձամոլիբդենային կոմբինատի, Նոր Հաճնի «Բյուրեղ» արտադրամիավորման, Հայկական ատոմային էլեկտրակայանի, Երևանի մաթեմատիկական մեքենաների գիտահետազոտական ինստիտուտի, Երարդշին տրեստի, Անիի շրջանի Ձերժինսկու անվան, Էջմիածնի շրջանի «Լենինյան ուղիով», Արտաշատի շրջանի Վերին Արտաշատ գյուղի, Արթիկի շրջանի Փանիկ գյուղի կոլտնտեսությունների, Գուգարքի շրջանի Բավրայի, Աշտարակի շրջանի Օհանավանի սովխոզների, Զարենցավանի ավտոտրանսպորտային միավորման, պետական համալսարանի, պոլիտեխնիկական ինստիտուտի, Երևանի Կրուպսկայայի, Գոգոլի անվան դպրոցների և շատ ու շատ ուրիշ կոլեկտիվների կուսակցական կազմակերպությունների կողմից։ Այդ կոլեկտիվներում կոմունիստներն ակտիվորեն օժանդակում և մասնակցում են կոմերիտականների նախաձեռնություններին, մշտապես տեղյակ են երիտասարդական պրոբլեմներին։

Դրա հետ մեկտեղ, շարունակում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, ինչպես նշված

է ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ, զարգացած սոցիալիզմի կատարելագործման խնդիրները, համաշխարհային սիստեմների հակամարտության ուժեղացումը պահանջում են է՛լ ավելի բարելավել կոմերիտմիության կուսակցական ղեկավարումը, մատաղ սերնդի դաստիարակության ամբողջ գործը, ակտիվացնել նրա մասնակցությունը սոցիալիստական շինարարությանը։

«Մենք վստահ ենք, որ երկրի զարգացման գործում լենինյան կոմերիտմիության ավանդը կաճի, կբազմապատկվի,— իր ճառում շեշտեց ընկեր Կ. Ու. Չեռնենկոն,— կասեմ ավելին, կազմելով առաջիկա հնգամյակի և ընդհուպ մինչև եկող դարի սկզբի պլանները, մենք զգալի չափով հույներս դնում ենք հենց ներկա երիտասարդության ձեռքերի վարպետության, նրա մտքի խիզախումների, նրա աշխատանքային խղճի վրա։ Չէ՛ որ այդ պլանների կատարման հիմնական աշխատանքը պետք է իրականացնեն հենց նրանք, ովքեր այսօր գտնվում են կոմերիտական տարիքում»։

Մեր հասարակության առջև ծառացած նոր խնդիրները, դրանց մասշտաբայնությունը պահանջում են բարելավել կոմերիտմիության գործունեության ձևերն ու մեթոդները, ոճը։ Դրանք պետք է մշտապես զարգանան, հագեցվեն նոր բովանդակությամբ, ստեղծագործելու ասպարեզ տան, հաշվի առնեն երիտասարդության նորի ձգտումը, նրա տարիքային առանձնահատկությունները, կրթական մակարդակը, հետաքրքրասիրություններն ու հակումները, մշտապես հաշվի առնեն նրա նյութական և հոգևոր աճող պահանջմունքները։

Մի խոսքով, ողջ աշխատանքը պետք է տարվի այնպես, որ ապահովվի երիտասարդության մշտական համակողմանի զարգացումը։ Հիշենք Լենինի այն միտքը, որ երիտասարդությունը պետք է զարգանա այնպես հաջող, որ հեղափոխության հաջորդ պահի հասունացման ժամանակ լիովին լինի խնդրի բարձրության վրա։

Ելնելով ՍՄԿԿ Կենտկոմի որոշման պահանջներից՝ ընկեր Կ. Ու. Չեռնենկոյի ճառի պարունակած դրույթներից ու հետևություններից՝ հանրապետական կուսակցական կազմակերպությունը պետք է բարձրացնի կոմերիտմիության հետ տարվող աշխատանքի մակարդակը, կատարելագործի այդ աշխատանքը, ուժեղացնի կոմերիտմիության կուսակցական ղեկավարումը, բարձրացնի երիտասարդության կոմունիստական դաստիարակության գործում ՀԼԿԵՄ բոլոր օղակների գործունեության արդյունավետությունը։

Կոմերիտմիության գլխավոր խնդիրն է՝ ըստ ամենայնի պաշտպանել, զարգացնել երիտասարդության աշխատանքային ու հասարակական-քաղաքական ակտիվությունը, ողջ ուժով լծվել այն դժվարին, բազմապլան աշխատանքին, որ կուսակցությունը բնորոշում է որպես զարգացած սոցիալիզմի կատարելագործում, երիտասարդներին դաստիարակել կոմունիզմի գործին անսահման նվիրվածության ոգով, որպես սովետական հասարակության արժանավոր քաղաքացիներ։ Կոմերիտական կազմակերպությունները պետք է երիտասարդությանը նպատակամղեն կոնկրետ գործերի, կուսակցության նշած կոմունիստական շինարարության խնդիրների իրականացման, հանրապետության, երկրի հետագա տնտեսական, սոցիալական ու մշակութային առաջընթացի համար մղվող պայքարին։

Այսօր կարևորագույն խնդիր է՝ ժողովրդական տնտեսությունը փոխադրել առավելապես ինտենսիվ զարգացման ուղու վրա, ըստ ամենայնի բարձրացնել նրա արդյունավետությունը։

Երիտասարդության ջանքերը կենտրոնացնել հանրային արտադրության ինտենսիվացման հիմնական ուղղությունների, գիտատեխնիկական առաջընթացի, կոմպլեքսային ավտոմատացման, էլեկտրոնիկայի, ատոմային էներգետիկայի զարգացման, սկզբունքորեն նոր տեսակի նյութերի, տեխնիկայի ու տեխնոլոգիայի ստեղծման ու արմատավորման, տնտեսավարման տնտեսագիտական եղանակների տիրապետման վրա. ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը այսպիսի խնդիր է առաջադրում կոմերիտական կոմիտեներին ու կազմակերպություններին։

Այս ամենը հնարավոր է հաջողությամբ իրականացնել միայն այն դեպքում, երբ ժողովրդական տնտեսության յուրաքանչյուր ոլորտում աշխատող երիտասարդները նախապատրաստված լինեն նման բարդ աշխատանքի, զինված լինեն անհրաժեշտ խոր գիտելիքներով, օժտված պրոֆեսիոնալ բանիմացությամբ ու վարպետությամբ։



Ահա թե ինչու ներկայումս երիտասարդ բանվորների, բոլոր աշխատավորների, մասնագետ կադրերի պատրաստումը, նրանց որակավորման բարձրացումը ամենահրատապ գործն են։

Սոհասարակ, մենք բոլորս, ընկերներ, պետք է արմատապես փոխենք վերաբերմունքը կադրերի պատրաստման և որակավորման բարձրացման հարցի նկատմամբ, այդ գործին նայենք լայնորեն, կուսակցականորեն, պետականորեն։ Նյութական արտադրության, գիտության, մշակույթի մեջ վստահ առաջադիմելու համար հարկավոր է մշտապես հոգ տանել կադրերի պատրաստումը կատարելագործելու, որակավորման բարձրացումն ապահովելու մասին, նրանց ունակ դարձնել լուծելու զարգացման բազմակողմանի խնդիրներ, հաշվի առնելով, եթե կուզեք, գալիք՝ 21-րդ դարի պահանջները։

Իսկ դա պահանջում է բարելավել մեր աշխատանքը թե՛ միջնակարգ, թե՛ բարձրագույն դպրոցում և թե արտադրության մեջ։ Մեր կարևորագույն գործն է՝ յուրաքանչյուր երիտասարդի զինել գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների մակարդակին համապատասխանող խոր գիտելիքներով, պայմաններ ստեղծել պրոֆեսիոնալ բարձր որակավորում ձեռք բերելու, մշտապես կատարելագործվելու համար։ Եվ այստեղ ակտիվ դեր է պատկանում կոմերիտմիությանը։

Արտադրությունը կառուցել գիտության ու տեխնիկայի վերջին խոսքին համապատասխան, արմատավորել ամենայն նորը, առաջավորը. այսպես է դնում կուսակցությունը խնդիրն այսօր։ Իսկ սա երիտասարդների առջև բացում է իրենց տաղանդը, ընդունակությունները դրսևորելու հիրավի աննախադեպ հնարավորություններ։

Ինչ խոսք, մեր երիտասարդությունը, որն աճում է գիտատեխնիկական հեղափոխության դարաշրջանում և որպես սերունդ ձևավորվում նրա իսկ ազդեցությամբ, բնականաբար, իր դարի «զավակն» է՝ գիտական և տեխնիկական ավելի լայն մտահորիզոնով։ Հիմա արդեն շատ երեխաներ նույնիսկ հասկանում են հաշվիչ մեքենայի լեզուն, մի բան, որ մեզ դեռ համեմատաբար վերջերս ֆանտաստիկա էր թվում։ Բայց սա ամենևին չի նշանակում, թե հեշտանում է երիտասարդությանը անհրաժեշտ որակավորմամբ ինքնուրույն աշխատանքի նախապատրաստելու գործը։ Ընդհակառակն, ներկայումս տեխնիկապես բարձր հագեցված արտադրության և անընդհատ բարդացող տեխնոլոգիայի պայմաններում, ինչպես երբեք, հարկավոր է երիտասարդ բանվորների, ժողովրդական տնտեսության մասնագետների խորացված պատրաստության և որակավորման բարձրացման մտածված ու հստակ գործող համակարգ, առանց որի մենք չենք կարող խորհել, իրոք, առաջադիմելու մասին։ Ահա թե ինչու այնքան անհրաժեշտ է բարձրացնել հենց նրանց պատասխանատվությունը, ովքեր զբաղվում են այդ գործով և ղեկավարում այն։

Շատ կարևոր է, որ մինիստրությունների ու գերատեսչությունների, ձեռնարկությունների ու միավորումների, հիմնարկությունների ու կազմակերպությունների ղեկավարները, աշխատավորական բոլոր կոլեկտիվները, նրանց կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները մշտապես ուշադրության կենտրոնում պահեն բոլոր մակարդակների աշխատավորների պատրաստման և պրոֆեսիոնալ որակավորման բարձրացման հարցը, ավելի առարկայորեն և համակողմանիորեն զբաղվեն այդ գործով, մշտապես հիշելով, որ մեծապես դրանից է սկսվում իսկական պայքարը հանուն բարձր արդյունավետության, արտադրողականության, որակի ու խնայողության։

Այսօր հանրապետությունում գիտության և արտադրության տարբեր բնագավառներում աշխատում են ավելի քան 150 հազար երիտասարդ գիտնականներ ու մասնագետներ, որոնցից մոտ 120 հազարը ՀամԼԿԵՄ անդամներ են։

Կուսակցական և կոմերիտական կոմիտեներն ու կազմակերպությունները

պետք է հետևողականորեն զբաղվեն գիտատեխնիկական առաջընթացի արագացման, հանրապետության արտադրական պոտենցիալի զարգացման, նորացման, տեխնիկական վերազինման, աշխատանքի արտադրողականության, արտադրանքի տեխնիկական մակարդակի ու որակի նոր, է՛լ ավելի բարձր բնագծերի ձեռքբերման գործում երիտասարդ գիտնականների, ինժեներ-կոնստրուկտորների, տեխնոլոգների, մյուս բոլոր մասնագետների ավանդը մեծացնելու հարցերով, նրանց մեջ հարուցեն կենդանի հետաքրքրասիրություն ամենայն նորի, առաջավորի նկատմամբ, արարելու և խիզախելու, ժողովրդական տնտեսության զարգացման հորիզոններն ընդլայնելու ձգտում։

Երիտասարդությանը կողմնորոշելով դեպի այդ պրոբլեմների լուծումը՝ հարկավոր է առաջին հերթին հասնել այն բանին, որ նա խորապես տոգորվի այն բացառիկ կարևոր ու պատասխանատու առաքելության գիտակցությամբ, որ ինքն ունի ժողովրդական տնտեսությունը զարգացման որակապես նոր փուլի փոխադրումն ապահովելու գործում, միշտ հիշի, որ հանրապետության էկոնոմիկայի հետագա վերելքի հեռանկարները նախատեսելիս զգալի չափով հաշվի են առնվել իր ստեղծագործական եռանդն ու աշխատանքային խանդավառությունը, որ դա պահանջում է բարձրացնել կազմակերպվածությունն ու ամրապնդել կարգ ու կանոնը արտադրությունում, յուրաքանչյուր երիտասարդ բանվորի, կոլտնտեսականի, մասնագետի, ծառայողի պատասխանատվությունն ու ինքնակարգապահությունը, զարգացնել ձեռներեցությունն ու ակտիվությունը։ Դա պահանջում է շարունակ «սովորել, սովորել և սովորել», «սովորել աշխատել», «հասկանալ և տեսնել, թե ինչպես և որքան է հարկավոր աշխատել, ինչպես և որքան կարելի է հանգստանալ»։

Կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կոմիտեների ու կազմակերպությունների համար պետք է ամենօրյա հոգածության առարկա դառնան սոցիալիստական մրցության մեջ երիտասարդ աշխատավորների լայն ներգրավումը, կոմերիտական-երիտասարդական կոլեկտիվների շարժման զարգացումը, բրիգադային կապալի լայն տարածումը։

Պետք է ասել, նշում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, որ հանրապետության երիտասարդությունը հիմնականում ակտիվորեն է ներգրավվում սոցիալիստական մրցության ոլորտը։ Բայց, ցավոք, կան այնպիսի ձեռնարկություններ ու կազմակերպություններ, որտեղ միշտ չէ, որ լիովին հաշվի են առնվում երիտասարդ աշխատավորների՝ մրցությանը մասնակցելու առանձնահատկությունները։ Երբեմն մոռանում են, որ աշխատանքային ոչ մեծ ստաժ ունեցող պատանիներն ու աղջիկները չեն կարող հավասար մրցակցել կադրային բանվորների հետ, որ նրանց համար հարկավոր է մրցության արդյունքների ամփոփման այնպիսի համակարգ, որը հաշվի առներ ոչ միայն ձեռք բերված արտադրական ցուցանիշները, այլև նորեկների աճի դինամիկան։ Թե չէ նման մոտեցման բացակայությունը հաճախ հանգեցնում է այն բանին, որ առանձին ձեռնարկություններում սոցմրցության մեջ ձեռք բերած հաջողությունների համար կոմերիտականները, երիտասարդ բանվորները 4—5 անգամ պակաս են նշվում, քան նրանց ավագ աշխատանքային ընկերները։ Բայց չէ՞ որ երիտասարդ աշխատավորն առավել զգայուն է ընկալում կոլեկտիվի գնահատականը։ Նա որքան հաճախ իր աշխատանքին նայի կոլեկտիվի աչքերով, այնքան ավելի լայնորեն կընկալի արտադրության հարցերը, այնքան ավելի մեծ կլինի ստեղծագործական լարումը, այնքան նրա մեջ ավելի ուժեղ կզարգանա բանվորական հպարտության զգացումը։

Օգտակար կլիներ, եթե Հայաստանի ԼԿԵՄ Կենտկոմը, ՀԱՄԽ-ը, մինիստրությունների ու գերատեսչությունների, միավորումների, ձեռնարկությունների ու կազմակերպությունների հետ համատեղ, կոնկրետ կերպով զբաղվեր երիտասարդության սոցիալիստական մրցության արդյունավետության բարձրացման ուղիների պրպտումներով և մշակեն համապատասխան հանձնարարականներ։

Կոմերիտական կազմակերպություններն ամենագործուն մասնակցությունը պետք է բերեն աշխատաժամանակի կորուստների կրճատմանը և աշխատանքա-



յին կարգապահության ամրապնդմանը, աշխատուժի հոսունության նվազեցմանը։

Առանց կայուն, լավ կազմակերպված, կարգապահ աշխատավորական կոլեկտիվների անհնար է լուծել արտադրական բարդ հարցեր։ Մյուս կողմից, նման կոլեկտիվներում ավելի արդյունավետ կարելի է իրագործել դաստիարակչական խնդիրները։

Սակայն կայուն կոլեկտիվների ստեղծմանը մեծապես խանգարում է կադրերի հոսունությունը։ Այն առավել բարձր է երիտասարդ աշխատողների շրջանում։ Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ աշխատանքային ստաժի ավելացմանը և որակավորման աճին զուգընթաց նվազում է սեփական ցանկությամբ ձեռնարկություններից հեռացող աշխատողների բաժինը։

Երիտասարդ բանվորը ձգտում է ընկնել այնպիսի ձեռնարկություն, որտեղ բարձր է արտադրության կուլտուրան, ավելի լավ պայմաններ են ստեղծված պրոֆեսիոնալ աճի համար, որտեղ չկան «գրոհայնություն» ու պարապուրդներ, և որտեղ նա կարող է ավելի ռացիոնալ օգտագործել աշխատաժամանակը, լավ վաստակել։

Այս հարցերի շուրջ լրջորեն պետք է մտորեն մեր ձեռնարկությունների և միավորումների տնտեսական ու տեխնիկական ղեկավարները, որոնց առջև այսօր պլենումը պետք է խնդիր դնի բարձրացնել արտադրության և աշխատանքի կազմակերպման, յուրաքանչյուր աշխատատեղի կազմակերպման մակարդակը, նվազեցնել երիտասարդ կադրերի հոսունությունը, ըստ ամենայնի ամրապնդել կարգապահությունը աշխատավորական կոլեկտիվներում։ Աշխատանքի ընդունվող յուրաքանչյուր երիտասարդ պետք է իմանա, որ իր համար ստեղծված են լիարժեք աշխատանքի, ստեղծագործության բոլոր պայմանները, որ իր առջև որակավորման բարձրացման և ծառայության մեջ առաջ քաշվելու հեռանկար կա։

Մենք քիչ ձեռնարկություններ չունենք, որոնց կուսակցական ու կոմերիտական կազմակերպություններին լրջորեն մտահոգում է երիտասարդ աշխատավորների մասնագիտական աճի հարցը։ «Հայէլեկտրամեքենա» միավորման արտադրամասային կուսակցական կազմակերպություններից մեկի օրերս տեղի ունեցած հաշվետու-ընտրական ժողովում, որին ես մասնակցում էի, կոմերիտական կազմակերպության քարտուղարն արեց այսպիսի մի առաջարկություն. աշխատանքն այնպես կազմակերպել, որպեսզի ամեն տարի յուրաքանչյուր երիտասարդ իր մասնագիտությունը բարձրացնի առնվազն մեկ կարգով։

Դա ռեալ գործ է, ուստի և հարկավոր է ամեն կերպ պաշտպանել այն, լայնորեն տարածել հանրապետությունում։

Կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները, կուսակցական և կոմերիտական կազմակերպությունները պետք է այս հարցերը պահեն անդուլ հսկողության ներքո, մշտական հոգատարություն ցուցաբերեն երիտասարդների գաղափարա-բարոյական կոփվածքի և պրոֆեսիոնալ աճի նկատմամբ։

Հայտնի է, ընկերնե՛ր, որ բանվորական կոլեկտիվին երիտասարդի անդամագրման բուն փաստը դեռ նրան լիովին չի դարձնում բանվոր դասակարգի փառավոր ավանդույթների կրող։ Ժամանակակից բանվորի բնավորությունը ձևավորելու համար անհրաժեշտ է իբրև մի ամբողջական կոմպլեքս օգտագործել բանվոր դասակարգի հերոսական պատմությունը, կադրային բանվորների պրոֆեսիոնալ և կենսական փորձը, վարպետ դաստիարակների շարժումը։

Վարպետն աճում է վարպետ-դաստիարակի կողքին, նրանից ստանում ոչ միայն մասնագիտության արվեստը, վարպետության գաղտնիքները, այլև նրա անձի ազդեցությամբ իր մեջ մշակում է սովետական բանվորի վեհ հատկանիշներ, որի համար կյանքի բարձրագույն իմաստը անձնվեր, բարեխիղճ աշխատանքն է ի բարօրություն հայրենիքի։

Կուսակցությունը մեր ուշադրությունը հրավիրում է բոլոր տեսակի ռեսուրսների խնայողության, առկա ամբողջ պոտենցիալի արդյունավետ օգտագործման անհրաժեշտության վրա։ Հարկավոր է այս դրույթը հասցնել յուրաքանչյուր երիտասարդի, որպեսզի նա իմանա, որ անձամբ իրենով այստեղ

շատ բան է պայմանավորված, որ ինքը պարտավոր է գործին մոտենալ ժրաջան, սրտացավ տիրոջ պես, ռացիոնալ և բարձրարդյունավետությամբ օգտագործել սարքավորումները, հումքն ու նյութերը։ Չի կարելի լավ աշխատավոր, լավ քաղաքացի լինել առանց իր մեջ ժողովրդական սեփականության նկատմամբ հոգատար վերաբերմունք դաստիարակելու։

Դրա հետ մեկտեղ կուսակցական կոմիտեներն ու կազմակերպությունները պետք է ըստ ամենայնի բարձրացնեն ձեռնարկությունների, կազմակերպությունների, մինիստրությունների ու գերատեսչությունների ղեկավարների պատասխանատվությունը տնտեսական գործունեության դաստիարակչական հետևանքների համար։ Անհրաժեշտ է վճռականորեն վերջ դնել երիտասարդների խանդավառության նկատմամբ առանձին տնտեսական ղեկավարների կողմից հանդես բերվող սպառողական վերաբերմունքի պրակտիկային, արտադրությունում երիտասարդական պրոբլեմների լուծման նկատմամբ դրսևորվող ձևական վերաբերմունքի փաստերին։

Չի կարելի հաշտվել այն բանի հետ, որ որոշ ձեռնարկություններում երիտասարդությանը չեն վստահում ժամանակակից տեխնիկան, որ գրագետ, պրոֆեսիոնալ առումով պատրաստված երիտասարդ բանվորներն ու մասնագետները երկար ժամանակ մնում են «աշակերտի» վիճակում։ Բոլոր շահագրգռված կազմակերպությունների համատեղ ջանքերով անհրաժեշտ է հասնել այն բանին, որ յուրաքանչյուր ձեռնարկությունում, կոլտնտեսությունում, սովխոզում, գիտական հիմնարկությունում, ինչպես կուսակցությունն է պահանջում, երիտասարդների համար ստեղծվեն բարձրարտադրողական, բարձրորակ աշխատանքի ու լիարժեք հանգստի բոլոր անհրաժեշտ պայմանները, նրանք ակտիվորեն ներգրավվեն արտադրության զարգացման բոլոր հարցերի լուծման, արտադրության կառավարման գործում, լայն ասպարեզ բացվի երիտասարդական նախաձեռնության առջև։

Առանձնապես հարկ է նշել, ասում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, կոմերիտմիության, երիտասարդության մեծ դերը պարենային ծրագրի իրականացման, գյուղատնտեսության զարգացման գործում։ Գյուղում շատ են պետք երիտասարդ աշխատասեր ձեռքեր, երիտասարդական եռանդ, ձեռներեցություն, հարկավոր են տարբեր պրոֆիլի բարձր որակավորման մասնագետներ։ Եվ այս կապակցությամբ կարևոր նշանակություն են ստանում գյուղում երիտասարդության ամրապնդման հարցերը, որոնց լուծման համար վերջին ժամանակներս հանրապետությունում կոնկրետ միջոցներ են ձեռնարկվում։

Իրականացվում է գյուղում կենսապայմանների բարելավման լայն աշխատանք։ Աճում, գեղեցկանում են կոլտնտեսային և սովխոզային ավանները։ Կառուցվում են ավելի շատ կուլտուր-կենցաղային օբյեկտներ։ Քիչ բան չի արվում գյուղի աշխատավորների հանգստի պայմանները բարելավելու համար։ Այս ամենը թե՛ դրականորեն է անդրադառնում արտադրության վրա, թե՛ օգնում է կադրերը տեղում ամրապնդելուն։

Ցավոք, առանձին շրջաններում և շատ տնտեսություններում երիտասարդական պրոբլեմների լուծման նկատմամբ ցուցաբերվող անուշադիր վերաբերմունքը, աշխատանքի ու արտադրության կազմակերպման ցածր մակարդակը, սոցիալական և կուլտուրական զարգացման հարցերի ոչ ժամանակին և ոչ լրիվ լուծումը հանգեցնում են երիտասարդության արտահոսքի։

Հրատապ է գյուղը մասնագետներով ապահովելու պրոբլեմը։ Հանրապետությունում գյուղատնտեսության քիչ մասնագետներ չեն պատրաստվում։ Բայց որոշ կոլտնտեսություններում և սովխոզներում նրանց կարիքը դեռ շատ է զգացվում։ Սա հետևանք է ինչպես կազմակերպական տնտեսական, այնպես էլ դաստիարակչական բնույթի թերացումների։

Շրջանային կուսակցական, սովետական, կոմերիտական մարմինների և սկզբնական կազմակերպությունների գործում վերահսկողության բացակայության պայմաններում շատ կոլտնտեսություններում ու սովխոզներում անպատասխանատվություն է դրսևորվում իրենց տրամադրության տակ ուղարկված երիտասարդ մասնագետների օգտագործման հարցում։ Մի՞թե թույլատրե-



լի է, որ մասնագետների սուր կարիքի պարագայում տնտեսությունների հաշվին բուհերում սովորած շրջանավարտների 30 տոկոսը ներկայումս աշխատի ոչ ըստ ձեռք բերած մասնագիտության։

Անհրաժեշտ է այսօր Կենտկոմի պլենումում մեկ անգամ ևս շրջանային կուսակցական, սովետական և կոմերիտական կազմակերպությունների ուշադրությունը հրավիրել բարձրագույն ուսումնական հաստատություններում մասնագետների նպատակային պատրաստումը բարելավելու կարևորության վրա։ Մի շարք շրջաններում գործուն միջոցներ չեն ձեռնարկվել այդ հարցի առթիվ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի ընդունած որոշումների կատարման նպատակով։ Ժողովրդական կրթության և գյուղատնտեսության մասնագետների պակասի պայմաններում Կրասնոսելսկի, Ստեփանավանի, Ղուկասյանի, Ամասիայի, Թալինի, Թումանյանի, Գուգարքի և մի շարք այլ շրջաններից հատկացված տեղերին համապատասխան դիմորդներ չեն գործուղվել բուհեր։

Մենք չպետք է հաշտվենք այն բանի հետ, որ ստանալով բարձրագույն կամ միջնակարգ-մասնագիտական կրթություն, որոշ երիտասարդ մասնագետներ ամեն հնարի դիմում են, որպեսզի ըստ նշանակման աշխատանքի չգնան, առաջին իսկ ամիսներին լքում են արտադրությունը, դասասենյակները, հիվանդանոցները և այլն։ Նման վարքագիծը արժանի է ամենախիստ դատապարտման, և այդպիսիներից պետք է շատ խիստ պատասխան պահանջվի։

Գյուղում երիտասարդության ամրապնդման, ժողովրդական տնտեսության տարբեր պրոֆիլների մասնագետների պատրաստման, նրանց ռացիոնալ օգտագործման հարցերը պետական կարևորություն ունեն և պետք է լուծվեն կուսակցական, սովետական, կոմերիտական, տնտեսական մարմինների համատեղ ջանքերով։

Երիտասարդ մասնագետների կյանքի, ստեղծագործ, բարձրարտադրողական աշխատանքի համար ստեղծել անհրաժեշտ պայմաններ. ահա այսպիսի խնդիր է ծառացած այսօր կոլտնտեսությունների ու սովխոզների, ագրոարդյունաբերական կոմպլեքսի մյուս ձեռնարկությունների ու կազմակերպությունների ղեկավարների, կուսակցական, կոմերիտական կազմակերպությունների առջև։

Կոմերիտմիությունը պետք է իր ամենագործնական մասնակցությունը բերի գյուղական, հատկապես լեռնային և նախալեռնային շրջանների տնտեսական, սոցիալական և կուլտուրական զարգացման պլանների իրականացմանը, երիտասարդության ուժերը մոբիլիզացնի կառուցելու արտադրական նշանակության օբյեկտներ, բնակելի տներ, դպրոցներ, մանկապարտեզներ և մանկամսուրներ, ակումբներ և կուլտուրայի տներ, ճաշարաններ, խանութներ, կենցաղային սպասարկման ձեռնարկություններ, մի խոսքով, ակտիվորեն նպաստի այն ամենի ստեղծմանը, ինչը կապահովի գյուղի արտադրական և սոցիալական ինֆրակառուցվածքի զարգացումը։

Առհասարակ անհրաժեշտ է, որպեսզի հատկապես մեր երիտասարդությունը ավելի շահագրգիռ, ավելի լայնահայաց վերաբերվի շինարարության գործին, տոգորվի պատասխանատվության խոր զգացումով հանդեպ իր աշխատանքը, բարձր որակի ապահովումը մարդկային գործունեության այդ հոյակապ ոլորտում։ Ամենևին էլ չնսեմացնելով նրանց աշխատանքը, ովքեր ստեղծում են մեքենաներ, սարքավորումներ, արտադրում զանազան ապրանքներ, ասենք, միաժամանակ, որ այսօրվա ամենազարմանալի տեխնիկական հրաշքը վաղը կարող է դառնալ թանգարանային նմուշ՝ այնքան արագ է գիտատեխնիկական առաջընթացը։ Բայց այն ամենը, ինչ կառուցվում է ներկայումս, գործողության մեջ կմնա դեռ երկար ու երկար տարիներ։ Չէ՞ որ մեր կառուցածը նախատեսված է ոչ միայն ներկա սերունդների համար։ Դա մեր այսօրվա աշխատանքի, ստեղծագործության յուրատեսակ փոխանցումն է, «ուղերձը» ապագային, ժառանգություն սերունդներին, որով նրանք պիտի դատեն կառուցելու մեր կարողության, վարպետության մասին, մեր շինարարական տաղանդի, շնորհքի ու ճաշակի և, բնականաբար, մեր հայրենասիրության մասին։

Դրա համար էլ պետք է կառուցել, ինչպես ասում են, դարերի համար. քաղաքում լինի,թե գյուղում, պետք է կառուցել այնպես, որ հետագա սերունդները

երախտագիտության զգացումով հիշեն այսօրվա շինարարներին, երիտասարդությանը, կոմերիտականներին, հիանան նրանց ստեղծած կառուցածով և պահպանեն այն, հպարտությամբ շարունակեն ազգային ճարտարապետության և շինարարական արվեստի մեր կողմից հարստացված սքանչելի ավանդույթները։

Հասնել գիտատեխնիկական առաջընթացի արագացման, տեխնոլոգիայի և արտադրության կազմակերպման կատարելագործման, աշխատանքի արտադրողականության և որակի բարձրացման, սարքավորումների, տրանսպորտի, տեխնիկայի, հողի յուրաքանչյուր հեկտարի, ջրի յուրաքանչյուր խորանարդ մետրի, նյութերի, վառելիքի յուրաքանչյուր տոննայի, էլեկտրաէներգիայի յուրաքանչյուր կիլովատ-ժամի արդյունավետ օգտագործման, տիրապետել տնտեսավարման խնայողական մեթոդների. ահա այս է հանրապետության կոմերիտմիության գործունեության նշանաբանը։

Հաջող ղեկավարել կոմերիտմիությունը՝ նշանակում է ուղղություն տալ և օգնել նրան՝ իրականացնելու այս ամենը, կենտրոնացնելու նրա ջանքերը հանրային արտադրության ինտենսիվացման հիմնական ուղղությունների վրա։

Ինչպիսի հարցերով էլ որ զբաղվի կոմերիտմիությունը, նշում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, նրա առաջնային խնդիրը երիտասարդության կոմունիստական դաստիարակությունն է։

Կոմունիստական շինարարության մասշտաբների աճն ու խնդիրների բարդությունը, միջազգային ասպարեզում գաղափարախոսական պայքարի աննախադեպ սրումը առաջին պլան են մղում աճող սերնդի դաստիարակության հարցերը։ Պետք է հաշվի առնել, որ առաջին հերթին երիտասարդության դեմ են ուղղված հակակոմունիստական պրոպագանդայի կրակը, իմպերիալիզմի հոգեբանական պատերազմի սայրը։ Դասակարգային հակառակորդը հույսը դնում է երիտասարդությանը գաղափարապես և բարոյապես զինաթափելու վրա, ձգտում է նրան ներարկել սպառողական հոգեբանության և ընչաքաղցության, մեր հասարակության նպատակների հանդեպ հասարակական պասիվության և անտարբերության մանրէներ։

Ղեկավարվելով ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումի որոշումներով՝ կուսակցական, կոմերիտական կոմիտեները և կազմակերպությունները պետք է հետևողականորեն բարելավեն երիտասարդության շրջանում տարվող գաղափարադաստիարակչական աշխատանքը, այդ աշխատանքը ծավալեն լայն ճակատով, ընդգրկեն բոլոր այն ոլորտները, որոնցում տեղի է ունենում երիտասարդ անհատի ձևավորումը։

Անհրաժեշտ է երիտասարդության մեջ հաստատակամորեն ձևավորել մարքսիստական-լենինյան աշխարհայացք, դասակարգային ինքնագիտակցություն, անհաշտ վերաբերմունք բուրժուական գաղափարախոսության նկատմամբ, հոգ տանել բարձրացնելու նրա քաղաքական կուլտուրան, գաղափարական աննկունությունը և զգոնությունը, պատանիների և աղջիկների մեջ մշակել ժամանակակից գիտելիքներին տիրապետելու օրգանական պահանջ, նրանց ակտիվորեն ներգրավել ստեղծարար գործունեության մեջ, մասնակից դարձնել մեր հասարակության զարգացման արմատական խնդիրների լուծմանը։

Հարկավոր է է՛լ ավելի կատարելագործել կոմերիտմիության քաղաքական ուսուցման և տնտեսագիտական կրթության համակարգը, որն ընդգրկում է ավելի քան 360 հազար պատանի և աղջիկ։ Չէ՛ որ գաղտնիք չէ, որ շատ քաղպրոցների տեսական և մեթոդական մակարդակը դեռևս բարձր չէ, կոմերիտական քաղպարապմունքների բովանդակությունը միշտ չէ, որ համապատասխանում է երիտասարդական լսարանի այսօրվա աճող պահանջներին, որ ընկնելով քանակական ցուցանիշների ետևից, կոմերիտական կազմակերպություններում երբեմն մոռացության են մատնում պարապմունքների որակը։

Կուսակցական և կոմերիտական կոմիտեները, կազմակերպությունները, աշխատավորական կոլեկտիվների ղեկավարները պետք է լավ իմանան երիտասարդության պահանջմունքները, նրա հետաքրքրություններն ու պլանները, իրադրությունը տեղերում, ըստ ամենայնի բարձրացնեն երիտասարդության



դաստիարակության մակարդակը, ընտրեն պատանիների ու աղջիկների հետ տարվող աշխատանքի առավել արդյունավետ ձևեր ու մեթոդներ։

Գրավել, ոգևորել երիտասարդին, շարժել նրա միտքն ու սիրտը, մղել նրան սոցիալական ակտիվ գործողությունների. այս է բոլոր նրանց վսեմ առաքելությունը, ովքեր աշխատում են երիտասարդության հետ։

Երիտասարդության հետ տարվող աշխատանքում մշտապես կարևորագույն տեղ պետք է զբաղեցնի պատանիների ու աղջիկների դաստիարակումը պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով, ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամության ոգով։ Կուսակցական, կոմերիտական կոմիտեների և կազմակերպությունների գործունեությունը առաջիկայում ևս պետք է ուղղված լինի այն բանին, որպեսզի յուրաքանչյուր երիտասարդ խորապես գիտակցի սովետական ժողովուրդների բարեկամության՝ Սովետների երկրի ծաղկման ու բարգավաճման այդ անսպառ աղբյուրի, պատմական մեծ նշանակությունը Սովետական Հայաստանի, հայ ժողովրդի զարգացման ու բարօրության համար, որպեսզի նա իր հայրենանվեր գործերով, ոգեշունչ աշխատանքով ամրապնդի մեր բոլոր ազգերի ու ազգությունների դաշինքը, նրանց լենինյան անխախտ եղբայրությունը։

Պատանիներն ու աղջիկները պետք է աչքի լույսի պես պահպանեն մեր ժողովրդի անգնահատելի հարստությունը՝ ռուս-հայկական եղբայրությունը, լավ իմանան այդ եղբայրության փառապանծ տարեգրությունը, եղբայրություն, որը ձեռք է բերվել պատմության քառուղիներում, նոր կյանքի, սոցիալիզմի կառուցման համար մղված համատեղ հեղափոխական պայքարում։ Այդ դարավոր եղբայրության ժառանգորդներն ու շարունակողները պետք է խորապես տիրապետեն ռուսաց լեզվին, սովետական միասնական ընտանիքի ազգամիջյան հաղորդակցման լեզվին, որը մեր ժողովրդի համար դարձել է նաև ռուս մեծ ժողովրդի հետ հոգեհարազատության լեզու։

Աճող սերունդը ժողովուրդների բարեկամության, ինտերնացիոնալիզմի և հայրենասիրության վսեմ իդեալներով պետք է տոգորվի ամենավաղ տարիներից։ Մանկական հոգու մեջ ցանված դաստիարակության ազնիվ սերմերը մարդու հետ ապրում են նրա ողջ կյանքում։ Ահա թե ինչու այնքա՜ն կարևոր են դաստիարակչական պրոցեսի հետևողականությունը և նպատակասլացությունը անհատի ձևավորման բոլոր փուլերում՝ սկսած նախադպրոցական և կրտսեր դպրոցական տարիքից։ Եվ այդ նպատակով անհրաժեշտ է բարելավել պատանի լենինյանների կազմակերպության գործունեության ղեկավարումը, ավելի լրիվ օգտագործել պիոներական կազմակերպության դաստիարակչական մեծ պոտենցիալը։ Անհրաժեշտ է, որ յուրաքանչյուր ջոկատում կատարվի հետաքրքիր, գաղափարայնությամբ և հուզականությամբ հագեցած աշխատանք, որ պիոներների ու հոկտեմբերիկների հոգում դրվեն ճիշտ կենսադիրքի հաստատուն հիմքեր։ Եվ այստեղ կոմերիտմիության համար աշխատանքի անսահման ասպարեզ կա։

Կուսակցական, կոմերիտական կոմիտեները և կազմակերպությունները պետք է է՛լ ավելի ուժեղացնեն երիտասարդության ռազմահայրենասիրական դաստիարակությունը, հետևողականորեն ներարկեն նրան հայրենիքի նկատմամբ սիրո զգացում, քաղաքական, դասակարգային բարձր զգոնություն, մարտական պատրաստակամություն՝ պաշտպանելու սովետական հայրենիքը։ Այդ աշխատանքում հարկավոր է լայնորեն օգտագործել Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի տարած հաղթանակի 40-ամյակի տոնակատարության նախապատրաստությունը։

Շատ կարևոր է յուրաքանչյուր երիտասարդի հակաթույն ներարկել ընդդեմ իմպերիալիզմի հակասովետական, հակակոմունիստական պրոպագանդայի, նրան պատվաստել մեր իդեալներն ակտիվորեն պաշտպանելու, ինֆորմացիայի հորձանքում ճիշտ, դասակարգային դիրքերից կողմնորոշվելու կարողություն։ Հակապրոպագանդիստական աշխատանքի կատարելագործումը արդի պայմաններում դառնում է մեր հրատապ խնդիրներից մեկը։

Ընկերնե՛ր։

Հանրապետության կոմերիտմիությունը փառապանծ շատ գործերի հեղինակ է։ Մեր երիտասարդ ժամանակակիցների վառ, բովանդակալից, ստեղծարար աշխատանքով հագեցած կյանքի ֆոնի վրա առավել ևս անհանդուրժելի են պատանեկության որոշ մասի մոտ տակավին հանդիպող աշխատանքային և հասարակական պասիվությունը, քաղքենիական հոգեբանության ռեցիդիվները, խնամառուական հակումները, սոցիալիստական համակեցության կանոնների խախտումները, թափթփվածությունը, անտնտեսվարությունը և բացասական այլ դրսևորումներ։ Կուսակցական կոմիտեները և կազմակերպությունները պետք է կոմերիտմիության ջանքերն ուղղեն այդ երևույթների դեմ մղվող պայքարի ուժեղացմանը, բարձրացնեն գաղափարաբարոյական և աշխատանքային դաստիարակության արդյունավետությունը։

Մենք պետք է հասնենք այն բանին, որ յուրաքանչյուր երիտասարդ խորապես գիտակցի, որ սոցիալիստական հասարակության ամեն մի անդամի արժանապատվության, հեղինակության չափանիշը եղել և մնում է աշխատանքը։ Աշխատանքում է կոփվում դասակարգային ինքնագիտակցությունը և ձուլվում քաղաքացիական նկարագիրը, այն ամենը, առանց որի անհնար է պատկերացնել երիտասարդ մարդու ակտիվ կենսադիրքը։

Այնինչ մեզանում դեռևս քիչ չեն փաստերը, երբ պատանիները, դպրոցն ավարտելուց, հատկապես բուհ ընդունվելու անհաջող փորձից հետո, երկար ժամանակ աշխատանքի չեն անցնում, մնում են կոլեկտիվից դուրս, պարապ-սարապ կյանք վարում։ Նրանց մեջ, ցավոք, քիչ չեն նաև կոմերիտականները։ Լուրջ տագնապ է հարուցում մանավանդ այն, որ հանցագործություններ են կատարում նաև կոմերիտականներ, հիմնականում նրանք, ովքեր ոչ մի տեղ չեն աշխատում և չեն սովորում, իսկ ոմանք էլ օրինազանց գործողությունների են դիմում գինովցած վիճակում։

Վերջին տարիներին հանրապետությունում քիչ աշխատանք չի կատարվել երիտասարդության և, հատկապես, անչափահասների շրջանում հակահասարակական արարքներն ու իրավախախտումները կանխարգելու նպատակով։ Բայց, ցավոք, մեզ դեռևս չի հաջողվել լրիվ արմատախիլ անել դրանք։ Անչափահասների մի մասը, որը դուրս է մնացել դաստիարակչական աշխատանքի ոլորտից, իրեն անվայել է պահում, խախտում է իրավակարգը։ Որքան էլ որ ցավալի է, բայց հանցագործություններ կատարածների մեջ զգալի տեսակարար կշիռ են կազմում հանրակրթական դպրոցների աշակերտները։ Այդ առումով հատկապես անբարենպաստ է վիճակը պրոֆտեխկրթության համակարգում։

Սպասարկման ոլորտի կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների դաստիարակչական աշխատանքում եղած լուրջ թերություններով և հետևողականության բացակայությամբ է բացատրվում և այն փաստը, որ շատ օբյեկտներում ցածր է սպասարկման կուլտուրան, դեռևս կատարվում են թերաչափումներ, թերակշռումներ, դրամաշորթություններ, դրսևորվում կոպտություն, անուշադիր վերաբերմունք։

Շատ բան պետք է անեն իրավապահպան մարմինները և, հատկապես, ներքին գործերի մարմինները, որոնք կոչված են մշտական պայքար մղելու բացասական երևույթների դեմ, ապահովելու հասարակական օրինակելի կարգ, քաղաքացիների, պետական և հասարակական կազմակերպությունների իրավունքների և շահերի՝ օրենքով երաշխավորված պաշտպանությունը։ Հասկանալի է, որ այդ պատասխանատու խնդիրների լուծումը վճռականապես պայմանավորված է ներքին գործերի մարմինների աշխատողների, հատկապես երիտասարդ աշխատողների գաղափարական համոզվածությամբ, քաղաքական հասունությամբ, կազմակերպվածությամբ, պրոֆեսիոնալ և բարոյական վեհ հատկանիշներով։ Դրա համար այստեղ մշտապես պահանջվում են կուսակցական և կոմերիտական կազմակերպությունների ակտիվ դաստիարակչական ջանքերը։

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ դաստիարակչական աշխատանքի ցածր արդյունավետությունը հիմնականում հետևանք է այն բանի, որ այդ աշխատանքը չի ամրապնդվում տնտեսական, սոցիալական և կազմա-



կերպչական բնույթի ձեռնարկումներով, որ այդ նպատակով մշակված պլաններում բացակայում է նպատակասլացությունը, որ դրանք հաճախ մասսայական-քաղաքական միջոցառումների մեխանիկական հավաքածու են։

Կուսակցական, կոմերիտական կոմիտեները և կազմակերպությունները պետք է յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվում, յուրաքանչյուր շրջանում, յուրաքանչյուր քաղաքում հետևողականորեն կենսագործեն գաղափարախոսական, կազմակերպչական և տնտեսական աշխատանքի միասնության ապահովման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումի պահանջները։ Անհրաժեշտ է, որպեսզի կուսակցական կոմիտեները մշտապես քննարկեն կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների, իրավապահպան մարմինների, անչափահասների գործերի հանձնաժողովների, տնտեսական ղեկավարների հաշվետվությունները, հաղորդումները դաստիարակչական հարցերի շուրջ, հաստատակամորեն հասնեն երիտասարդության շրջանում հակահասարակական արարքների և իրավախախտումների կանխարգելման նպատակով անցկացվող միջոցառումների մակարդակի բարձրացման, ակտիվացնեն ընկերական դատարանների, կամավոր ժողովրդական դրուժինաների, իրավակարգի պահպանման հենակետերի, կոմերիտական օպերատիվ ջոկատների գործունեությունը, անհանդուրժողության մթնոլորտ ստեղծեն սովետական ապրելակերպի, մեր բարոյականության հակոտնյաների հանդեպ։

Կուսակցական կոմիտեները և կազմակերպությունները, տեղական սովետներն իրենք պետք է բարելավեն և կոմերիտմիությանն էլ օգնեն ակտիվացնելու գիտաաթեիստական պրոպագանդան երիտասարդության շրջանում, պատանիների ու աղջիկների գիտակցության մեջ մատերիալիստական աշխարհայացքի ձևավորումը, նոր սոցիալիստական ծիսականության արմատավորումը։ Անթույլատրելի է, երբ առանձին կոմերիտական կազմակերպություններում թերագնահատվում է աթեիստական պրոպագանդայի կարևորությունը։

Մեր շատ քաղաքներում ու շրջաններում առայժմ, ցավոք, քիչ բան է արվում սոցիալիստական ծեսերի ներդրման համար։ Փաստորեն չի կատարվում նորածինների հանդիսավոր գրանցում։ Երևանում ամուսնությունների հանդիսավոր գրանցման արարողությունը կազմակերպված է Երիտասարդության պալատում, որտեղ տարվա ընթացքում կարող են գրանցվել առավելագույնը 1.000 զույգ նորապսակներ, իսկ շատ տեղերում այդ արարողությունն առհասարակ բացակայում է։ Մինչդեռ կան երեխաներին կրոնական ծեսով կնքելու, երիտասարդներին եկեղեցում ամուսնացնելու ոչ քիչ թվով փաստեր։

Վատ է, որ առանձին կոմերիտական կոմիտեներ և կազմակերպություններ չեն պայքարում երիտասարդության կենցաղի մեջ կրոնական ծեսերի թափանցման փաստերի դեմ. ավելին, կան դեպքեր, երբ դրանցից մի քանիսը սխալմամբ համարվում են ավանդույթ։ Ցավոք, այդ բանին պատշաճ սրությամբ չեն անդրադառնում կուսակցական կոմիտեները։ Անհրաժեշտ է պարզորոշ գիտակցել, որ ավանդույթները լինում են տարբեր՝ հետադիմական-պահպանողական և նոր, դեմոկրատական։

ՀԼԿԵՄ Կենտկոմը, կոմերիտական կոմիտեները պետք է հաստատակամորեն կենցաղի մեջ արմատավորեն սոցիալիստական ծեսեր ու ավանդույթներ, նախաձեռնություն հանդես բերեն մեր ժողովրդի դեմոկրատական ավանդույթներն ու տոները նոր բովանդակությամբ հարստացնելու գործում։ Եվ, ասենք, օրինակ, սոցիալիստական պսակադրության արարողության հաստատման համար պետք չէ սպասել հատկապես կառուցված պալատների, թեև մենք նախատեսում ենք իրականացնել նաև այդպիսի ծրագիր։ Հարկավոր է, միաժամանակ, ավելի վճռականորեն արմատախիլ անել հետադիմական ավանդույթները։

Կուսակցական և կոմերիտական կոմիտեներն ու կազմակերպությունները, տեղական սովետները պետք է ակտիվացնեն աթեիստական աշխատանքը, այն իրականացնեն ավելի հետևողականորեն, հաշվի առնելով կրոնական ռեալ իրադրությունը՝ կապված բոլոր պաշտամունքների և աղանդների հետ։ Աթեիստական դաստիարակությունը պետք է լինի կոնկրետ, գործուն և արդյունավետ։

Կոմերիտմիության հարազատ գործն է պրակտիկ մասնակցությունը դպրոցական ռեֆորմի իրականացմանը, շարունակում է ընկեր Կ. Ս. Դեմիրճյանը: ՀԿԿ Կենտկոմի մայիսյան պլենումում մենք մանրամասն անդրադարձանք այդ բնագավառում կուսակցական, կոմերիտական մարմինների ու կազմակերպությունների անելիքներին և, թերևս, հարկ չկա կրկնելու դրանք:

Հանրապետությունում, ինչպես ամբողջ երկրում, արդեն մի շարք խոշոր միջոցառումներ են իրականացվում: Գնահատելով ուսումնական հաստատությունների կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների ծավալած աշխատանքը ՍՄԿԿ Կենտկոմի 1984 թվականի ապրիլյան պլենումի որոշումների կենսագործման ասպարեզում՝ այսօր հարկ է նշել, որ ամենուրեք չէ, որ այն կատարվում է ակտիվորեն ու հետևողականորեն: Շատ դպրոցներում, պրոֆտեխուսումնարաններում առաջվա նման ինչպես հարկն է չի ապահովվում ուսումնական և դաստիարակչական պրոցեսների միասնությունը, զգալի բեկում չի նկատվում աշխատանքային դաստիարակության և մասնագիտական կողմնորոշման գործում, կազմակերպվող մասսայական, դաստիարակչական միջոցառումները հաճախ նպատակասլաց և արդյունավետ չեն:

Մանկավարժական կոլեկտիվները, կոմերիտական կազմակերպությունները պետք է հետևողական, ակտիվ պայքար ծավալեն սովորողների որոշ մասի կողմից հանդես բերվող անհոգության, անտարբերության, ծուլության, սպառողական տրամադրությունների, արևմտյան մոդային կուրորեն տուրք տալու և մյուս մերժելի դրսևորումների դեմ:

ՀԼԿԵՄ Կենտկոմը, հանրապետության լուսավորության մինիստրությունը, պրոֆտեխկրթության պետական կոմիտեն պետք է լայնորեն տարածեն և մեր դպրոցների, պրոֆտեխուսումնարանների սեփականությունը դարձնեն սովորողների գաղափարական, աշխատանքային, ինտերնացիոնալ և ռազմահայրենասիրական դաստիարակության բնագավառում կուտակած դրական փորձը:

Ելնելով ՍՄԿԿ Կենտկոմի որոշումից՝ մեր կուսակցական կոմիտեները, ՀԼԿԵՄ Կենտկոմը, տեղական կոմերիտական մարմինները, դպրոցների, տեխնիկումների և պրոֆտեխուսումնարանների սկզբնական կուսակցական և կոմերիտական կազմակերպությունները պարտավոր են մշտապես իրենց տեսադաշտում պահել ուսումնական հաստատությունների կյանքում կոմերիտական կազմակերպությունների դերի հետագա բարձրացման հարցերը, յուրաքանչյուր սովորողի մեջ դաստիարակել մարքս-լենինյան տեսությունը, կուսակցության քաղաքականությունը խորապես ուսումնասիրելու, ընտրած մասնագիտությանը տիրապետելու պահանջմունք, հայրենիքին հարկավոր տեղում աշխատելու պատրաստակամություն: Կոմերիտական կազմակերպությունները պետք է մանկավարժական կոլեկտիվների հուսալի հենարանը լինեն ուսումնադաստիարակչական պրոցեսի, սովորողների աշխատանքային և պրոֆեսիոնալ պատրաստականության բարձրացման գործում:

Բուհերի կոմերիտական կազմակերպությունները կուսակցական կազմակերպություններին, պրոֆեսորադասախոսական կոլեկտիվներին բազմակողմանի օգնություն են ցույց տալիս ուսանողների կրթության ու դաստիարակության գործում: Սակայն լուրջ մտահոգություն է պատճառում այն, որ բուհերում դեռևս բարձր է «միջակ» և «անբավարար» գնահատականների տոկոսը, ամեն տարի մոտ հազար ուսանող «մաղվում է» ուսումնական հաստատություններից:

Մեզ մոտ դեռ քիչ չեն այն ուսանողները, ովքեր դեպքից-դեպք են մասնակցում կամ ընդհանրապես չեն մասնակցում կոնկուրսների, օլիմպիադաների, մրցումների, ելույթ չեն ունենում ժողովներում, հասարակական հանձնարարություններ չեն կատարում: Դա հետևանք է այն բանի, որ կոմերիտմիության կոմիտեների, ռեկտորատների աշխատանքում դեռևս առկա է, այսպես կոչված, «համախառն» մոտեցումը դաստիարակչական աշխատանքին: Առանձին կոմերիտական կազմակերպություններում ուսանողը անհատական ներգործության օբյեկտ է դառնում հաճախ միայն այն ժամանակ, երբ որևէ զանցանք է կատարում, իսկ երբ նա պասսիվ է, անտարբեր, սովորում է միջակ, մնում է կազմակերպության ուշադրությունից դուրս:



Լավ քաղաքացի-մասնագետների դաստիարակման գործում հաջողությունները ավելին կլինեն, եթե յուրաքանչյուր ուսանող, կոմերիտական լիովին գիտակցի, որ լավ, գերազանց ուսումը, ակտիվ մասնակցությունը հասարակական աշխատանքներին իր պարտքն է, ՀամԼԿԵՄ անդամի կանոնադրական պարտականությունը:

Դեռևս անբավարար է պրոֆեսորների, դասախոսների մի մասի շփումը ուսանողների հետ ուսումնական լսարանից դուրս, նրանք հազվադեպ են լինում ուսանողական հանրակացարաններում: Մի շարք հանրակացարաններում դաստիարակչական աշխատանքը փոխարինվում է ձևական միջոցառումներով: Թերություններ կան կենցաղային և կուլտուրական սպասարկման գործում: Հարկավոր է այս բոլոր հարցերին ամենալուրջ ուշադրություն նվիրել:

Կոմերիտմիության աշխատանքի մեծ, պատասխանատու տեղամասն է ուսանողական ջոկատների շարժումը: Հարկ չկա ապացուցելու, որ երկրի աշխատանքային և հասարակական-քաղաքական կյանքին ապագա մասնագետների մասնակցության այդ ձևը հաստատել է իր արդյունավետությունը: Ակտիվորեն մասնակցելով երրորդ՝ աշխատանքային քննաշրջանին, հանրապետության ուսանողությունը շոշափելի ավանդ է ներդնում տնտեսական ու սոցիալական զարգացման պլանների կատարման գործում: Գովատանքի է արժանի նաև նրանց հասարակական-քաղաքական և կուլտուր-մասսայական աշխատանքը տեղական բնակչության շրջանում:

Միաժամանակ, ուսանողական շինարարական ջոկատների աշխատանքի կազմակերպման մեջ կան թերություններ: Միշտ չէ, որ այդ ջոկատներն աչքի են ընկնում կազմակերպվածությամբ և կարգապահությամբ: Քիչ չեն նաև փաստերը, երբ առանձին տնտեսական կազմակերպություններ խախտում են ուսանողական ջոկատների ընդունման պայմանագրային պարտավորությունները, ժամանակին չեն հոգում նրանց տեղավորման և աշխատանքով ապահովելու մասին: Հարկ է, որ կուսակցական կոմիտեները և կազմակերպությունները բարձրացնեն մինիստրությունների ու գերատեսչությունների, ձեռնարկությունների ու միավորումների, բոլոր կազմակերպությունների ղեկավարների պատասխանատվությունն այս գործում:

Կոմերիտմիության կոմիտեները պետք է գաղափարախոսական աշխատանքը կազմակերպեն այնպես, որ պատանեկության գաղափարաքաղաքական կոփումը օրգանապես զուգակցվի աշխատանքային, բարոյական ու գեղագիտական դաստիարակության հետ, կոմպլեքսայնորեն իրականացվի ինչպես ուսման պրոցեսում, արտադրական և հասարակական գործունեության մեջ, այնպես էլ ազատ ժամանակը տնօրինելիս:

Երիտասարդության ժամանցի ոլորտը գաղափարադաստիարակչական աշխատանքի կարևոր ասպարեզ է: Եվ երբ մենք ասում ենք, թե անհրաժեշտ է ամենասևեռուն ուշադրություն դարձնել երիտասարդության ժամանցի կազմակերպումը բարելավելու վրա, ապա խոսքն, իհարկե, այն մասին է, որ երիտասարդության ազատ ժամանակի կազմակերպումը ակտիվորեն նպաստի նրանց գաղափարական հարստացմանը, ֆիզիկական զարգացմանը, կուլտուրական բարձր պահանջմունքների և գեղագիտական ճաշակի մշակմանը, հաղորդակցմանը մշակույթի լավագույն նվաճումներին: Իսկ մեզ մոտ, ցավոք, տեղ-տեղ մակերեսային, անլուրջ մոտեցում են դրսևորում այդ գործի նկատմամբ: Անցկացնում են մի քանի անբովանդակ, հաճախ ազմկոտ զվարճալիքներով լի միջոցառումներ և դրանով սպառված համարում իրենց անելիքները պատանիների ու աղջիկների ժամանցի կազմակերպման գործում:

Անհրաժեշտ է հստակ նպատակասլացություն հաղորդել յուրաքանչյուր միջոցառման, լավագույնս օգտագործել երիտասարդության ժամանցի համար ստեղծված հնարավորությունները, արմատապես բարելավել դիսկոտեկների, երիտասարդական սրճարանների, կուլտուրայի և հանգստի զբոսայգիների, նման մյուս հաստատությունների աշխատանքը: Հարկավոր է, որ դրանք դառնան մշակութային փոխհարստացման, հետաքրքրական հանդիպումների, զրույցների վայրեր, որոնց մուտքը պիտի փակ լինի անհոգ-անբան թրև եկող-

ների և կիսահարբածների համար։ Ի դեպ, մենք չպետք է բարեհոգություն դրսևորենք հարբեցողության դեմ պայքարի հարցում, առավել ևս երիտասարդության շրջանում։ Ճիշտ է, մեզ մոտ սթափարաններ չկան, բայց դա դեռ չի նշանակում, որ հարբեցողներ էլ չկան։ Առանձնապես անտանելի է սրճարանների սեղանների մոտ տեսնել գինովցած պատանիների, առավել ևս՝ ծխող աղջիկներով շրջապատված։ Կանանց ծխելը, պետք է ասել, վերջերս մեզ մոտ տարածում է ստանում։ Հարկավոր է կասեցնել այդ երևույթը լավ մտածված դաստիարակչական աշխատանքով։ Ծխող կինը մեր ընտանիքի բարեկրթության ավանդույթից դուրս է, չխոսելով արդեն այն մասին, որ ծխելը կործանարար է նրա համար՝ որպես մոր։

Առհասարակ դաստիարակչական աշխատանքում մենք պետք է ավելի հաճախ օգտագործենք մեր լավագույն ընտանեկան ավանդույթները՝ զգայուն, սրտագին վերաբերմունք, քաղաքավարություն, բարեկրթություն, հարգանք ավագների հանդեպ, հատկանիշներ, որ, ցավոք, մենք չենք տեսնում որոշ երիտասարդների մեջ։ Շեշտենք, որ լավ ավանդույթներին պետք է հետևեն նախ և առաջ ավագները, որոնցից դրանք փոխանցվում են երիտասարդներին։ Ավագները պիտի հետևեն իրենց վարքին երիտասարդների ներկայությամբ՝ լինի տանը, աշխատանքում, ժողովում թե հասարակական վայրում, պետք է հիշեն, որ իրենք օրինակ են ծառայում, որ իրենցից են ընկալում թե լավը և թե՛ վատը։ Երիտասարդների ներկայությամբ զուսպ և սթափ լինելը, իրեն կարգին պահելը, ի դեպ, նույնպես մեր ընտանիքի, մեր ժողովրդի բարի ավանդույթներից է։

Բազմակողմանի զարգացած անհատի ձևավորման գործում կարևոր դեր են խաղում ֆիզկուլտուրան և սպորտը։ Հանրապետությունում ֆիզիկական կուլտուրայի մասսայականության զարգացման ասպարեզում մեծ աշխատանք է տարվում, և մեր նվաճումները, իհարկե, քիչ չեն։ Սակայն ֆիզկուլտուրայի և սպորտի իսկական մասսայականության համար, հատկապես գյուղում, դեռ շատ բան պետք է արվի։ Դրա վկայությունը թեկուզ այն փաստն է, որ զինակոչիկների միայն մեկ երրորդն է հաստատում ՊԱՊ-ի իր հանձնած նորմատիվները։ Էլ չենք խոսում այն մասին, որ մեր երեխաների մեծ մասը լողալ չգիտե։

Սպորտի մասսայականությունն ապահովելու համար նախ և առաջ անհրաժեշտ է լրիվ ծանրաբեռնվածությամբ օգտագործել գոյություն ունեցող մարզական բազաները, իսկ դրանք քիչ չեն։ Այնուհետև, հարկավոր է մշակել և առաջիկա երկու հնգամյակների ընթացքում իրականացնել հանրապետության ֆիզկուլտուրայի և սպորտի նյութատեխնիկական բազայի զորացման կոնկրետ ծրագիր։ Ինչո՞ւ մեր առջև չդնենք և չլուծենք, օրինակ, նման մի խնդիր, առաջիկա մի քանի տարում ստեղծել լողավազանների այնպիսի քանակություն, որպեսզի լրիվ լուծվի պատանեկությանը լող սովորեցնելու պրոբլեմը։

Կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական, տնտեսական մարմիններն ու կազմակերպությունները պետք է ավելի շահագրգիռ, ավելի ակտիվ աշխատանք տանեն քաղաքային ու շրջանային կուլտուր-մարզական համալիրների, ըստ բնակության վայրի մարզական ակումբների ստեղծման նպատակով։ Աբովյանի քաղաքային կուլտուրմարզական համալիրի փորձը, որն առաջինն է հանրապետությունում, ցույց է տալիս, որ նման օբյեկտների ճիշտ կազմակերպված աշխատանքը հնարավորություն է ընձեռում կոորդինացնելու ջանքերը, որակապես նոր աստիճանի բարձրացնելու կուլտուրմարզական աշխատանքը։ Կիրովականցիների փորձը, որոնք արդեն ունեն բնակարանային շահագործման գրասենյակներին առընթեր 12 պատանեկան ակումբ, նույնպես վկայում է, որ մենք շատ հնարավորություններ ունենք մատաղ սերնդի ֆիզիկական դաստիարակության գործը հենց բնակության վայրում բարելավելու համար։

Երիտասարդության դաստիարակության, կրթության, աշխատանքի, կենցաղի, հանգստի և նրա առողջության պահպանության հարցերի լուծման գործում կարևոր դեր է պատկանում սովետներին, որոնք պետք է իրենց աշխատանքն այս ուղղություններում կազմակերպեն, ելնելով ՍՄԿԿ Կենտկոմի 1984



թվականի ապրիլյան պլենումի պահանջներից և քննարկվող հարցին վերաբերող կուսակցության Կենտկոմի որոշումից։

Կոմերիտական կազմակերպությունների քարտուղարների համաբանակային խորհրդակցությունում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Կ. Ու. Չեռնենկոն ասաց. «Առավելագույն համոզվածություն, ընկերական ուշադրություն, գործնական օգնություն. այսպիսին է երիտասարդական կազմակերպության կուսակցական ղեկավարման ոճին ներկայացվող պարտադիր պահանջը»։ Հենց այսպիսի մոտեցմամբ է տոգորված ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը։

Կոմերիտմիության կուսակցական ղեկավարումը, նշված է ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ, պետք է կրի պլանաչափ, սիստեմային բնույթ, պետք է ապահովի երիտասարդական միության բոլոր օղակների ակտիվ, նպատակասլաց գործունեությունը։ Կարևոր է մշտապես խորամուխ լինել երիտասարդության միջավայրում ընթացող սոցիալական, գաղափարախոսական պրոցեսների մեջ, սիստեմատիկաբար վերլուծել դրանք, օգնել կոմերիտական կազմակերպություններին՝ ընտրելու իրենց աշխատանքի հիմնական ուղղությունները, առավել ներգործուն ձևերը։ Անհրաժեշտ է ավելի շատ վստահել կոմերիտմիությանը։ Բայց դա պիտի լինի պահանջկոտ վստահություն։ Անթույլատրելի են թե՛ չափից ավելի խնամակալության փաստերը և թե տարրական անուշադրությունը նրա գործերի ու հոգսերի նկատմամբ։

«Կոմերիտմիությանը ղեկավարել,— շեշտում է ընկեր Կ. Ու. Չեռնենկոն,— նշանակում է նաև նրան օգնել լուծելու այնպիսի երիտասարդական պրոբլեմներ, որոնք երիտասարդական կազմակերպությունները միայնակ չեն կարող լուծել։ Ես նախ և առաջ նկատի ունեմ սոցիալական պրոբլեմները։ Երիտասարդության դաստիարակության գործում, ինչպես ողջ գաղափարախոսական աշխատանքում, իսկական հաջողությունն ապահովվում է լոկ այն ժամանակ, երբ դաստիարակության գործը հենվում է լավ մտածված սոցիալ-տնտեսական քաղաքականության վրա»։

ՍՄԿԿ Կենտկոմը պահանջում է պայմաններ ստեղծել, որպեսզի կոմերիտմիությունը լրիվ չափով օգտագործի իր մեծ իրավունքները պետական և հասարակական գործերի կառավարման մեջ։ Երիտասարդության ուսուցման, աշխատանքի, կենցաղի և հանգստի բոլոր հրատապ հարցերը անպայման պետք է լուծվեն կոմերիտմիության անմիջական մասնակցությամբ։ ՍՄԿԿ Կենտկոմը շեշտում է, որ մատաղ սերնդի դաստիարակության հետագա բարելավումը պետք է դիտել որպես կարևորագույն կուսակցական, պետական ու համաժողովրդական գործ, ելնել այն բանից, որ վերջին հաշվով դա մեր հայրենիքի ապագայի հուսալի ապահովման հարցն է։

Ամբողջությամբ վերցրած դրականորեն գնահատելով այդ կարևոր տեղամասում կուսակցական կոմիտեների և կազմակերպությունների կատարածը, միաժամանակ պետք է նշել, որ հանրապետությունում քիչ չեն այն կուսակցական կոմիտեներն ու կազմակերպությունները, որտեղ երիտասարդության հետ տարվող դաստիարակչական աշխատանքը դեռևս չի համապատասխանում կուսակցության այսօրվա պահանջներին։ Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ առանձին կուսշրջկոմներում և մի շարք սկզբնական կուսակցական կազմակերպություններում կոմերիտմիության, երիտասարդության կոմունիստական դաստիարակության ղեկավարման հարցերի քննարկմանը երբեմն չի նախորդում տեղերում տիրող իրավիճակի հանգամանալից ուսումնասիրությունը, հաճախ լսվում են ընդհանուր հաշվետվություններ, որոնցում բացակայում է երիտասարդության շրջանում տարվող կուսակցական ու կոմերիտական աշխատանքի առանձին կողմերի խոր վերլուծությունը։ Կոմերիտմիության գործունեության մասին ընդունվող որոշումները հաճախ սոսկ արձանագրում են կոմերիտական կազմակերպությունների վրիպումներն ու բացթողումները, չեն բովանդակում գործողությունների հստակ ծրագիր, առաջադրվող խնդիրների լուծման ուղիներ և միջոցներ։

Առանձին կուսշրջկոմներ ինչպես հարկն է խորամուխ չեն լինում շրջանային կոմերիտական կազմակերպությունների գործունեության ոճի ու մեթոդների մեջ,

հետևողականորեն չեն զբաղվում կոմերիտական կադրերի դաստիարակությամբ և մասնագիտական աճով, նրանց ռեզերվի նախապատրաստմամբ, չեն բարձրացնում կուսակցական կազմակերպությունների պատասխանատվությունը կոմերիտմիության ղեկավարումը բարելավելու գործում։ Կամոյի կուսշրջկոմն, օրինակ, սկզբնական կուսակցական կազմակերպությունների նկատմամբ բավարար պահանջկոտություն չի ցուցաբերում կոմերիտական կազմակերպություններում տիրող վիճակի, երիտասարդության շրջանում տարվող դաստիարակչական աշխատանքի համար, թույլ է վերահսկում, թե նրանք ինչպես են կատարում երիտասարդ սերնդի կյանքի, աշխատանքի ու հանգստի պայմանների բարելավման վերաբերյալ կուսակցական և սովետական մարմինների որոշումները։ Շրջանային կոմերիտական կազմակերպության աշխատանքում կան պրոբլեմներ, ընդ որում, ոչ քիչ։ Առանձին կոմերիտական կազմակերպություններում ցածր են կարգապահությունը, կազմակերպվածությունը, երիտասարդության մի մասը ակտիվ կերպով չի մասնակցում տնտեսական ու սոցիալական զարգացման պլանների կատարման պայքարին։

Ամենքիս պետք է բացարձակապես պարզ լինի՝ այնտեղ, ուր թուլացած է կուսակցական ղեկավարումը, ուր կուսակցական կազմակերպությունների կողմից անուշադրություն է դրսևորվում կոմերիտմիության գործունեության նկատմամբ, այդտեղ, որպես կանոն, իր բարձրության վրա չէ նաև կոմերիտական կազմակերպության աշխատանքը։

Կուսակցական կոմիտեները, ըստ ամենայնի բարելավելով կոմերիտմիության ղեկավարման գործը, պետք է հասնեն երիտասարդության հետ կուսակցական, սովետական, տնտեսական ղեկավարների մշտական շփման, մատաղ սերնդի դաստիարակությանը բոլոր կոմունիստների ակտիվ մասնակցության մասին կուսակցության պահանջի անշեղ իրականացմանը։ Իսկ մեզ մոտ, ցավոք, առանձին ղեկավար աշխատողներ գործնականորեն չեն հետաքրքրվում երիտասարդների կյանքով, աշխատանքով, չեն մասնակցում կոմերիտական ժողովներին ու միջոցառումներին։ Սա անթույլատրելի է, ընկերնե՛ր։ Այդպիսի ղեկավարներին պետք է խիստ պատասխանատվության կանչել։ Եվ եկեք պայմանավորվենք հետևելու այն խորհրդին, որ «պետք է կանոն դարձնել՝ ավելի հաճախ լինել այնտեղ, ուր աշխատում, սովորում, հանգստանում են երիտասարդները, նրանց հետ անկեղծորեն զրուցել ցավոտ հարցերի մասին»։

Կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները, սկզբնական կուսակցական կազմակերպությունները պետք է հետևողականորեն արմատախիլ անեն թերությունները, կոմերիտական կազմակերպություններին մշտապես օգնեն՝ կարգավորելու համերաշխ աշխատանքը երիտասարդական միության անդամների շրջանում, վճռական պայքար մղեն ցուցամոլության դեմ, ավելի շատ զբաղվեն առօրյա գործերով, երիտասարդության հետ տարվող աշխատանքի ծանրության կենտրոնը տեղափոխեն անմիջականորեն աշխատավորական կոլեկտիվներ, բնակության վայրեր։

ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ ուշադրություն է հրավիրված այն բանի վրա, որ տեղական կոմերիտական մարմինները դանդաղ են վերակառուցում իրենց գործունեության ոճն ու մեթոդները, էական թերություններ կան կոմերիտական կադրերի հետ տարվող աշխատանքում։ Կոմերիտական կազմակերպությունները միշտ չէ, որ արդյունավետ են օգտագործում երիտասարդների վրա ազդելու առկա հնարավորությունները, փորձում են նոր խնդիրները լուծել «մաշված», շաբլոն եղանակներով ու միջոցներով։

Այս քննադատությունը լիովին վերաբերում է նաև Հայաստանի ԼԿԵՄ Կենտկոմին, հանրապետության կոմերիտմիության քաղկոմներին և շրջկոմներին։ Հանրապետության կոմերիտմիության Կենտրոնական կոմիտեի գործունեության մեջ քիչ թերություններ չկան կոմերիտմիության քաղկոմների, շրջկոմների, սկզբնական կոմերիտական կազմակերպությունների ղեկավարման բնագավառում։ Կոմերիտմիության որոշ կոմիտեներ դեռևս հրապուրվում են մեծաթիվ որոշումներ ընդունելով՝ կենդանի կազմակերպչական աշխատանքը փոխարինելով թղթարարությամբ։



Ինչպես հայտնի է, վերջին տարիներս հանրապետության կոմերիտականները հանդես են եկել լավագույն ձեռնարկումներով ու նախաձեռնություններով, որոնք պետք է լայն տարածում ստանան։ Ինչու, օրինակ, կոմերիտմիության Կիրովականի քաղկոմը և հենց ինքը՝ ՀԼԿԵՄ Կենտկոմը, չպետք է պաշտպանեին դասարանի նկատմամբ բրիգադի շեֆությունը հաստատելու վերաբերյալ ավտոգենմաշականների նախաձեռնությունը։ Չէ՞ որ երեխաների կոնկրետ կոնտինգենտի նկատմամբ բանվորների կոլեկտիվ շեֆությունն իսկապես հետաքրքիր նորույթ է։ Ինչո՞ կոմերիտմիությունը չնախաձեռնեց դրա տարածումը։ Մի՞թե սպասում են, ինչպես ասում են, վերից տրված արժեքավոր ցուցումների, բայց չէ՞ որ առավել արժեքավորը նորի, օգտակարի պաշտպանությունը, դրա տարածումը նախաձեռնելն է։

Կոմերիտական շատ ղեկավար աշխատողներ կապված չեն տեղերին, բավարար խորությամբ տեղյակ չեն սկզբնական կոմերիտական կազմակերպությունների գործերի վիճակին, որի հետևանքով ժամանակին չեն արձագանքում ծագող պրոբլեմներին ու հոգսերին, նրանց աշխատանքներում տեղ գտած թերություններին։ Այստեղ հրատապ են հնչում Վ. Ի. Լենինի այն խոսքերը, որ «մեր նշանաբանը պիտի լինի ավելի քիչ «ղեկավարում», ավելի շատ՝ պրակտիկ գործեր, այսինքն՝ ավելի քիչ ընդհանուր դատողություններ, ավելի շատ փաստեր և ստուգված փաստեր, որոնք ցույց են տալիս, թե որ բնագավառում, ինչպիսի պայմաններում, որքանով ենք մենք առաջ գնում, կամ կանգնած ենք տեղում, կամ էլ ետ ենք նահանջում»։

ՀԼԿԵՄ Կենտրոնական կոմիտեն պետք է հասնի այն բանին, որ հանրապետական կոմերիտական կազմակերպությունում՝ ամենուրեք ապահովվեն կուսակցական, վերադաս կոմերիտական մարմինների, ինչպես նաև սեփական որոշումների կատարման վերահսկումն ու ստուգումը, բարձրացվի կադրերի պատասխանատվությունը այդ գործում և ամրապնդվի կատարողական կարգապահությունը։ Անհրաժեշտ է վճռականորեն կասեցնել այն փաստերը, երբ ընդունված որոշումները չեն ամրապնդվում տեղերում տարվող կազմակերպչական աշխատանքով, և դրանցում շարադրված պահանջներն ու հանձնարարականները մնում են սոսկ որպես բարի ցանկություն։

Կոմերիտական կոմիտեներն ու կազմակերպությունները պետք է վճռականորեն ազատվեն մեծաթիվ հարկի թե անհարկի լայնմասշտաբ միջոցառումներ անցկացնելու հրապուրանքից, որոնցում «ընդգրկում» են հարյուրավոր և հազարավոր մասնակիցների, մի կողմ թողնելով կոնկրետ գործը, ընդունված որոշումների կատարումը կազմակերպելու քրտնաջան, առօրյա աշխատանքը։ Իրենց գործունեության մեջ նրանք պետք է ղեկավարվեն լենինյան այն ցուցումով, որ «ամենագլխավորը երիտասարդության պատրաստումը և ուսուցումը գործնականորեն առաջ մղելու անհրաժեշտությունն է»։

Հետագա կատարելագործում է պահանջում կոմերիտական կադրերի ընտրությունը, տեղաբաշխումը և ուսուցումը բարելավելու աշխատանքը, նշում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը։ Ամբողջությամբ վերցրած՝ հանրապետական կոմերիտական կազմակերպության մեջ կուսակցական մարմինների և սկզբնական կուսակցական կազմակերպությունների ուշադրության շնորհիվ ստեղծվել է լավ ակտիվ, որն ունակ է հաջողությամբ լուծելու առաջադրված խնդիրները։ Սակայն կոմերիտմիության մեջ աշխատող կադրերի ընտրության ու տեղաբաշխման գործում կան նաև թերություններ։ Մի շարք կուսակցական ու կոմերիտական կազմակերպություններ անբավարար են զբաղվում այդ հարցով։ Դեռևս լինում են դեպքեր, երբ պատասխանատու աշխատանքի են առաջ քաշվում լավ չպատրաստված, երիտասարդական կոլեկտիվում հեղինակություն չվայելող մարդիկ։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի կազմակերպական-կուսակցական աշխատանքի բաժինը, մյուս բաժինները, կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները պետք է կոմերիտական կադրերի հետ տարվող աշխատանքը համարեն կոմերիտմիության գործունեության ուժեղացման հիմնական ազդակներից մեկը։ Անհրաժեշտ է ամենայն ուշադրությամբ քննության առնել կոմերիտմիու-

թյան կադրերի ընտրության ու տեղաբաշխման գործի վիճակը և կոմերիտական մարմինների հետ համատեղ բոլոր միջոցները ձեռնարկել, որպեսզի կոմերիտական կազմակերպությունները գլխավորեն, իրոք, աշխատանքում ստուգված ու հեղինակավոր երիտասարդ ղեկավարներ։ Հարկավոր է վճռականորեն կասեցնել կարիերիզմի և անտարբերության, գործի նկատմամբ ոչ քննադատական վերաբերմունքի ամեն դրսևորում, ամեն կարգի չարաշահում։

Կուսակցական կոմիտեների և կազմակերպությունների, մեր ամենքիս առաջնահերթ պարտքն է հետևողականորեն բարելավել կոմերիտմիության կուսակցական ղեկավարումը, բարձրացնել նրա դերը երիտասարդության կոմունիստական դաստիարակության գործում, հասնել այն բանին, որ բոլոր պատանիներին ու աղջիկներին բնորոշ լինեն գաղափարաբարոյական վեհ հատկություններ, առաջին հերթին՝ կոմունիստական համոզվածություն, սոցիալական ակտիվություն, աշխատասիրություն ու ինքնակարգապահություն, պատասխանատվություն ընդհանուր գործի համար, կուլտուրա և ազնվություն ընտանիքի, կոլեկտիվի, հասարակության հանդեպ, հարգալից վերաբերմունք օրենքի նկատմամբ, ծագած դժվարությունները հաղթահարելու կարողություն։

Պլենումը պետք է կուսակցության և կոմերիտմիության բոլոր կոմիտեներին, մինիստրությունների ու գերատեսչությունների, ձեռնարկությունների, կառույցների, տնտեսությունների, ուսումնական հաստատությունների բոլոր կուսակցական ու կոմերիտական կազմակերպություններին պարտավորեցնի մշակելու «Կոմերիտմիության կուսակցական ղեկավարման հետագա բարելավման և երիտասարդության կոմունիստական դաստիարակության գործում նրա դերի բարձրացման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման իրականացման հատուկ ծրագիր, ամեն ինչ անելու այդ որոշման մեջ առաջադրված պատասխանատու խնդիրների հետևողական կատարման համար։

Ընկերնե՛ր։

Այժմ չկա ավելի կարևոր խնդիր, քան տնտեսական տարվա և, ամբողջությամբ վերցրած, տասնմեկերորդ հնգամյակի հաջող ավարտը։ Մենք պետք է հասնենք հնգամյա պլանի լրիվ կատարման, իսկ մի շարք գլխավոր ցուցանիշներով գերազանցենք նախատեսված բնագծերը։ Դրա համար մենք ունենք բոլոր օբյեկտիվ հնարավորությունները։ Դա հաստատվում է անցած ժամանակաշրջանում ժողովրդական տնտեսության զարգացման արդյունքներով։

1984 թվականի ութ ամսում հանրապետության արդյունաբերության աշխատողներն ապահովել են պլանների և ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարումը։ Արտադրության ծավալների աճը կազմել է վեց տոկոս։ Աշխատանքի արտադրողականությունը պլանից ավելի աճել է 1,3 կետով, արտադրանքի ինքնարժեքը (7 ամիսների արդյունքներով)՝ լրացուցիչ իջել է 0,76 տոկոսով։ Պետական որականիշով թողարկվող արտադրանքի ծավալը հասել է 21 տոկոսի։

Միաժամանակ ակնհայտ են նաև թերությունները։ Դեռևս շատ ձեռնարկություններ չեն կատարում պլանային առաջադրանքները, չխոսելով արդեն ստանձնած սոցիալիստական պարտավորությունների մասին։ Ոչ քիչ թվով միավորումներ ու ձեռնարկություններ չեն կատարել ապրանքային արտադրանքի արտադրության պլանը, աշխատանքի արտադրողականության աճի առաջադրանքները։ Քիչ չեն նաև այնպիսի ձեռնարկություններ, որոնք չեն կատարել ըստ արտադրացանկի արտադրանքի թողարկման պլանները, չեն ապահովել պայմանագրային մատակարարումների պլանների լրիվ կատարումը։

Սա, ընկերներ, անթույլատրելի է։ Կուսակցական կոմիտեները պարտավոր են ընդհուպ զբաղվել պետական պլանային կարգապահության ամրապնդմամբ, պլանների կատարումը ձախողող ձեռնարկությունների ու միավորումների ղեկավարների, սկզբնական կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների պատասխանատվության բարձրացմամբ։ Մենք բազմիցս ասել ենք և այսօր մեկ անգամ ևս կրկնում ենք, որ հանրապետության յուրաքանչյուր ձեռնարկություն պետք է կատարի ինչպես ապրանքային արտադրանքի թողարկման պլանները՝ թե ըստ ծավալի և թե ըստ արտադրացան-



կի, այնպես էլ ապահովի պայմանագրային պարտավորությունների լրիվ կատարումը։

Չնայած անասնապահական մթերքների, բուսաբուծական արտադրանքի առանձին տեսակների արտադրության և պետությանը դրանց վաճառքի պլանների կատարմանը, գյուղում իրադրությունը մնում է լարված։ Ուշացած գարունը, տևական երաշտը մեծ վնաս հասցրին գյուղատնտեսությանը, առանձնապես հացահատիկի արտադրությանն ու կերարտադրությանը։ Դանդաղեցին կաթի արտադրության աճի և վաճառքի տեմպերը։ Բայց այստեղ էլ լավ, բարձր կազմակերպված աշխատանքի դեպքում մենք կարող ենք նվազագույնի հասցնել կորուստները։

Այսօր անհրաժեշտ է բոլոր ջանքերը նպատակամղել բերքը անկորուստ և սեղմ ժամկետներում հավաքելուն, ապահովել դրա հուսալի պահպանումն ու ռացիոնալ վերամշակումը։ Մենք պարտավոր ենք անել ամեն ինչ՝ հնարավորին չափ շատ կեր կուտակելու համար, հատուկ ուշադրություն դարձնել ինչպես սեփական, այնպես էլ գնովի կերերի խնայողական, բարձրարդյունավետ օգտագործման վրա; ապահովել անասնապահական մթերքների արտադրության և պետությանը դրանց վաճառքի պլանների ու սոցիալիստական պարտավորությունների կատարումը, հաջողությամբ անցկացնել անասունների ձմեռումը։ Անհրաժեշտ է պահանջվող ագրոտեխնիկական ժամկետներում կատարել աշնան դաշտային աշխատանքները։

Մեր կարևորագույն գործը պետք է դառնա կապիտալ շինարարության բարելավումը։ Շինարարները, ամրապնդելով իրենց աշխատանքի դրական միտումները, պետք է վճռականորեն ազատվեն թերություններից, առավել լրիվ օգտագործեն առկա ռեզերվները աշխատանքների տեմպերն արագացնելու և շինարարության որակը բարելավելու համար։

Կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները, համապատասխան մինիստրություններն ու գերատեսչությունները պետք է գործնական միջոցառումներ իրականացնեն՝ ուժեղացնելու շինարարական կազմակերպությունների աշխատանքները, կենտրոնացնելու ուժերն ու միջոցները արտադրական կարողությունների, բնակմակերեսի, սոցիալ-կենցաղային օբյեկտների գործարկման 1984 թվականի առաջադրանքների կատարման համար։ Կապալային մինիստրությունների ղեկավարները պետք է ուժեղացնեն կազմակերպչական գործունեությունը անմիջականորեն կառույցներում, բարձրացնեն բոլոր կառավարչական օղակների պատասխանատվությունը։ Գործի հաջողությունը մեծ չափով կորոշի կապալային մինիստրությունների, պատվիրատու մինիստրությունների, նյութական ռեսուրսներ մատակարարողների, շինարարական կազմակերպությունների կոլեկտիվների կազմակերպված, համերաշխ աշխատանքը։ Անհրաժեշտ է, որ Մինիստրների խորհուրդը և Կենտկոմը հմտորեն կոորդինացնեն այդ աշխատանքը։

Առևտրի աշխատողները պետք է ապահովեն ոչ միայն ապրանքաշրջանառության պլանների, այլև լրացուցիչ առաջադրանքի կատարումը։

Մի խոսքով, բոլոր աշխատավորական կոլեկտիվները, նրանց ղեկավարները, կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունները պետք է խորապես ու քննադատորեն վերլուծեն իրենց արտադրական պլանների ու ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարման վիճակը և գործնական միջոցներ ձեռնարկեն, որպեսզի այն ամենը, ինչ նախատեսված է, իրականացվի լրիվ։

Ամբողջությամբ վերցրած տասնմեկերորդ հնգամյակի առաջադրանքների կատարման բախտը պայմանավորված է այն բանով, թե մենք ինչպես կեզրափակենք ընթացիկ տնտեսական տարին, թե որքան հաջող կսկսենք հնգամյակի վերջին տարին։ Ամբողջ նախատեսվածի անվերապահ կատարման նպատակադրում, բարձր կազմակերպվածություն և կարգապահություն, բարձրարտադրողական աշխատանք՝ ահա թե ինչը կապահովի մեր առջև ծառացած տնտեսական ու քաղաքական խնդիրների հաջող իրականացումը։

Մենք վստահ ենք, որ կոմունիստները, կոմերիտականները, երիտասարդները, ինչպես միշտ, այդ գործում կգտնվեն առաջին շարքերում։

Ընկերնե՛ր։ Կոմերիտմիության կուսակցության առաջադրած խնդիրները թելադրված են հենց կյանքի կողմից, սովետական հասարակության զարգացման կենսական պահանջներով, հասարակություն, որը խորապես շահագրգռված է դաստիարակելու այնպիսի երիտասարդություն, որը, ինչպես նշել է ընկեր Կ. Ու. Չեռնենկոն, չի երերա, չի կքի երկրի բախտի, սոցիալիզմի ու խաղաղության բախտի համար պատմական պատասխանատվության բեռան տակ, որը կկարողանա ոչ միայն յուրացնել ավագ սերունդների փորձը, այլև այն հարստացնել սեփական մեծագործություններով։

Առաջադրված խնդիրների իրականացման կոնկրետ ուղիները անհրաժեշտ է բազմակողմանիորեն քննության առնել կուսակցական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպություններում այժմ տեղի ունեցող հաշվետվությունների և ընտրությունների ընթացքում։ Ընդ որում, կարևոր է խորապես վերլուծել գոյություն ունեցող միտումները, քննադատաբար գնահատել կատարված աշխատանքը, բացահայտել թերությունները, նախատեսել դրանց վերացման, երիտասարդության հետ տարվող աշխատանքի արդյունավետության հետագա բարձրացման, դրա ոճի ձևերի ու մեթոդների կատարելագործման, երիտասարդության կոմունիստական դաստիարակության ամբողջ գործի բարելավման կոնկրետ քայլեր։

Հայաստանի կոմերիտմիությունը, երիտասարդությունը, ինչպես սովետական բոլոր պատանիներն ու աղջիկները, հարազատ լենինյան կուսակցության շուրջը սերտորեն համախմբված, ջերմորեն պաշտպանում և միահամուռ հավանություն են տալիս կուսակցության ներքին ու արտաքին իմաստուն քաղաքականությանը, համակված են հայրենասիրական ձգտումով իրենց արժանի ավանդը մուծելու կոմունիստական արարման՝ կուսակցության նախատեսած մեծ ծրագրի իրականացման գործում, իրենց ողջ եռանդն ու գիտելիքները ի սպաս դնելու մեր սիրելի հայրենիքի տնտեսական և պաշտպանական հզորության ամրապնդմանը։

Թույլ տվեք հավաստիացնել Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեին, վերջում ասաց ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, որ հանրապետական կուսակցական կազմակերպությունը, հետևողականորեն ու անշեղորեն կենսագործելով ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը, ամեն ինչ կանի, որպեսզի մեր երիտասարդ հերթափոխը աճի գաղափարապես ու բարոյապես կոփված, աշխատասեր, կուսակցությանն ու ժողովրդին անսահմանորեն նվիրված, միշտ պատրաստ պաշտպանելու սոցիալիզմի նվաճումները, իր մեծ հայրենիքը։ (Բուռն ծափահարություններ):

---

# ԲԱՐՁՐԱՑՆԵԼ ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅՈՒՆԸ

ՍԿՍՎԵՑ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԼՈՒՍԱՎՈՐՈՒԹՅԱՆ նոր ուսումնական տարին։ Թե ինչ մտորումներով հանդիպեցին պրոպագանդիստը և ունկնդիրը, որոշվել էր անցած տարում, թերևս՝ տարիների ընթացքում։ Եթե ունկնդիրների մոտ առաջացել է սպասումի զգացում, նշանակում է պրոպագանդիստը կատարել է իր հիմնական խնդիրներից մեկը՝ նրանց համակել է հետաքրքրությամբ քաղաքական ուսուցման նկատմամբ, նվաճել համակրանքը։ «Հայէլեկտրամեքենա» արտադրամիավորման գլխավոր դիրեկտորի արտադրության գծով տեղակալ, գիտական կոմունիզմի դպրոցի պրոպագանդիստ, հանրապետության կուլտուրայի վաստակավոր աշխատող Պետրոս Մանվելյանը հասել է դրան՝ իր խոր գիտելիքների, կոմունիստական իդեալների նկատմամբ աներեր հավատի ու սկզբունքայնության, երկար տարիների ընթացքում ձեռք բերած պրոֆեսիոնալ վարպետության, ակտիվ խառնվածքի, անձնական հմայքի շնորհիվ։

Ուսումնական տարվա առաջին օրը Պ. Մանվելյանը պարապմունքի ներկայացավ «Բարձրարդյունավետ աշխատանքը, հնգամյակի հաջող ավարտումը յուրաքանչյուրի, բոլոր աշխատավորական կոլեկտիվների հայրենասիրական պարտքն է» թեմայի շուրջ զրույց անցկացնելու նպատակով։ Նա վաղօրոք ուսումնասիրել էր կուսակցական փաստաթղթերը, պարզել արտադրության, դրա կազմակերպման, կոլեկտիվի, ունկնդիրների առջև դրված խնդիրները։

Մանվելյանի և ուրիշ շատ պրոպագանդիստների նման կողմնորոշումը համապատասխանում է կուսակցության կողմից պրոպագանդիստական աշխատանքին ներկայացվող պահանջներին, որոնք պարզորոշ առաջադրվեցին ՍՄԿԿ XXVI համագումարի, Կենտկոմի 1983 թ. հունիսյան և հետագա պլենումների նյութերում։

Դեպի կոմունիզմ կատարվող առաջընթացում ծառացած խոշոր ու բարդ խնդիրների լուծումն անհնար է, ասաց ընկ. Կ. Ու. Չեռնենկոն ՍՄԿԿ Կենտկոմի 1984 թ. ապրիլյան պլենումում «...առանց մասսաների ձեռներեցության և ստեղծագործության լայն ծավալման, առանց հասարակական կյանքի հանգուցային պրոբլեմների լուծման գործում նրանց ամենաակտիվ ներգրավման»։ Կուսակցությունը դրան է ձգտում էկոնոմիկայի աճի ծրագրերը մշակելիս և ուժերը գաղափարախոսական գործունեության վճռական բարելավմանը նպատակամղելիս։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը քննարկել է հանրապետության կուսակցական կազմակերպությունների՝ ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան և հետագա պլենումների պահանջներից բխող խնդիրները, ընդունել ծրագրային որոշումներ, հաստատել միջոցառումների ծավալուն պլաններ։ Դրանց համապատասխան կազմակերպվել է աշխատավորության մարքս-լենինյան կրթությունը, միջոցներ են ձեռնարկվել հեռանկարային ծրագրերը կենսագործելու համար։ Որոշակի աշխատանք է կատարվել քաղաքական լուսավորության վերակառուցման, դրա բովանդակությունը հարստացնելու և այն զարգացած սոցիալիզմի կատարելագործման ընթացքում լուծվող մեծ ու բարդ խնդիրների

մակարդակին հասցնելու, կյանքի հետ նրա կապը ուժեղացնելու ասպարեզում։ Մեծացել է ունկնդիրների, տեսության ինքնուրույն ուսումնասիրողների հետաքրքրությունը Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի, Վ. Ի. Լենինի գաղափարական ժառանգության, կուսակցական փաստաթղթերի ուսումնասիրման, ինչպես նաև տարբեր հարցերի վերաբերյալ բուրժուական գաղափարախոսության, ռևիզիոնիստական ու օպորտունիստական կոնցեպցիաների քննադատության, հակապրոպագանդայի ծավալման նկատմամբ։

Անցած ուսումնական տարում քաղուսուցման գործնական ուղղվածության ապահովման համար ուղեցույց դարձավ ՀԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումում Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանի առաջադրած այն թեզը, որ «Քաղաքական լուսավորության համակարգում ինչ հարց, ինչ դրույթ էլ որ ուսումնասիրվի, պետք է շաղկապվի կոմունիստական շինարարության կենդանի պրակտիկայի, ժողովրդական տնտեսության զարգացման, կոլեկտիվների առջև ծառացած կոնկրետ խնդիրների հետ, մարդու դաստիարակման, նրա աշխատանքային ու սոցիալական ակտիվության խթանման պրոբլեմների հետ»։ Այս առումով դրական աշխատանքի զգալի փորձ է կուտակվել Երևանի, Լենինականի, Կիրովականի, Դիլիջանի, Ախուրյանի, Ղափանի, Սևանի, Աբովյանի, Ստեփանավանի, Եղեգնաձորի և շատ այլ շրջանների կուսկազմակերպությունների քաղաքական լուսավորության դպրոցներում և սեմինարներում։

ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի առաջադրած կարևորագույն դրույթներից մեկն այն է, որ պատմական արդի իրավիճակում գաղափարախոսական աշխատանքը մղվել է առաջին պլան, դարձել ողջ կուսակցության գործը։ Կուսակցական լուսավորության ոճի փոփոխման առաջին պայմանը, ինչպես նշվեց հունիսյան պլենումում, այդ գործի կուսակցական ղեկավարման ոճի փոփոխումն է, գաղափարախոսական աշխատանքի կատարելագործումը կուսակցության ներսում այն հաշվով, որ այն հիրավի դիտվի և իրականացվի որպես ողջ կուսակցության գործը, նրա առաջնահերթ կարևոր խնդիրը, ապահովվի պրոպագանդայի համահնչունությունը կուսակցության քաղաքականության հիմնադրույթների, մարդկանց հետաքրքրությունների հետ։ Այս իմաստով էլ գաղափարախոսական աշխատանքի կատարելագործման ասպարեզում հետըզհետե մեծանում է կուսակցական-տնտեսական և գաղափարախոսական ակտիվի դպրոցների դերը որպես ղեկավար կադրերի ուսուցման հիմնական օղակների, ուր ընդգրկված են այն աշխատողները, որոնց առջև ծառացած են տվյալ խնդիրները։ ՀԿԿ Կենտկոմի բյուրոն քննարկեց կուսակցության Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումների լույսի ներքո ղեկավար կադրերի մարքս-լենինյան ուսուցման կատարելագործման նպատակով Աբովյանի և Շամշադինի շրջկոմների ծավալած աշխատանքի հարցը և ընդունեց ծրագրային որոշում։ Այն մեծապես նպաստեց այդ գործի բարելավմանը, կուսակցական-տնտեսական ակտիվի դպրոցների գործունեության արդյունավետության բարձրացմանը։

ՍՄԿԿ Կենտկոմը «Աշխատավորության շրջանում տարվող քաղդաստիարակչական աշխատանքին Էստոնական ՍՍՀ-ի ղեկավար կադրերի մասնակցության մասին» որոշման մեջ նշեց, որ անհրաժեշտ է հաստատակամորեն կատարելագործել ղեկավար կադրերի գաղափարատեսական ուսուցումը, նրանց մեջ ձևավորել բարձր կուլտուրա, տնտեսագիտական մտածողության նոր տիպ։ Խնդիր դրվեց բարձրացնել կուսակցության քաղկոմների ու շրջկոմների առաջին քարտուղարների պատասխանատվությունը կուսակցական-տնտեսական ակտիվի դպրոցների աշխատանքի համար, ուսուցումը մոտեցնել ունկնդիրների հասարակական պրակտիկայի պահանջներին, նրանց սովորեցնել կառավարման, քաղաքական դաստիարակության արդյունավետ մեթոդներ, մանկավարժության, սոցիալական հոգեբանության, սոցիոլոգիայի հիմունքներ։

Հանրապետության կոմունիստ մտավորականության ստվար բանակը, ավելի քան 20 հազար գիտնականներ, բարձրորակ մասնագետներ ընդգրկված են մեթոդաբանական և տեսական սեմինարներում՝ որպես մարքս-լենինյան



տեսության ինքնուրույն ուսումնասիրողներ։ Դրանց մեծ մասն ապահովված է փորձված ու հմուտ ղեկավարներով, կիրառվում են տեսական ու սոցիալական հարցերի քննարկման ակտիվ, պրոբլեմային ձևեր, բարձրացել է սեմինարների մասնակիցների հետաքրքրությունը գիտության փիլիսոփայական, գործնական խնդիրների նկատմամբ։ Դա մեծապես նպաստում է նրանց դիալեկտիկական մտածելակերպի զարգացմանը, գիտության նորագույն նվաճումների փիլիսոփայական մեկնաբանման շնորհիվ մարքս-լենինյան մեթոդաբանության խոր տիրապետմանը։ Դա ինչպես գիտահետազոտական գործունեության, այնպես էլ նրանց կողմից երիտասարդության, աշխատավորության շրջանում կատարվող քաղաքական-դաստիարակչական աշխատանքի արդյունավետության հիմքն է։ Նման դրական աշխատանքը բնորոշ է մի շարք բուհական կուսկազմակերպությունների մեթոդաբանական սեմինարներին։

Ժողովրդական տնտեսության նյութական և հոգևոր արտադրության ոլորտներում աշխատող բարձրագույն և միջնակարգ-մասնագիտական կրթությամբ բոլոր կոմունիստները, ուսուցիչները՝ մոտ 50 հազար մարդ, ընդգրկված են գիտական կոմունիզմի արդիական ու հրատապ սոցիալ-քաղաքական պրոբլեմներն ուսումնասիրող դպրոցներում։ Քաղաքական լուսավորության այս օղակի ունկնդիրները հիմնականում այն մտավորականներն ու մասնագետներն են, որոնց արդյունավետ ուսուցումը, նրանց ստեղծագործական ակտիվության բարձրացումը մեծապես նպաստում են պրոպագանդիստական, ագիտացիոն-մասսայական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի բարելավմանը։ Նյութական արտադրության ոլորտի գիտական կոմունիզմի շատ դպրոցներ կոմպլեկտավորվել են ունկնդիրների աշխատանքային ու մասնագիտական առանձնահատկություններին համապատասխան, առաջադրվել են տվյալ պրոբլեմը լավ իմացող, գիտական և մեթոդական բարձր պատրաստականություն ունեցող պրոպագանդիստներ։

Սակայն անցած ուսումնական տարում գիտական կոմունիզմի դպրոցներում տեղ են գտել նաև թերություններ ու թերացումներ։ Դպրոցների կոմպլեկտավորման կարգի խախտման, պրոպագանդիստների կողմից, առանց կուսակցական մարմինների հետ համաձայնեցնելու, պրոբլեմների փոփոխման և այլ կարգի թերություններ էին տեղ գտել «Հայարդմոնտաժ» տրեստի, «Հայուսկի» արտադրամիավորման, «Հայվինտիլացիա» վարչության, ռետինատեխնիկական իրերի, երկաթբետոնյա կոնստրուկցիաների № 6, հացի № 5 գործարանների և այլ կազմակերպությունների գիտական կոմունիզմի դպրոցներում։ Կուսկազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է ուշադրության կենտրոնում պահել այս դպրոցների գործունեությունը, ժամանակին նկատել ու կանխել նման թերությունները։

Մոտ 84 հազար կոմունիստներ են ընդգրկված կուսակցական ուսուցման ամենածավալուն օղակում՝ քաղդպրոցներում ու մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցներում։ Դրանք կոչված են նպաստելու արտադրության մեջ աշխատող կոմունիստների ավանգարդային դերի, կուսակցության անդամների քաղաքական ճիշտ կողմնորոշման, դրանով իսկ արտադրությանը, նրա կազմակերպմանն ու կառավարմանը նրանց ակտիվ մասնակցության ապահովմանը։ ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի պահանջներին համապատասխան կուսակցական ուսուցման այս զանգվածային, ինչպես նաև մյուս օղակների նկատմամբ ուշադրության ուժեղացման, քաղաքական լուսավորության կատարելագործման և դրա արդյունավետության բարձրացման լավ օրինակ տվեցին կուսակցության շատ շրջկոմներ և սկզբնական կազմակերպություններ։

Այնտեղ, ուր ապահովվում է պրոպագանդիստական, քաղաքական-դաստիարակչական, տնտեսական և կազմակերպական աշխատանքի սերտ միասնություն, արդյունքներն ավելի ակնառու են դառնում։ Հունիսյան պլենումի որոշումների կենսագործման ասպարեզում կուսակցության Ախուրյանի շրջկոմի հաշվետվության քննարկումը ՀԿԿ Կենտկոմի պլենումում ցույց տվեց, որ

վարման ապահովման խնդիրը։ Բարելավվել են երիտասարդության քաղաքական կրթության դրածքը, պրոպագանդիստների որակական կազմը, նրանց հետ տարվող տեսական ու մեթոդական աշխատանքը։ Ավելացել է դպրոցներում և սեմինարներում ընդգրկվածների թիվը, կատարելագործվել են պարապմունքների վարման ձևերն ու մեթոդները։ Սակայն այդ բնագավառում դեռևս նկատվում են անկազմակերպվածության և ձևականության դրսևորումներ։ Կոմերիտականների, երիտասարդության քաղաքական լուսավորությունը արժանի է առանձնակի ուշադրության։ ՀԿԿ Կենտկոմի 1984 թ. սեպտեմբերյան պլենումում Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանն իր զեկուցման մեջ նշեց, որ հարկավոր է է՛լ ավելի կատարելագործել կոմերիտմիության քաղաքական ուսուցման և տնտեսագիտական կրթության համակարգը, երիտասարդության մեջ հաստատակամորեն ձևավորել մարքս-լենինյան աշխարհայացք, դասակարգային ինքնագիտակցություն, անհաշտ վերաբերմունք բուրժուական գաղափարախոսության նկատմամբ։ Դրա համար պետք է այդ համակարգում ընդգրկել փորձված ու հմուտ կոմունիստ պրոպագանդիստների, բարձրացնել կուսակցական ղեկավարման մակարդակը։

Քաղաքական և տնտեսագիտական ուսուցման, դրա կուսակցական ղեկավարման գործում կենտրոնական տեղ է գրավում պրոպագանդիստական կադրերի հետ կատարվող աշխատանքը։ Նրանց ճիշտ ընտրությամբ, տեսական և մեթոդական պատրաստականության անընդհատ բարձրացմամբ են ամենից առաջ պայմանավորված կուսակցական պրոպագանդայի արդյունավետությունն ու որակը, քանի որ, ինչպես նշել է Վ. Ի. Լենինը, պարապմունքների գաղափարական-քաղաքական ուղղությունը որոշվում է ամբողջովին և բացառապես դասախոսների (տվյալ դեպքում՝ պրոպագանդիստների) կազմով։ Իսկ այդ կազմը գաղափարախոսական ակտիվիստների ամենաստվար ջոկատն է՝ մոտ 40 հազար մարդ։ Նրանց հետ կարգաբերված աշխատանք կատարելը, ստեղծագործական արդյունավետ գործունեության պայմաններ ստեղծելը, ժամանակին անհրաժեշտ ինֆորմացիայով ապահովելը մշտապես պետք է լինի կուսակցության քաղկոմների ու շրջկոմների, սկզբնական կուսկազմակերպությունների ուշադրության կենտրոնում։ Պրոպագանդիստական կադրերի պատրաստման և վերապատրաստման կարևորագույն օջախը ՀԿԿ Կենտկոմի մարքսիզմ-լենինիզմի համալսարանն է՝ Լենինականի և Կիրովականի մասնաճյուղերով, ուր տարեկան սովորում է մոտ 3.500 ունկնդիր։ Համալսարանում քիչ աշխատանք չի կատարվել ուսման պրոցեսի բարելավման նպատակով։ Այդուհանդերձ, մարքսիզմ-լենինիզմի համալսարանի, որպես քաղաքական բարձրագույն օջախի, հնարավորությունները տակավին բավարար չեն օգտագործում կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները։

Պրոպագանդիստների տեսական ու մեթոդական պատրաստականության բարձրացմանն են կոչված հանրապետական տարբերակված մեկշաբաթյա դասընթացները։ Անցած ուսումնական տարում դրանցում ընդգրկվեցին 2.500-ից ավելի պրոպագանդիստներ, կոնսուլտանտներ։ Դասընթացներում պրոպագանդիստների առջև հանդես են գալիս կուսակցական, սովետական, տնտեսական ղեկավար աշխատողներ, գիտնականներ, մշակույթի գործիչներ, պատերազմի ու աշխատանքի վետերաններ։ Լսվել և ընդհանրացվել է կուտակված առաջավոր փորձը։ Կուսակցական լուսավորության համակարգում աթեիստական պրոպագանդան ուժեղացնելու նպատակով այս տարի կկազմակերպվեն աթեիստ պրոպագանդիստների երկշաբաթյա դասընթացներ։ Կուսակցության քաղկոմները և շրջկոմները պետք է ճիշտ ընտրություն կատարեն և այդ դասընթացները գործուղեն այն ակտիվիստներին, որոնք ունեն հակումներ ու կարողություն՝ կատարելու աթեիստ պրոպագանդիստի բարդ ու պատասխանատու պարտականությունը, այդ նպատակով օգտագործելով նաև մարքսիզմ-լենինիզմի համալսարանի աթեիզմի բաժնի վերջին 15 տարվա շրջանավարտներին։

Պրոպագանդիստների հետ տարվող աշխատանքի առավել արդյունավետ ձևը կուսակցության քաղկոմների ու շրջկոմների մշտական գործող սեմինարներն են։ Քիչ բան չի արվել այդ գործի բարելավման համար։ Սակայն դեռևս շատ անելիքներ կան մշտական գործող սեմինարները կատարելագործելու, դրանք պարապմունքների տեսական ու մեթոդական նախապատրաստմանը արդյունավետորեն ծառայեցնելու առումով։

Պրոպագանդիստական և ընդհանրապես գաղափարախոսական կադրերի ճիշտ ընտրության, տեղաբաշխման, տեսական ու մեթոդական պատրաստականության բարձրացման լավագույն միջոց է նրանց հասարակական-քաղաքական ատեստավորումը։ Օրերս ՀԿԿ Կենտկոմը որոշում ընդունեց պրոպագանդիստներին, քաղինֆորմատորներին և ագիտատորներին 1984—1985 թթ. ընթացքում ատեստավորելու վերաբերյալ։ Այդ նպատակով մշակվել և տեղերն են ուղարկվել մեթոդական մշակումներ։ Կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները, սկզբնական կազմակերպությունները, քննության առնելով այդ հարցը, պետք է կոնկրետ, գործնական միջոցներ ձեռնարկեն, որպեսզի խնամքով նախապատրաստվի և անցկացվի այդ կարևոր միջոցառումը, արդյունավետորեն նպաստի պրոպագանդիստական կադրերի որակական կազմի վճռական բարելավմանը, նրանց պրոֆեսիոնալ վարպետության հետագա բարձրացմանը։ Հատուկ ուշադրություն պետք է նվիրել հաստիքային և առարկայական կոնսուլտանտների ուժերի խելամիտ օգտագործմանը։ Նրանց միջոցով պետք է գործնական օգնություն ցույց տալ պրոպագանդիստներին։

ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումից հետո քաղկոմներն ու շրջկոմները որոշ աշխատանք են կատարել քաղլուսկաբինետների գործունեությունը բարելավելու համար։ Դրանք հարստացել են տեխնիկական միջոցներով և մեթոդական նյութերով։ Առանձին քաղլուսկաբինետներ հաջողությամբ են կատարում գաղափարախոսական կադրերի պրոֆեսիոնալ վարպետությունը բարձրացնելու, նրանց անհրաժեշտ մեթոդական նյութերով ապահովելու, առաջավոր փորձն ուսումնասիրելու և տարածելու, քաղաքի և շրջանի մասշտաբով գաղափարախոսական աշխատանքի կենտրոնի իրենց բարձր ու պատասխանատու պարտականությունը։ Կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները պարտավոր են ուժեղացնել օգնությունը քաղլուսկաբինետների նկատմամբ, դրանք ամրապնդել լավագույն կադրերով, դարձնել գաղափարախոսական աշխատանքի ժամանակակից գիտամեթոդական կենտրոններ։ Այդ գործում մեծ անելիքներ ունի նաև ՀԿԿ Կենտկոմի քաղլուստունը, որը, նպատակասլաց օգտագործելով մեթոդխորհուրդների անդամների ուժերը, պետք է քաղաքական կրթության պարապմունքները սիստեմատիկաբար ապահովի մեթոդական նյութերով, ուսուցման ակտիվ ձևերի ու մեթոդների կիրառման հանձնարարականներով, միաժամանակ չթուլացնի կատարված աշխատանքի նկատմամբ վերահսկողությունը, շարունակի ուսումնասիրել, ընդհանրացնել և տարածել առաջավոր փորձը։

Կոմունիստների, ողջ աշխատավորության մարքս-լենինյան կրթության կարգաբերված համակարգերը բազմաբովանդակ են։ Ուստի, գործնական կարևոր խնդիր է դրանք գլխավորող օղակների՝ կուսակցական կոմիտեների, գաղափարախոսական հիմնարկությունների, տնտեսական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների, մինիստրությունների և գերատեսչությունների գործունեության կոորդինացումը ուսուցման բոլոր ձևերի արդյունավետ աշխատանքն ապահովելու համար։ Առանձնապես պետք է բարձրացնել գաղափարախոսական հանձնաժողովների, մեթոդական ու տնտեսագիտական կրթության խորհուրդների դերը։

Հարկավոր է կուսակցական հաշվետու-ընտրական ժողովներում, տնտեսագիտական կրթության շրջանային, մինիստրությունների և գերատեսչությունների խորհուրդներում հանգամանորեն վերլուծել ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումների կենսագործման նպատակով կատարված աշխատանքը, բացահայտել չլուծված խնդիրները, ուղիներ նշել գաղափարախոսական աշխատանքը այս կարևոր բնագավառում նոր, ավելի բարձր մակարդակի հասցնելու համար։

Պետք է ուսումնական տարվա սկզբից քաղաքական ուսուցումը և տնտե-

սագիտական կրթությունն ամբողջապես նպատակամղել տասնմեկերորդ հընգամյակի պետական պլանների և սոցիալիստական պարտավորությունների անթերի կատարման համար աշխատավորության ուժերի մոբիլիզացմանը։ Հասնել այն բանին, որ ուսուցման բոլոր ձևերը ակտիվորեն նպաստեն մարդկանց գիտական աշխարհայացքի և կոմունիստական համոզմունքի ձևավորմանը, նրանց աշխատանքային ու հասարակական-քաղաքական ակտիվության բարձրացմանը։

ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան և հետագա պլենումների կողմից պրոպագանդիստական աշխատանքի կատարելագործման, դրա ոճի փոփոխման վերաբերյալ պահանջների անթերի կատարման համար անհրաժեշտ է առաջին հերթին բովանդակալից դարձնել քաղաքական լուսավորության ողջ ցանցի գործունեությունը։ Դրա համար նախ հարկավոր է հաղթահարել իներցիայի ուժը, որ երբեմն դրսևորվում է նաև այդ գործի կուսակցական ղեկավարման մեջ։ Անհրաժեշտ է պրոպագանդիստական աշխատանքը գնահատել ոչ միայն քանակական ցուցանիշներով՝ ցուցակների ճշտությամբ, պարապմունքների ժամանակին անցկացմամբ, այլև առաջին հերթին աշխատանքի բովանդակությամբ, դրա արդյունավետությամբ, մարդկանց գիտակցության, բարոյական կերպարի ու հասարակական ակտիվ կենսադիրքորոշման ձևավորման վրա ունեցած ազդեցությամբ, որ պետք է արտահայտվի նրանց արտադրական ու հասարակական գործունեության մեջ։

Նման խնդրի լուծման հիմնական ուղին կյանքի հետ պրոպագանդիստական աշխատանքի կապի ուժեղացումն է՝ օրվա հրատապ հարցերը մարքսիզմ-լենինիզմի դասականների աշխատությունների, կուսակցական փաստաթղթերի ուսումնասիրման հիման վրա տեսականորեն իմաստավորելու ուղիով։ Անհրաժեշտ է, որպեսզի յուրաքանչյուր պրոպագանդիստ լավ իմանա ոչ միայն իր առջև դրված խնդիրը, այլև այն, թե ինչ ձևեր ու մեթոդներ կիրառելով կարող է հասնել լավագույն արդյունքի։ Այսինքն, կատարելագործել մեթոդական օգնությունը։ Պրոպագանդիստի կողմից օբյեկտիվ իրավիճակի լավագույն իմացությունը, դասակարգային տեսանկյունից դրա գնահատումը, կոմունիստական բարոյական նորմերի գիտակցումն ու անշեղ կիրառումը կուսակցական պրոպագանդայի արդյունավետության բարձրացման, ինչպես նաև բուրժուական սոցիոլոգիայի կողմից կոմունիստական գաղափարների և սոցիալիստական իրականության նենգափոխումների և խեղաթյուրումների մերկացման անհրաժեշտ պայմանն են։

Պրոպագանդիստը արտադրամասում թե բրիգադում, կառույցում թե դաշտում, ամենուր խոսքով ու գործով պետք է նպաստի աշխատանքի նկատմամբ ստեղծագործական բարեխիղճ վերաբերմունքի, կոմունիստական բարոյական նորմերի խախտման ամեն կարգի երևույթների դեմ անհաշտ պայքարի ոգով մարդկանց դաստիարակությանը։ Կուսակցական ուսուցման, տնտեսագիտական կրթության ներգործությունն ու գործնական ուղղվածությունը, քաղաքական նպատակասլացությունը որոշվում է նաև դրա կուսակցական արդյունավետ ղեկավարմամբ, այդ գործի նկատմամբ այնպիսի վերահսկողության ապահովմամբ, որը կբացառի ձևականությունն ու շաբլոնը։

Հանրապետության կուսակցական կազմակերպությունների, պրոպագանդիստների, գաղափարախոսական ամեն մի աշխատողի և ակտիվիստի առաջնահերթ խնդիրն է՝ քաղաքական լուսավորության, տնտեսագիտական կրթության դպրոցների ու սեմինարների մոտ մեկ միլիոնի հասնող ունկնդիրների ուժերը նպատակամղել կուսակցության առաջադրած ծրագրերի անվերապահ կատարմանը, զարգացած սոցիալիզմի կատարելագործմանը, մեր մեծ հայրենիքի զարգացմանն ու հզորացմանը։



# ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԻՄԱՑՈՒԹՅԱՆ ԴԱՍԱԿԱՐԳԱՅԻՆ ԲՆՈՒՅԹՆ ՈՒ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

**Վ. ԹՈՒՄԱՆՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու,
դոցենտ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԿՅԱՆՔԻ ԳԻՏԱԿԱՆ ճանաչման հիմունքները մշակել են մարքսիզմի դասականները։ Պատմության մատերիալիստական ըմբռնումը՝ որպես գիտական հայացքների ու տեսությունների կուռ համակարգ, միաժամանակ դարձավ մարդկանց կենսագործունեության օրինաչափությունների ճանաչման միակ գիտական մեթոդաբանությունը։

Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը ցույց տվեցին, որ հասարակական կյանքում ոչինչ չի կատարվում առանց գիտակցված մտադրությունների, առանց ցանկալի նպատակների, որ մարդկանց կենսագործունեության ազդակները նրանց արմատական շահերի հիմքով պայմանավորված պահանջմունքներն են։ Ելնելով դրանից, նրանք հիմնավորեցին սոցիալական իմացության մեջ մարդկանց արմատական շահերի հաշվառման՝ մեթոդաբանական սկզբունքի հետևողական կիրառման անհրաժեշտությունը։

Սոցիալական իմացության մեջ միշտ ու բոլոր դեպքերում, փիլիսոփայական ու սոցիոլոգիական բոլոր ըմբռնումներում դրսևորվում է դասակարգային մոտեցում, այսինքն՝ հասարակական կյանքի երևույթներն ու պրոցեսները քննարկվում են դասակարգային դիրքերից, հաշվի են առնվում համապատասխան դասակարգերի ու զանազան սոցիալական խմբերի արմատական շահերն ու նպատակները։

Սոցիալական իմացության մարքս-լենինյան մեթոդաբանությունը և բուրժուական մեթոդաբանությունն արմատապես հակադիր են միմյանց։ Դրանք ելնում են տրամագծորեն հակադիր սոցիալ-դասակարգային շահերից և հակադիր աշխարհայացքային դիրքերից։ Այդ ելակետային գործոնների վճռական նշանակությունն անմիջականորեն արտահայտվում է ինչպես սոցիալական իմացության, այնպես էլ սոցիալական քաղաքականության կողմնորոշման ու կենսագործման մեջ։

Մարքսիզմ-լենինիզմը չի թաքցնում հասարակական կյանքի իմացության մեջ դասակարգային դիրքավորման փաստը և, բացի դրանից, գտնում է, որ այդ հիմքով ձեռք բերված ճշմարիտ գիտելիքները համապատասխանում են աշխատավոր մասսաների շահերին։

Բուրժուական սոցիոլոգիան, ընդհակառակը, որպես կանոն, թաքցնում է սոցիալական երևույթների իր հետազոտման դասակարգային բնույթը։ Սակայն դա ամենևին չի փոխում իրերի դրությունը։ Այդ հետազոտությունները միշտ էլ ենթարկվում են բուրժուազիայի դասակարգային շահերին։ «Վարձու ստրկության հասարակության մեջ,— նշում է Վ. Ի. Լենինը,— անաչառ գի-

շահերի խստորեն հաշվառման պահանջը, և դրան համապատասխան որոշվում են սոցիալական իմացության հարցերը, ապա կուսակցական սկզբունքի կիրառման ժամանակ, դարձյալ սոցիալ-դասակարգային շահերի հաշվառման հիման վրա, առաջին պլան են մղվում այն արմատական պահանջները, որոնք բխում են սոցիալական իմացության բնագավառում մարդկանց քաղաքական ու փիլիսոփայական դիրքորոշումից։

Կուսակցականության սկզբունքը դասակարգային կողմակիրությունների քաղաքական հայացքների ու քաղաքական դիրքորոշման պահանջներին համապատասխան կիրառելիս են որոշվում սոցիալական հետազոտությունների քաղաքական միտումը և հնարավոր գիտելիքների քաղաքական բովանդակությունը։ Նշանակում է, տվյալ դեպքում կուսակցականության սկզբունքի բնույթը որոշվում է այն մարդկանց ու սոցիալական խմբերի սոցիալ-քաղաքական հայացքներով ու համոզմունքներով, որոնց շահերից ելնելով իրականացվում է իմացությունը։

Բուրժուական գաղափարախոսների փորձերը՝ ժխտելու քաղաքական հայացքներում սոցիալ-դասակարգային շահերի արտացոլման փաստը և սոցիալական իմացության մեջ այդ շահերի խստիվ հաշվառման անհրաժեշտությունը, զուրկ են բավարար հիմքից։ Նույնիսկ այդ փորձերը, որոնք այսպես թե այնպես ստանում են քաղաքական ու փիլիսոփայական հայացքների կերպարանք, միշտ էլ արտահայտում են որոշակի սոցիալ-դասակարգային շահեր։ Հասկանալի է, որ բուրժուական գաղափարախոսներին կարող են հավատալ միայն նրանք, ովքեր ոչ մի պատկերացում չունեն քաղաքականության մասին։ «Մարդիկ,— նշում է Վ. Ի. Լենինը,— միշտ եղել են ու միշտ կմնան քաղաքականության մեջ խաբեության ու ինքնախաբեության հիմար զոհեր, մինչև որ չսովորեն ամեն տեսակի բարոյական, կրոնական, քաղաքական, սոցիալական ֆրազների, հայտարարությունների, խոստումների հետևում որոնել այս կամ այն դասակարգի շահերը» (ԵԼԺ, հ. 23, էջ 54)։

Դասակարգային շահերը քաղաքական հայացքների էությունն ու գլխավոր բովանդակությունն են կազմում։ Առանց շահերի գիտակցման ու արտացոլման գաղափարները լոկ դատարկ ֆրազ են։ Դեռևս իրենց գործունեության վաղ շրջանում Մարքսն ու Էնգելսը նկատել են, որ «գաղափարը» միշտ էլ խայտառակում էր իրեն, հենց որ նա զատվում էր «շահից» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Սուրբ ընտանիք, «Հայաստան» հրատ., 1967 թ., էջ 131)։ Նման մոտեցումը յուրովի դրսևորվում է նաև սոցիալիստական շինարարության պրակտիկայում, որի տեսական հիմքը հասարակական կյանքի զարգացման օրինաչափությունների գիտական ըմբռնումն է։ Կուսակցության առաջադրած ժողովրդատնտեսական մեխանիզմի կատարելագործման կարևորագույն խնդիրներից է աշխատանքային կոլեկտիվի ու համապետական շահերի ճշգրիտ հաշվառումը, դրանց լավագույն զուգակցումը։ Դա երկրի էկոնոմիկայի աճի, նրա արդյունավետության բարձրացման, սովետական պետության տնտեսական ու պաշտպանական հզորության համակողմանի ամրապնդման կարևոր լծակ է։

ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումի նյութերում, մասնավորապես «Կուսակցության գաղափարախոսական, մասսայական-քաղաքական աշխատանքի հրատապ հարցերի» վերաբերյալ ընկեր Կ. Ու. Չեռնենկոյի զեկուցման մեջ շեշտված է սոցիալիստական հասարակության և արդի հասարակական զարգացման հիմնական միտումների ու օրինաչափությունների ճանաչման, կյանքի առաջադրած տեսական ու գործնական նշանակություն ունեցող պրոբլեմների լուծման մեջ մարքս-լենինյան մեթոդաբանության և հատկապես դասակարգային, կուսակցական մոտեցման սկզբունքը։

Բուրժուական գաղափարախոսները, ճգնելով սոցիալական իմացության մեջ անաչառ ու օբյեկտիվ երևալ, ամեն կերպ ձգտում են ժխտել սոցիալական իմացության կապի անհրաժեշտությունը ոչ միայն քաղաքական հայացքների, այլև բուն քաղաքականության հետ։ Օրինակ, ամերիկյան սոցիոլոգ Ֆ. Հաուզերը համաշխարհային սոցիոլոգիական V կոնգրեսում փորձում էր հիմնավորել այն թյուր դրույթը, որ սոցիոլոգիան, իբր, ոչ թե պետք է սերտա-



ճի քաղաքականության հետ, այլ քաշվի մի կողմ և հանդես գա չեզոք խորհրդատուի դերում (տե՛ս Вопросы философии, 1962, № 11, стр. 21)։

Սոցիալական իմացության օրգանական կապը քաղաքական հայացքների ու քաղաքականության հետ պայմանավորված է ոչ թե մարդկանց սուբյեկտիվ ցանկություններով, չնայած իմացաբանության մեջ այն հանդես է գալիս որպես սուբյեկտիվ բնույթի գործոն, այլ սոցիալական իմացության առանձնահատուկ բնույթով, որի քաղաքական կողմնորոշումը, յուրաքանչյուրի համար առանձին վերցրած, ունի օբյեկտիվ բնույթ, քանի որ չի բխում առանձին մարդկանց ցանկություններից, կամքից ու մտադրություններից։

Քաղաքականության հետ սոցիալական իմացության այդ անհրաժեշտ կապի ժխտումը բուրժուական մտածողների կողմից փաստորեն հետապնդում է կյանքի իմացության մեթոդաբանության, սոցիալական քաղաքականության, սոցիալական գիտելիքների կուսակցականության և սոցիալական իրականության ռեալ հարաբերակցությունն աղավաղելու նպատակ։

«Կուսակցականությունը,— նշում է Վ. Ի. Լենինը,— սոցիալիստական գաղափար է» (ԵԼԺ, հ. 12, էջ 165)։ Մարքս-լենինյան մեթոդաբանությունը, լիովին ներդաշնակ լինելով աշխատավոր մասսաների արմատական շահերն արտահայտող քաղաքականությանը, ուղղված է հասարակական կյանքի գիտական իմացությանը, այնպիսի սոցիալական գիտելիքների ձեռքբերմանը, որոնք, սոցիալական իրականության ճշմարիտ արտացոլումը լինելով, իրենց ամբողջության մեջ տալիս են կյանքի գիտական պատկերը։ Դրա շնորհիվ կուսակցականությունն իր քաղաքական միտումով ու դասակարգային բովանդակությամբ համապատասխանում է ինչպես աշխատավոր մասսաների սոցիալ-քաղաքական շահերին ու նպատակներին, այնպես էլ՝ հասարակական զարգացման օբյեկտիվ միտումներին ու օրինաչափություններին։

Կուսակցականության և օբյեկտիվության դիալեկտիկական միասնությունը միշտ էլ անմիջականորեն արտահայտվել է հասարակական կյանքի գիտական ճանաչման և այդ հիման վրա հասարակության գիտական կառավարման նպատակով ՍՄԿԿ քաղաքականության մեջ։ ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումի որոշման մեջ դարձյալ հիշատակվեց այն ճշմարտությունը, որ երկրում գաղափարաքաղաքական աշխատանքը «պետք է հագեցված լինի այսօրվա կյանքի իրողությունների հետ սերտորեն կապված և հետագա առաջընթացի ուղին նշող խոր գաղափարներով» (ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումի նյութերը, էջ 79)։

Սոցիալական գիտելիքների կուսակցականության և օբյեկտիվության միասնության հնարավորությունը հաջողությամբ կենսագործվում է կյանքի երևույթների հավաստի իմացության և սոցիալիստական շինարարության տեսության ու պրակտիկայի օրգանական կապի շնորհիվ։ Այդպիսի միասնությունը հնարավոր չէ բուրժուազիայի գաղափարախոսության ու քաղաքականության մեջ, քանի որ բուրժուազիան չի ձգտում երևույթների հավաստի իմացության, իրականության գիտական ըմբռնումն անհարիր է նրա շահերին։

Բուրժուազիայի քաղաքական հայացքները թեև նույնպես արտացոլում են որոշակի սոցիալ-դասակարգային շահեր, ունեն որոշակի քաղաքական կողմնորոշում ու բովանդակություն, բայց չեն համապատասխանում հասարակական զարգացման օբյեկտիվ միտումներին ու օրինաչափություններին։ Այլ կերպ լինել չի էլ կարող, քանի որ պատմության իդեալիստական ըմբռնման և սոցիալական իմացության պրոցեսի մետաֆիզիկական մեկնաբանման պայմաններում չի կարող սոցիալական գիտելիքների կուսակցականության և օբյեկտիվության միասնություն լինել։ Ահա թե ինչու բուրժուական փիլիսոփաներն ու սոցիոլոգներն ամեն կերպ ձգտում են մերժել սոցիալական երևույթների իմացության մեջ դասակարգային և կուսակցական մոտեցման սկզբունքների կիրառման անհրաժեշտությունը։ Բայց դա ամենևին չի նշանակում, թե նրանք իրականում հրաժարվում են այդ սկզբունքներից։ «Անկուսակցականությունը,— նշում է Վ. Ի. Լենինը,— բուրժուական գաղափար է» (ԵԼԺ, հ. 12, էջ 165)։ Կյանքը ցույց է տալիս, որ բուրժուական գաղափարախոսները երբեք

չեն կարող յոլա գնալ առանց կուսակցականության սկզբունքի կիրառման, որը միշտ ու բոլոր դեպքերում հանդիսանում է հասարակական կյանքի իմացության մեթոդաբանության հիմնական բովանդակությունը։

Սոցիալական իմացության մեջ դասակարգային մոտեցման ու կուսակցականության սկզբունքների անհրաժեշտության մերժումը բուրժուական գաղափարախոսների կողմից դարձյալ պայմանավորված է նրանց իմացաբանական հոգսերով։ Բուրժուական գաղափարախոսները, ելնելով այն թյուր կարծիքից, թե սոցիալական իմացության «հարկադրական կապը» մարդկանց պրակտիկ շահերի ու քաղաքականության հետ իբր անհնարին է դարձնում հասարակական կյանքի ճշմարիտ իմացությունը, փորձում են ցույց տալ, որ սոցիալական իմացության հարցերին իրենց մոտեցումն իբր լիովին անաչառ ու օբյեկտիվ է, բոլորովին չի ենթարկվում մարդկանց նեղ դասակարգային շահերին ու առօրյա պրակտիկ հոգսերին, և իբր իրենց այդ դիրքավորման շնորհիվ իսկ հնարավորություն են ունենում լուծելու հավաստի գիտելիքների ձեռքբերման խնդիրը։

Վկայակոչելով այն փաստը, որ մարդիկ հասարակական երևույթների իմացության պրոցեսում դրսևորում են որոշակի շահագրգռվածություն և յուրաքանչյուրը հանդես է գալիս որպես իմացության առանձին, մեկուսացված սուբյեկտ՝ իր անհատական շահերով ու հոգսերով, բուրժուական գաղափարախոսները փորձում են ժխտել իմացության մեջ միանշանակ օբյեկտիվ բովանդակության ստացման հնարավորությունը։

Մարքսիզմի դասականները ամենևին չեն ժխտել, որ մարդիկ իրենց գործունեության պրոցեսում հետապնդում են տարբեր ճանաչողական նպատակներ։ Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը Գեrմանական գաղափարախոսության մեջ գրել են. «Յուրաքանչյուր մարդու համար այն «նշանակալին», ինչին որ նա ձգտում է հասնել մտածողության մեջ, լինելու է տարբեր՝ պայմանավորված նրա կրթության աստիճանով, կենսական հարաբերություններով և տվյալ պահին նրա նպատակով» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 3, стр. 281)։

Սակայն Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը հեռու էին այն մտքից, թե մարդկանց անհատական առանձնահատկությունների պատճառով իբր անհնար է դառնում հասարակական կյանքի վերաբերյալ ունենալ այնպիսի հայացքներ, որոնց բովանդակությունը համապատասխանելիս լինի օբյեկտիվ իրականությանը։

Հասարակական կյանքի երևույթների ճանաչման հետ կապված հարցեր քննարկելիս բուրժուական գաղափարախոսներն ամեն կերպ թաքցնում են իրենց դասակարգային-կուսակցական մոտեցման փաստը և միաժամանակ ձգտում ցույց տալ այդ սկզբունքների կիրառման «վնասակարությունը»։ Անգլիացի փիլիսոփա Կ. Պոպպերը ձևականորեն չի ժխտում սոցիալական իմացության մեջ կուսակցական մոտեցման սկզբունքի դերը, բայց այն համարում է «մանրուք»։ Արևմտագերմանացի փիլիսոփա Ի. Բոհենսկին իմացության մեջ «անկուսակցական մոտեցումը» դիտում է որպես իմացաբանության արժանիք։

Արևմտագերմանական հայտնի սոցիոլոգ, «նեոմարքսիզմի» ներկայացուցիչ Յու. Հաբերմասը փորձում է գաղափարախոսության դասակարգային բնույթը ժխտել այն պատճառաբանությամբ, թե արդի ԳՏՀ-ի պայմաններում գաղափարախոսությունն իբր դրսևորվում է լոկ որպես գիտատեխնիկական և տեխնոկրատական գիտակցություն։ Այդ թյուր կարծիքը դարձնելով մեթոդաբանական ելակետային սկզբունք, նա փորձում է հիմնավորել, որ իբր «կարգավորվող կապիտալիզմի» հասարակության մեջ ԳՏՀ-ի և «տեխնոկրատական գիտակցության» առկայությամբ հազիվ թե հնարավոր լինի քաղաքականապես կազմակերպված դասակարգային պայքար, և իբր հենց այդ պատճառով վերացել են «հեղափոխությունների կենսագործման համար անհրաժեշտ դասական պայմանները» (տե՛ս Классы и массы. Реферативный сборник. М., 1978, стр. 183—185)։

Վ. Ի. Լենինը դիպուկ է նկատել, որ «բուրժուազիան չի կարող անկուսակցականության չձգտել» (ԵԼԺ, հ. 12, էջ 164)։ Բայց դա լոկ ձևականորեն,



որի նպատակը նրանց իրական կուսակցական դիրքավորման քողարկումն է, սոցիալական իմացության հարցերին «օբյեկտիվ մոտեցման» և գիտելիքների «անաչառ արժեքավորման» պատրանքի ստեղծումը։ «Անկուսակցականությունը,— այնուհետև նշել է Վ. Ի. Լենինը,— բուրժուական հասարակության մեջ լոկ կուշտերի կուսակցությանը, իշխողների կուսակցությանը, շահագործողների կուսակցությանը պատկանելու կեղծավոր, քողարկված պասսիվ արտահայտություն է» (Նույն տեղը, էջ 165)։

Քաղաքական բովանդակության իմաստով կուսակցականության սկզբունքը վերաբերում է սոցիալական իմացության քաղաքական կողմնորոշմանը, որոշակի քաղաքական համոզմունքների և դասակարգային կազմակերպությունների քաղաքական դիրքավորման պահանջներից ելնելով՝ երևույթների ճանաչմանն ու մեկնաբանմանը։ Սակայն երբ սոցիալական իմացությունը դիտում ենք որպես աշխարհայացքային երևույթ, նրա կուսակցականությունը ձեռք է բերում նոր որակ, ստանում փիլիսոփայական կերպարանք։ Հասարակական կյանքին վերաբերող փիլիսոփայական հայացքներում ավելի խոր ու ընդհանրացված ձևով են արտացոլվում դասակարգային շահերն ու նպատակները։ Բացի դրանից, իմացության այդ իսկ մակարդակում են մշակվում հասարակական կյանքի ճանաչման հիմնական սկզբունքներն ու մեթոդները։ Փիլիսոփայական կուսակցականությունը բնորոշ է ոչ միայն սոցիալական իմացությանը, այլև աշխարհի ճանաչմանն ընդհանրապես։

Մարքսն ու Էնգելսը, ստեղծելով միակ գիտական փիլիսոփայությունը, աչալուրջ հետևում էին իմացաբանության մեջ փիլիսոփայական կուսակցականության սկզբունքի անշեղ կիրառմանը։ Փիլիսոփայական ու սոցիոլոգիական ըմբռնումների տեսություններն ու հայացքները քննարկելիս նրանք միշտ էլ ելնում էին փիլիսոփայության մեջ կուսակցությունների՝ մատերիալիզմի ու իդեալիզմի խստիվ տարբերակման ռեալ չափանիշներից։ «Մարքսն ու Էնգելսը,— նշել է Վ. Ի. Լենինը, —սկզբից մինչև վերջ կուսակցական էին փիլիսոփայության մեջ, կարողանում էին հայտնաբերել շեղումները մատերիալիզմից և զիջողությունն իդեալիզմին ու ֆիդեիզմին բոլոր և ամեն տեսակ «նորագույն» ուղղությունների մեջ» (ԵԼԺ, հ. 18, էջ 446)։

Աշխարհի ճանաչման մեջ կուսակցականության սկզբունքի հետևողական կիրառման հիանալի օրինակ են Մարքսի, Էնգելսի, Լենինի աշխատությունները. նրանց ողջ գիտական ու պրակտիկ գործունեությունը։ Նրանք անդադրում ու հետևողականորեն կուսակցականության սկզբունքը կիրառում էին աշխարհի ճանաչման հարցում, ցույց տալիս, որ դիալեկտիկական մատերիալիզմի իմացաբանությունը հետևողական կուսակցական ու միաժամանակ միակ գիտական իմացաբանությունն է։

Փիլիսոփայության կուսակցականության ժխտումը, պնդումն այն մասին, որ իբր արդ՛ն հաղթահարված է փիլիսոփայության կուսակցականությունը և բացված է անկուսակցական փիլիսոփայության ճանապարհը և այլն, դարձել է մատերիալիստական փիլիսոփայության դեմ իդեալիստական փիլիսոփայության պայքարի հիմնական ուղղություններից մեկը։

Վ. Ի. Լենինը ժամանակին բացահայտել է այդպիսի պնդումների իրական իմաստը և ցույց տվել, որ դասակարգային հասարակության մեջ չկա ու չի կարող լինել վերդասակարգային, անկուսակցական փիլիսոփայություն։ Էմպիրիոկրիտիցիզմի ներկայացուցիչները առանձնահատուկ ջանասիրությամբ ձգտում էին համոզել, որ իրենց իբր հաջողվել է հաղթահարել երկկուսակցական փիլիսոփայության նեղ շրջանակը և գտնել նոր, երրորդ ուղի։ Լենինը ցույց տվեց, որ էմպիրիոկրիտիցիզմն ամենահետադիմական փիլիսոփայությունն է իդեալիզմի մեջ, որն անմիջականորեն ուղղված էր միակ գիտական փիլիսոփայության՝ դիալեկտիկական մատերիալիզմի դեմ։ Լենինը բացահայտեց էմպիրիոկրիտիցիզմի իմացաբանության իդեալիստական բնույթը։ «Էմպիրիոկրիտիցիզմի իմացաբանական սխոլաստիկայի հետևում,— նշել է նա,— չի կարելի չտեսնել կուսակցությունների պայքարը փիլիսոփայության մեջ, մի պայքար, որ վերջին հաշվով արտահայտում է ժամանակակից հասարակու-

թյան թշնամական դասակարգերի տենդենցներն ու գաղափարախոսությունը։ Նորագույն փիլիսոփայությունը նույնպես կուսակցական է, ինչպես և երկու հազար տարի սրանից առաջ» (նույն տեղը, էջ 471)։

Բուրժուական փիլիսոփաները, անկասկած, գիտեն, թե ինչպես ավարտվեց դիալեկտիկական մատերիալիզմի և էմպիրիոկրիտիցիզմի փիլիսոփայական պայքարը, բայց հակառակ պատմության դասերին, դեռևս քիչ չեն փիլիսոփայության կուսակցականության սկզբունքի այնպիսի վայ-քննադատները, որոնք շարունակում են պնդել, որ մատերիալիզմն ու իդեալիզմն իբր արդեն կորցրել են իրենց երբեմնի կուսակցական բովանդակությունը, դադարել են փիլիսոփայական մտածողության հակադիր միտումները լինելուց։ Լենինը «փիլիսոփայության այս երկու արմատական ուղղություններից դուրս ցատկելու փորձերը» համարում էր «հաշտվողական շառլատանություն» (նույն տեղը, էջ 448)։

Փիլիսոփայական կուսակցականությունը՝ որպես մատերիալիզմի ու իդեալիզմի անհաշտ պայքարի գլխավոր դրդապատճառ, դրսևորվել է փիլիսոփայական մտածողության ողջ պատմության ընթացքում։ Տարբեր են եղել պայքարի կոնկրետ դրդապատճառներն ու ձևերը, տարբեր են եղել պայքարի մասշտաբները, տարբեր են եղել նաև փիլիսոփայական-աշխարհայացքային հակամարտության պրոբլեմները, բայց պայքարը միշտ եղել է անհաշտ ու անզիջում։

Մարքսիզմի տեսական հաղթանակը, նրա հետագա զարգացումն ու տարածումը, կոմունիստական շինարարության կենդանի պրակտիկան, կոմունիստական շարժման փոխարկումը արդիականության ամենաազդեցիկ քաղաքական ուժի արմատապես փոխել են ուժերի հարաբերակցությունը հօգուտ սոցիալիզմի ու սոցիալական պրոգրեսի։

ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումում ուշադրություն հրավիրվեց այն փաստի վրա, որ արդի պատմական ժամանակաշրջանը նշանավորված է բևեռայնորեն հակադիր երկու աշխարհայացքների, երկու քաղաքական կուրսերի՝ սոցիալիզմի ու իմպերիալիզմի, այնպիսի հակամարտությամբ, որն իր ինտենսիվությամբ և սրությամբ աննախադեպ է ամբողջ հետպատերազմյան ժամանակաշրջանում։ Պայքար է գնում մոլորակի միլիարդավոր մարդկանց մտքերի ու սրտերի համար։

Գիտամատերիալիստական աշխարհայացքի դիրքերից բուրժուական գաղափարախոսության և ընդհանրապես իմպերիալիստական հետադիմության դեմ հետևողական ու անհաշտ պայքարը եղել ու մնում է մեր օրերի կենսական խնդիրը։

Բուրժուական աշխարհայացքի հիմնավոր քննադատությունը, գիտական կուսակցականության սկզբունքի հետևողական անցկացումը անմիջականորեն պայմանավորված են հասարակական կյանքի ճշմարիտ ըմբռնմամբ։ ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումում ընկեր Կ. Ու. Չեռնենկոն շեշտեց սոցիալական իմացության մեջ գիտական աշխարհայացքի ու գիտական մեթոդաբանության խստիվ պահպանման անհրաժեշտությունը։ «Աշխարհայացքային պարզորոշությունը, ...մտքի մեթոդաբանական կարգապահությունը,— նշվեց զեկուցման մեջ,— հասարակական գիտությունների հաջող զարգացման պարտադիր պայման են» (ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի նյութերը, էջ 40)։

Մարքս-լենինյան ուսմունքը բուրժուական գաղափարախոսության դեմ պայքարում մի անգամ չէ, որ տեսականորեն ապացուցել է, իսկ դասակարգային պայքարի պատմությունը, սոցիալիստական հեղափոխությունների պրակտիկան, հասարակական կյանքի ողջ դիալեկտիկան հաստատել են իդեալիստական փիլիսոփայական ու սոցիոլոգիական ըմբռնումների սնանկությունը։ Փիլիսոփայական հակամարտության մեջ մատերիալիզմի հաղթարշավը գիտական մտքի մեծագույն նվաճումն է, փիլիսոփայական կուսակցականության սկզբունքի հետևողական կիրառման արգասիքը։

---

# ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ «ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ԲԱՐՈՅԱԿԱՆՈՒԹՅԱՆ» ՃԳՆԱԺԱՄԸ

**Վ. ՄԻՐԶՈՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԵՎ ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ գաղափարախոսությունների պայքարի արդի փուլի առանձնահատկությունները հանգամանորեն բացահայտված են ՍՄԿԿ-ի մի շարք փաստաթղթերում, հատկապես XXVI համագումարի և Կենտրոնական կոմիտեի 1983 թ. հունիսյան պլենումի նյութերում։ Երկու անհաշտելի աշխարհայացքների պայքարի կենտրոնն այժմ նկատելիորեն ուղղվում է սոցիալական պրոբլեմների ասպարեզը։ Ավելի հստակորեն առաջին պլան է մղվում հակամարտ հասարակարգերի՝ սոցիալիզմի և կապիտալիզմի, հնարավորությունների համեմատումը ոչ միայն գիտատեխնիկական, տնտեսական, ռազմական և այլ ոլորտներում, այլև բուն սոցիալական զարգացման բնագավառում։ Առանձնապես սուր են բախվում մարքսիստական և բուրժուական տեսակետները մարդու էության և բնույթի, անհատ—հասարակություն փոխհարաբերության տարբեր կողմերի, մարդու և մարդկության ապագայի, մարդկային աշխատանքի կենսական իմաստի և հասարակական նշանակության, աշխատանքային բարոյականության արժեքների, երիտասարդության աշխատանքային դաստիարակության և նմանօրինակ հարցերի մեկնաբանման կապակցությամբ։

70-ական թվականների սկզբից շատ բուրժուական փիլիսոփաներ, սոցիոլոգներ, տնտեսագետներ (Մ. Բոլ դը Բալ, Ն. Անդերսոն, Ա. Վուդ և այլոք), ինչպես նաև բազմաթիվ քաղաքական ու արհմիութենական գործիչներ արձանագրում են «աշխատանքի աշխարհի» պրոբլեմների նկատմամբ թե՛ տեսական և թե գործնական-կառավարչական հետաքրքրության շեշտակի մեծացում։ Շատ հեղինակներ (օրինակ, կանադացի սոցիոլոգ Ն. Անդերսոնը) պնդում են աշխատանքի նկատմամբ կապիտալիստական հասարակարգերի «նվիրվածության» մասին։ Սոցիոլոգները և մենեջմենտի տեսաբանները (Պ. Դրակեր, Ժ. Ֆրիդման, Պ. Դիկսոն և այլոք) առաջարկում են «աշխատանքի հարստացման», աշխատանքի հումանիզացման բազմազան ծրագրեր։ Ապագայի հասարակության մի շարք նկարագրերում (օրինակ, Դ. Բելի, Օ. Թոֆլերի, Վ. Ֆերկիսի և այլոց) հիմնավորվում է աշխատանքի վերածումը մարդու կենսական առաջնագույն պահանջմունքի, յուրաքանչյուրի համար ստեղծագործական, իմաստալից աշխատանքի հնարավորությունը և այլն։ Մամուլը և ինֆորմացիայի մյուս միջոցները ամեն կերպ ռեկլամում են բուրժուական «աշխատանքային բարոյականության» արժեքները, հատկապես սեփական աշխատանքով «ինքն իրեն ստեղծելու» պատգամը, կապիտալի և աշխատանքի շահերի համընկնման գաղափարը, «արտադրական դեմոկրատիան» և այլն։ Բուրժուական պրոպագանդիստական մեքենան հատկապես ջանում է հավատ սերմանել «ամերիկյան երազանքի», «ամերիկյան բացառիկության», «հավասար հնարավորությունների հասարակության», «համընդհանուր բարգավաճման» և նմանատիպ ըմբռնումների նկատմամբ։ Դրա հետ մեկտեղ, երիտասարդության վարք ու բարքում նկատվող բոլոր բացասական երևույթները,

հեդոնիստական տրամադրությունների վերելքը, «չկամությամբ աշխատանքը», աշխատանքային սաբոտաժի քողարկված ձևերը, «աշխատանքային ալերգիան», էնտուզիազմի «էրոզիան», մի խոսքով, իրենց իսկ կողմից արձանագրվող աշխատանքային բարոյականության ճգնաժամը բուրժուական գաղափարախոսները փորձում են տարածել նաև սոցիալիստական երիտասարդության աշխատանքային վարքի վրա։ Ավելին, բուրժուական շատ գաղափարախոսներ փորձում են մարդու ծուլացման, պասսիվացման միտումը ոչ միայն զուտ տեսականորեն վերագրել սոցիալիստական ապրելակերպին, այլև գործնականորեն հասնել այդ նպատակին, սոցիալիստական հասարակության երիտասարդության վզին փաթաթել սպառողական հոգեբանություն, բուրժուական ապրելակերպի ստանդարտներ, բուրժուական աշխարհայացք և, այդ եղանակով, նենգորեն խարխլել սոցիալիզմի հիմքերը։

Այսպիսով, աշխատանքի կենսական իմաստի, աշխատանքային բարոյականության, գիտատեխնիկական հեղափոխության հեռանկարներում աշխատանքի զարգացման միտումների բուրժուաջատագովական մեկնաբանումների մարքսիստական քննադատությունը ունի ոչ միայն տեսական-աշխարհայացքային, այլև գործնական նշանակություն, հատկապես ակտիվ, հարձակողական ներքին հակապրոպագանդայի ծավալման մասին կուսակցության Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումի հարցադրման լույսի ներքո։

Նախ, նկատենք, որ աշխատանքի ոլորտի պրոբլեմների նկատմամբ բուրժուական հասարակագիտության դրսևորած հետաքրքրության էվոլյուցիան արտացոլում է ոչ միայն զուտ գիտական, ճանաչողական պահանջմունքը, այլև այն օբյեկտիվ տնտեսական, տեխնիկաարտադրական, քաղաքական, սոցիալական պայմանների փոփոխությունը, որոնց առկայությամբ ընթանում է մարդու աշխատանքային կյանքը։ Այսպես, արդեն անցյալ դարի կեսերից բուրժուական սոցիոլոգիայի դասականները՝ Օ. Կոնտը, Է. Դյուրկհեյմը, Հ. Սպենսերը, Մ. Վեբերը և այլոք այս կամ այն կերպ անդրադարձել են աշխատանքային գործունեության բնագավառին՝ աշխատանքը դիտելով իբրև հասարակական օրգանիզմի օղակ, բյուրոկրատական կազմակերպության տարր և այլն։

Աշխատանքային գործունեությունը կոնկրետ հետազոտության առարկա դարձավ անցյալ դարի վերջից արտադրության ռացիոնալացման սկզբունքով՝ հանձին Ֆ. Թեյլորի, Հ. Ֆորդի, Ա. Ֆայոլի և նրանց հետևորդների բուռն գործունեության։ Իհարկե, այս փուլում դեռևս չի կարելի խոսել «աշխատանքի սոցիոլոգիայի» ձևավորման մասին, քանի որ այդ շարժումը, որը Ֆ. Թեյլորի կողմից կնքվեց իբրև աշխատանքի «գիտական» կազմակերպում, փաստորեն շրջանցում էր աշխատանքի սուբյեկտին, նրա հոգեկան աշխարհը, վերաբերմունքը դեպի տեխնիկա-կազմակերպչական նորամուծությունները, նրա փոխհարաբերությունները աշխատակիցների հետ և այլն։ Այնուամենայնիվ, չնայած նմանօրինակ անսքող տեխնոկրատական մտածելակերպին, Թեյլորի, Ֆորդի և այլոց գրքերում նկատվում է նաև որոշակի գաղափարախոսական հիմնավորում. Թեյլորը պնդում է բանվորների և ձեռնարկատերերի միջև «սրտագին» համագործակցության անհրաժեշտությունը, Ֆորդ-կապիտալիստն արժեքավորում է աշխատողի և աշխատանքային բարոյականության նորմերը։

Մեր դարի 20-ական թվականները նշանավորվեցին «արդյունաբերությունում մարդկային հարաբերությունների» տեսության ձևավորմամբ, կապված Է. Մեյոյի, Ֆ. Ռոտլիսբերգերի, Վ. Դիկսոնի և այլոց հետազոտությունների հետ։ Սոցիոլոգները և հոգեբանները, մենեջմենտի գործիչները հայտնաբերեցին, որ, ի հեճուկս Թեյլորիզմի հիմնադրույթների, մարդու աշխատանքային վարքում տեխնիկատնտեսական գործոններն ամեն ինչ չէ, որ որոշում են, քանի որ աշխատող մարդը ամենևին էլ զուտ «տնտեսական էակ» չէ՝ առավելապես հակված դեպի սոսկ իր անձնական տնտեսական շահը և մարդկանց կոլեկտիվն էլ լոկ անհատապաշտների մի խառնակույտ չէ։ Հոտորնյան հայտնի գիտափորձերը (Չիկագոյի Հոտորն արվարձանի անունից, որտեղ «Վեստերն



էլեկտրիկ» ընկերության ձեռնարկություններից մեկի ադմինիստրացիան Հարվարդի համալսարանի ադմինիստրատիվ ֆակուլտետի գիտնականների հետ համատեղ 1924—1932 թթ. անցկացրին այդ փորձերը) բացահայտեցին, որ աշխատանքի ոլորտում մարդու համար հսկայական նշանակություն ունեն սոցիալ-հոգեբանական գործոնները՝ խմբում ընդգրկվելը, նրա կողմից գնահատված լինելը, խմբային կարծիքը և այլն, իսկ այդ աշխատանքային խումբն ինքը մի բարդ սոցիալական միկրոաշխարհ է։ «Մարդկային հարաբերությունների» դպրոցն այսօր էլ մնում է բուրժուական սոցիոլոգիայի և մենեջմենտի առավել ազդեցիկ դպրոցներից մեկը և սնուցում է լայնորեն տարածված նեոպատեռնալիզմի քաղաքականությունը (լատիներեն «պատեր»՝ հայր բառից), որը հատկապես բարեբեր ազգային հող է գտել Ճապոնիայում, ինչպես նաև «համատեղ խորհրդակցությունների», «արտադրական դեմոկրատիայի» ու նման տեսակի շատ ձեռնարկումներ։ Գաղափարական կողմն այստեղ առավել խորն է և քողարկված. դեռևս Մեյոն ճգնում էր ապացուցել, թե իբր մարդկանց փոխըմբռնման բարելավումով կարելի է անխտիր լուծել բոլոր սոցիալական պրոբլեմները։

Առհասարակ, գիտատեխնիկական հեղափոխությունը, արտադրության ավտոմատացումը և կիբեռնետացումը, ռոբոտատեխնիկայի հեռանկարները նոր խթան դարձան աշխատանքի ոլորտի թե՛ տեսական հետազոտությունների ընդլայնման և թե գործնական քայլերի աշխուժացման համար։ Ընդ որում, 50-ական թվականների և 60-ականների սկզբի գրականությունն ու մամուլը պահպանել են այն լավատեսությունը և վստահությունը, որոնցով համակված են եղել և՛ գիտական միտքը, և՛ կապիտալիստական հասարակության գործարար շրջանները՝ ավտոմատացման սոցիալական նշանակության հանդեպ։ Բուրժուական մտածելակերպին բնորոշ պատրանքները, կապված մոտալուտ տեխնոլոգիական դրախտի գալստյան հետ, պարզորոշ երևում են, օրինակ, «Եռակի հեղափոխություն» զեկույցում, որը 1964 թ. հրապարակ հանեցին ամերիկյան գիտնականները, հրապարակախոսները, քաղաքական և արհմիութենական գործիչները։ Կիբեռնետիկական հեղափոխությունը (որը, ըստ հեղինակների, «եռակի հեղափոխության» բաղկացուցիչ մասն է՝ սպառազինման ոլորտում և մարդու իրավունքների բնագավառում հեղափոխությունների հետ միասին) հնարավորություն կընձեռի, շեշտված է զեկույցում, բարեփոխելու հասարակության էկոնոմիկան և ողջ սոցիալական կառուցվածքը, իսկ մարդը կազատվի ծանր, միապաղաղ, անիմաստ աշխատանքի հարկադրանքից, այն բարդելով տեխնիկայի ուսերին։ Նույն կերպ, 1963 թ. անգլիական լեյբորիստների տարեկան կոնֆերանսի ընդունած «Աշխատանքը և գիտական հեղափոխությունը» հատուկ հայտարարությունը բովանդակում է գիտատեխնիկական հեղափոխության գայթակղիչ հետևանքների նկարագիրը՝ յուրաքանչյուրի համար երաշխավորված և հետաքրքիր աշխատանք, մեքենաների ենթարկում մարդկանց, զրկանքների և տանջանքների իսպառ վերացում և այլն։

Շատ շուտով, սակայն, 60-ական թվականների վերջից, երբ նորագույն տեխնիկայի հետ կապված հույսերը չարդարացան, երբ, ընդհակառակը, գիտատեխնիկական հեղափոխության կապիտալիստական ընթացքը դրսևորեց իր անմարդկային, կործանարար բնույթը, երբ կապիտալի աշխարհում շեշտակիորեն աճեց գործազուրկների՝ «ավելորդ» մարդկանց թիվը, ի դերև ելան նաև սոցիոլոգների և մենեջմենտի հույսերը՝ կապված «աշխատանքի վերաարժեքավորման», «աշխատավորի փրկության», կապիտալի և աշխատանքի շահերի համընկնման հնարավորության հետ։ Եվ 1972 թ. հրապարակված «Աշխատանքն Ամերիկայում» զեկույցը կրում է նախկին պատրանքների դաժան փլուզման, հուսալքության, անորոշության դրոշմը, բովանդակում է բազում ուղղակի վկայություններ «աշխատանքի աշխարհի» անլուծելի հակասությունների մասին։

Բուրժուական առավել հեռատես գործիչները սկսեցին զբաղվել «աշխատանքային բարոյականության» հարցերով։ Վերջինիս տակ գրականության մեջ հասկացվում է վաղ բուրժուազիային բնորոշ բարոյական արժեքների

այն համակարգը, ըստ որի անհատի հասարակական գնահատականը պայմանավորվում էր ամենից առաջ իր սեփական ջանքերով, աշխատանքով, ակտիվությամբ ձեռք բերած նյութական բարեկեցությամբ, հասարակական դիրքով և այլն։ Այս բարոյականության վերականգնմանն էր միտում, օրինակ, 1971 թ. Ռ. Նիքսոնի ուղերձը ամերիկյան ժողովրդի համազգային տոնի՝ «Աշխատանքի օրվա» կապակցությամբ։ Կյանքի որակի հիմքում, շեշտված է ուղերձում, ընկած է աշխատանքից բավարարվածությունը. պետք է ձգտել այն բանին, որ յուրաքանչյուր ոք ստանա այնպիսի աշխատանք, որը, ամեն ինչից բացի, ինքնին ցանկալի է, բավարարում է մարդու պահանջմունքը բուն աշխատանքի նկատմամբ։ «Ամերիկյան երազանքի» վերականգնման, յուրաքանչյուր մարդու համար սեփական նախաձեռնության, ինքնուրույնության, ակտիվության, էկոնոմիկայի աշխուժացման ավանդական լծակներին վերադառնալու, ամերիկյան էկոնոմիկայի հզորությունը ետ բերելու խոստումների դեմագոգիական օգտագործումը Ռ. Ռեյգանի կողմից 1980 թ. ընտրական պայքարում մեծապես գայթակղեց ամերիկյան շատ բանվորների, որոնք հիասթափված էին Ջ. Քարտերի «գոտիները ավելի պինդ ձգելու» հորդորներից, որոնք, համենայն դեպս, լավատեսության որևէ հիմք չէին տալիս։

Աշխատանքային պրոբլեմների նկատմամբ նման ուշադրությունը, իհարկե, ոչ մի ընդհանուր բան չունի «կապիտալիզմի ոգու» հետ, որին, իբր, ինչպես փորձում են հավատացնել բուրժուական գաղափարախոսները, բնութագրական է աշխատանքի և աշխատավոր մարդու մասին հոգածությունը։ Ընդհակառակը, ժամանակակից կապիտալիզմի պայմաններում մարդու աշխատանքային արժանիքները հայտնապես ստորադրված են նրա դրամապանակի «արժանիքներին»։ Եվ «աշխատանքային բարոյականության» վերականգնման մասին հարցադրումները իրականում վկայում են նախ այն, որ աշխատանքից բավարարվածությունը, իմաստալից աշխատանքը դարձել են համամարդկային պրոբլեմներ, ընդհանուր սոցիոլոգիական օրինաչափություն, և, երկրորդ, այն, որ ժամանակակից կապիտալիզմը բավականին ճկուն կերպով փորձում է հարմարվել մարդու պահանջմունքներին։

Ավտոմատացվող արտադրության պայմաններում շեշտակիորեն աճում են արտադրության «մարդկային գործոնի» դերն ու նշանակությունը, աշխատանքի անմիջական սուբյեկտի անձնային հատկանիշների ազդեցությունը ողջ արտադրության ներդաշնակ գործառնության և անխոչընդոտ զարգացման վրա։ Արդի կապիտալիզմը, մի կողմից, դեֆորմացնում է այն օբյեկտիվ տեխնոլոգիական պահանջները, որ արտադրությունն այսօր ներկայացնում է «մարդկային գործոնին» և որոնք ինքնին կարող են ստանալ աշխատանքի սուբյեկտի ֆիզիկական, մտավոր, հոգևոր զարգացման համար բարենպաստ ուղղություն։ Մյուս կողմից, կապիտալիզմը չի կարող հաշվի չառնել «մարդկային գործոնի» հարաճուն դերը։ Այստեղից էլ, մասնավոր շահի և մենեջմենտի ճիգերը՝ հարմարվել նոր պայմաններին, մանևրել, խուսափել սոցիալական պայթյունից։

Աճում է նաև բանվորների քաղաքական գիտակցականության մակարդակը։ Այսպես, հենց իրենց՝ արևմտյան սոցիոլոգների վկայությամբ, եթե 30-ական թվականների գործազուրկները՝ հարազատ մնալով բուրժուական անհատապաշտության հոգեբանությանը, ենթարկվելով «հավասար հնարավորությունների հասարակության» գաղափարներին, «ինքն իրեն ստեղծելու» քարոզին, հակված էին ամենից առաջ իրենք իրենց մեղադրելու աշխատանքից զրկվելու մեջ, ապա 80-ական թվականների գործազուրկներն առավելապես այն կարծիքին են, որ բուրժուական հասարակությունն ինքն է արհեստականորեն ստեղծում գործազրկություն՝ ինֆլյացիայի աճման տեմպերը զսպելու նպատակով։ «Ռեյգանի հակաինֆլյացիոն քաղաքականությունը,— շեշտում է ամերիկյան կոմունիստների «Դեյլի ուորլդ» թերթը սեպտեմբերի 6-ի՝ «Աշխատանքի օրվան» նվիրված համարում,— խարսխված է աշխատավորների իրավունքների և շահերի ոտնահարման սկզբունքի վրա։ Նրա հակաինֆլյացիոն քաղաքականության արդյունքը զանգվածային գործազրկությունն է»։

Նման պայմաններում ահա բուրժուական հասարակագիտությունը, դի-



մելով «աշխատանքի աշխարհին», փաստորեն պատասխանում է այն սոցիալական պատվերին, որ կապիտալիստական հասարակության իշխող դասակարգերը ներկայացնում են գաղափարախոսությանն ու գիտությանը։ Կարելի է ասել, որ բուրժուական սոցիոլոգիայի ներկայիս թե՛ մեթոդաբանական, թե՛ տեսական ճգնաժամը հետևանք է նրա սոցիալ-դասակարգային, գաղափարախոսական ֆունկցիայի ուժեղացման։ Կապիտալիզմի համընդհանուր ճգնաժամի խորացումը, իրական սոցիալիզմի հաջողությունները, բանվոր դասակարգի և ողջ աշխատավորության պայքարի թափը ստիպում են բուրժուական հասարակագիտությանն ավելի ու ավելի ջատագովական դիրք գրավել։ Կապիտալիստական հասարակարգը գիտության աջակցությանն է ապավինում՝ փորձելով լուծել ծանր սոցիալական պրոբլեմները, պարպել սոցիալական բողոքի պայթյունով հղի լիցքը, դիմակայել աշխատավոր մարդկանց պայքարին։ Վերջին հաշվով այդ սոցիալական պատվերի իրականացմանն են ուղղված (նույնիսկ անկախ կոնկրետ հեղինակի սուբյեկտիվ ցանկությունից) «աշխատանքի հումանիզացման», «աշխատանքի հարստացման», «արտադրական դեմոկրատիայի», «համատեղ պլանավորման» և արևմտյան մենեջմենտում ու սոցիոլոգիայում այսօր լայնորեն տարածված այլևայլ տեսություններն ու կազմակերպական միջոցառումները։ Ոչ մի դեպքում չթերագնահատելով այս ծրագրերի ներգործունությունը, ուստի և գաղափարական վտանգավորությունը (մանավանդ արդի պայմաններում, երբ ԳՏՀ-ի ձեռքբերումները ընդլայնել են մարդկանց հոգեբանության և աշխարհայացքի վրա ներազդելու, դրանք ձեռնածության ենթարկելու հնարավորությունները) և ոչ էլ նսեմացնելով մարդու աշխատանքային վարքի կառավարման բնագավառում արևմտյան մենեջմենտի կուտակած դրական, ընդունելի փորձը, մենք, այնուամենայնիվ, լրիվին հիմք ունենք պնդելու, որ սոսկ գիտությունն ու տեխնիկան անզոր են լուծելու սոցիալական պրոբլեմները։

Պատահական չէ, որ «աշխատանքային բարոյականության» ճգնաժամը հաղթահարելու բոլոր դեղատոմսերն անխուսափելիորեն տեխնոկրատական են։ Դրանց հեղինակներն այս կամ այն կերպ բացարձակացնում են գիտության, տեխնիկայի, գիտատեխնիկական գիտելիքի, մասնագետների դերը սոցիալական պրոբլեմների լուծման գործում՝ նսեմացնելով սոցիալ-քաղաքական գործոնների դերը։ Բուրժուական առաջատար սոցիոլոգների ապագայաբանական (ֆուտուրոլոգիական) ծրագրերում աշխատանքային բարոյականությունը վերականգնված է, աշխատանքի բնագավառը դարձել է պատվի գործ, ինքնադրսևորման ասպարեզ, առաջին կենսական պահանջմունք և այլն։ Սակայն ինչպե՞ս, ի՞նչ հանգամանքների բերումով։ Թեպետև նրանք սկզբունքորեն չեն շրջանցում սոցիալական գործոնները, օրինակ, պահանջում են նույնիսկ ձեռնարկատերերից՝ ենթարկվելու «Բարձրագույն մշակութային խորհրդին»՝ գիտնականներից, հասարակության առավել բանիմաց և հարգված անդամներից կազմված մարմնի հրահանգներին, արտադրությունը հիվանդագին սպառումից վերակողմնորոշել դեպի բանական, խելամիտ սպառումը և այլն։ Սակայն, վերլուծությունը ցույց է տալիս, որ բուրժուական սոցիոլոգները ի վերջո ապավինում են առավելապես գիտատեխնիկական զարգացմանը, սոսկ նոր տեխնիկական միջոցներին, նոր «տեխնոլորտին», որոնք էլ իբր ինքնաբերաբար լուծելու են բոլոր սոցիալական, բարոյական, մարդկային պրոբլեմները։

Մինչդեռ գիտության և տեխնիկայի առաջընթացը, ինչպես ապացուցել է Կ. Մարքսը XVIII դարի վերջի—XIX դարի սկզբի արդյունաբերական հեղափոխության օրինակով և ինչպես համոզիչ կերպով ցույց է տրված ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխության բազմաթիվ մարքսիստական ուսումնասիրություններում, էապես սոցիալական պրոցես է։ Անշուշտ, գիտատեխնիկական առաջընթացն ունի նաև ներքնածին օրինաչափություններ. մարքսիստները չեն ժխտում գիտության և տեխնիկայի զարգացման հարաբերական ինքնուրույնությունը, գիտատեխնիկական նվաճումների որոշակի անմիջական ազդեցությունը հասարակական կյանքի վրա։ Սակայն գիտատեխնիկական առաջընթացի նպատակները, գիտության և տեխնիկայի նվա-

ճումների կիրառությունը վերջին հաշվով որոշվում են սոցիալական գործոններով՝ արտադրամիջոցների նկատմամբ սեփականության ձևով, աշխատանքի սուբյեկտի սոցիալական դիրքով, հասարակական կյանքի սոցիալական կազմակերպման տեսակով։ Եվ, ինչպես ցույց է տալիս կյանքը, գիտատեխնիկական միջոցները ոչ միայն ինքնին անբավարար են աշխատանքի պրոբլեմները լուծելու համար, այլ նույնիսկ ավելին՝ գիտության և տեխնիկայի նվաճումների կապիտալիստական կիրառությունը կարող է շրջվել աշխատավորի դեմ, խաթարել նրա ֆիզիկական, հոգևոր, մտավոր զարգացումը, նսեմացնել նրան իբրև աշխատանքի սուբյեկտի, խորթացնել իր արարիչ, ստեղծարար գործունեությունից։

Ժամանակակից բուրժուական հումանիստները և բարոյախոսները, իրենց նախորդների նման առաջարկում են վերացական, անհասցե ծրագրեր, որոնք ոչ միայն ի վիճակի չեն վերականգնելու «աշխատանքային բարոյականության» արժեքները, այլև շեղում են աշխատավոր մարդկանց իրական՝ հեղափոխական պայքարի ուղուց դեպի գայթակղիչ, սակայն անպտուղ պատրանքները։

Իրական կյանքը հակասում է բուրժուական գաղափարախոսների պնդումներին։ Ի՞նչպես կարող է, օրինակ, «աշխատանքային բարոյականության» գովքը համակերպվել գործազրկության փաստի հետ։ Ի՞նչ պատասխան կարող է տալ «ինքն իրեն ստեղծելու» պատգամն այն միլիոնավոր մարդկանց, ովքեր, տոգորված «աշխատանքային բարոյականության», «ամերիկյան երազանքի», «հավասար հնարավորությունների հասարակության» և նման այլ գաղափարներով, փորձում են իրոք աշխատանքի միջոցով հասնել հասարակական գնահատման և ինքնահաստատման, սակայն զրկված են աշխատանքից՝ անգամ իբրև ապրուստի միջոցից։ Ի՞նչպես կարելի է աշխատանքային արժանապատվություն և պրոֆեսիոնալ հպարտություն քարոզել այն մարդուն, որը զրկված է առհասարակ աշխատանքի հնարավորությունից կամ որը, ունենալով և՛ կրթություն, և՛ մասնագիտություն, հարկադրված է շրջելու «պատրաստ եմ ցանկացած աշխատանքի» պլակատ-աղերսանքով։ Այսօր ավելի քան արդիական է հնչում Ֆ. Էնգելսի հստակ և սպանիչ հարցը. «Ո՞վ կարող է երաշխավորել բանվորին, որ աշխատանք ստանալու համար բավական է լոկ աշխատելու բարի ցանկություն ունենալ, որ ազնվությունը, ժրաջանությունը, խնայողությունը և այն բազմաթիվ առաքինությունները, որ իմաստուն բուրժուազիան նրան հանձնարարում է, իսկապես որ դեպի երջանկությունը տանող մի ճանապարհ է։ Ոչ ոք» (Ֆ. Էնգելս, Բանվոր դասակարգի դրությունը Անգլիայում, Ե., 1934, էջ 69)։ Այնուամենայնիվ, փաստորեն հենց այդ են ձգտում ներշնչել աշխատավոր մարդուն բուրժուական գաղափարախոսները, օգտագործելով գիտատեխնիկական հեղափոխության նվաճումները՝ գործի դնելով հասարակական գիտությունների ողջ զինանոցը, մամուլը և ինֆորմացիայի միջոցները։

Բուրժուազիայի հոգևոր արժեքները այլասերում են աշխատավոր մարդուն, սերմանում օգտապաշտական, եսամոլական բարոյականություն և սպառողական հոգեբանություն։ Որոշ բուրժուական հեղինակներ իրենք են մատնացույց անում այն կապը, որ գոյություն ունի ռեկլամի և մասսայական ինֆորմացիայի միջոցներով անհագուրդ սպառման պահանջմունքների ձևավորման և երիտասարդության շրջանում հեդոնիստական տրամադրությունների ուժեղացման միջև։ Կապիտալիզմի իրողությունն իսկ արգելակում է աշխատանքի ոլորտի վերածումը մարդու ինքնազարգացման ասպարեզի և դրանով նեղացնում, աղքատացնում մարդու պահանջմունքների համակարգը, աշխատանքը դառնում սոսկ ապրուստի միջոց։ Չէ որ կապիտալիստական արտադրահարաբերություններն իրենց իսկ բնույթով մարդկային աշխատուժը վերածում են ապրանքի, և սեփականությունից զրկված մարդը այլ հնարավորություն չունի գործադրելու իր ֆիզիկական և մտավոր ունակություններն իբրև աշխատանք, բացի այդ ունակությունները նախօրոք արտադրամիջոցների սեփականատիրոջը վաճառելուց։ Ուստի բուն կապիտալիզմն է մարդուն դարձնում փոխանակային հարաբերությունների և շուկայի գերին, ինքն է հող ս-



տեղծում «շուկայական բարոյականության», պրագմատիկական աշխարհայացքի ձևավորման համար, որոնց շրջանակներում մարդն ինքն իրեն և, առհասարակ, կենսական բոլոր երևույթները գնահատում է կապիտալիստական ապրանքափոխանակության, առուծախի տեսակետից։

Իրական աշխատանքային բարոյականությունը, աշխատավոր մարդու արդարացի պահանջները, նույնիսկ կապիտալիզմի շրջանակներում ձևականորեն նախատեսված իրավունքներն սկզբունքորեն անընդունելի են բուրժուազիայի համար։ Այդ է վկայում այս տարվա ընթացքում կապիտալի և աշխատանքի բախումներից թերևս ամենախոշորի՝ անգլիական ածխահատների պայքարը հանուն իրենց աշխատանքի և բուն իսկ գոյության պահպանման։ Մարտից ի վեր շարունակվող այդ պայքարը, որով աշխատավորները ցանկանում են խոչընդոտել կառավարության մտադրությունը՝ փակելու քսան հանք և փողոց նետելու ևս 20 հազար մարդու, գործադուլավորների տոկունությունը, նրանց հերոսական ջանքերն արժանացել են ոչ միայն Մեծ Բրիտանիայի, այլև ողջ աշխարհի աշխատավոր մարդկանց համակրանքին ու հավանությանը։ Սակայն հենց բուրժուական մամուլն ու ինֆորմացիայի մյուս միջոցներն են, որ ածխահատների դեմ ծավալել են վարկաբեկման և ահաբեկման անլուր կամպանիա։ Գործադուլավորներին մեղադրում են օգտապաշտության, նեղ շահամոլական ձգտումների, հայրենասիրության պակասի մեջ, վերագրում հազար ու մի մեղք, նրանց դեմ նետում ոստիկանությանը։ Առհասարակ, ինչպես վկայում են անգլիական արհմիութենական գործիչներ Ջ. Դրոմին և Գ. Թեյլորը, թեպետև 1945 թվականից Անգլիայում տեղի ունեցած բոլոր գործադուլներից լոկ կեսն է կապված եղել աշխատավարձի բարձրացման պահանջների հետ, սակայն, միևնույն է, բուրժուական պրոպագանդիստական մեքենան ճգնում է այն տպավորությունն ստեղծել, թե իբր աշխատավորների պայքարի գլխավոր պատճառը նրանց անկշտությունն է, ընչաքաղցությունը, ագահությունը։ Ընդհակառակը, գործադուլախափաններին մեծարում են համարյա ինչպես ազգային հերոսների։ Անգլիական կոմունիստների «Մորնինգ ստար» թերթը (8 հունիսի 1984 թ.) դիպուկ է նկատել «ոստիկանության կողմից գործադուլախափաններին ցույց տրվող մաֆիակերպ հովանավորությունը»։ Հունիսի սկզբին հատկապես ոստիկանության գազանությունները անցան ամեն չափ ու սահման, և չի կարելի չհամաձայնել նույն թերթի հունիսի 20-ի համարի եզրակացության հետ. «Վիճակն այնպիսին է, որ սոսկ ժամանակի հարց է դարձել այն, թե աշխատանքի իրավունքի համար պայքարող ածխահատը երբ է ոստիկանության կողմից խեղանդամվելու և դառնալու առհասարակ աշխատանքի անընդունակ և կամ նույնիսկ մահվան դուռը հասցվելու։ Եվ եթե հեռուստացույցի էկրանն այսօր ցույց է տալիս ոստիկանության կողմից ինքնավստահորեն և հաճույքով կատարվող այդ սանձազերծ դաժանությունը, ապա մի՞թե դա նաև կառավարության կողմից հրահանգավորված մի դաս չէ ողջ Բրիտանիայի ժողովրդի համար»։

Ինչ վերաբերում է ազգային շահերին, ապա շատ ու շատ գործադուլների, աշխատանքային կոնֆլիկտների պատմությունը վկայում է, որ աշխատավոր մարդկանց պայքարը շատ ավելի օգտակար է եղել համազգային շահերին, քան՝ վնասակար։ Սա իրավացի է նաև անգլիական ածխահատների գործադուլի դեպքում։ «Մորնինգ ստարը» մայիսի 1-ի իր առաջնորդողում համոզիչ կերպով հերքել է Մ. Թետչերի կառավարության շինծու հիմնավորումներն ածխարդյունաբերության անհեռանկարայնության, «խնայողության» անհրաժեշտության մասին և այլն, աներկբա կերպով եզրակացնելով. «Քարածուխը մեր ապագա բարգավաճման բուն հիմքն է։ Մինչդեռ պահպանողականները ցանկանում են ծվեն-ծվեն անել քարածխի արդյունաբերությունը»։ Հենց կառավարության համառության հետևանքով է, որ Անգլիայի տնտեսությունը սեպտեմբերի սկզբի դրությամբ պակաս էր ստացել արդեն 52 միլիոն տոննա քարածուխ, իսկ ընդհանուր վնասը կազմում էր ավելի քան երկու միլիարդ ֆունտ ստեռլինգ։ Ի՞նչ համազգային շահերի մասին կարող են խոսել պահպանողականները, երբ նրանք շաբաթական հինգ միլիոն ֆունտ ստեռլինգ են

ծախսում ածխահատների գործադուլի դեմ ոստիկանական գործողությունների վրա։ Այնպես որ, չնայած պետության և բուրժուական պրոպագանդիստական մեքենայի ճիգերին՝ վարկաբեկել ածխահատներին, նրանց դեմ տրամադրել հասարակական կարծիքը, մեկուսացնել աշխատավոր մարդկանց մյուս ջոկատներից, ջլատել բանվորական շարժումը, իրականում, ինչպես դիպուկ նկատել է «Կանադիեն տրիբյուն» թերթը (3 սեպտեմբերի 1984 թ., էջ 8), «ճիշտ հակառակն է տեղի ունենում, քանզի Անգլիայի ժողովուրդը համոզվում է, որ ածխահատները պայքարում են հանուն ավելի բարեկեցիկ կյանքի, զբաղվածության և երկրի ապագայի»։

Վերջին տարիներին լայնորեն տարածվել են գործադուլների այնպիսի ձևերը, երբ աշխատավորները, պահանջելով տերերից շարունակել արտադրությունը, նույնիսկ գրավում են ձեռնարկությունները և ինքնուրույն կազմակերպում արտադրությունը։ Դրանով իսկ նրանք թույլ չեն տալիս ձեռնարկատերերին տեղափոխելու իրենց կապիտալն արտադրության ոլորտից դեպի դրամական սպեկուլյացիաների ոլորտը, ինչին այսօր ակնհայտորեն միտում է մասնավոր շահը և ինչի դեմ, փաստորեն, կրկին պայքար են մղում աշխատավոր մարդիկ, այլ ոչ բուրժուական պետությունը կամ բուրժուազիայի գաղափարախոսները։

«Աշխատանքային բարոյականության ճգնաժամը» սոցիալիստական հասարակության վրա տարածելու բուրժուական փորձերը զուրկ են որևէ հիմքից։ Իհարկե, սոցիալիզմի պայմաններում նույնպես կան պրոբլեմներ. երիտասարդության աշխատանքային վարքի, ուսման, առհասարակ հասարակական ակտիվության բնագավառում անհանգստացնող որոշ երևույթների մասին հատկապես խոսվեց մեր կուսակցության Կենտրոնական կոմիտեի 1983 թ. հունիսյան ու 1984 թ. ապրիլյան պլենումներում։ Նկատենք միայն, որ այստեղ իր քայքայիչ ազդեցությունն է գործում բուրժուական պրոպագանդան, բուրժուական ապրելակերպի, ամենից առաջ՝ սպառողական դրախտի գովքով, որը տարբեր ուղիներով ներթափանցում է մեր հասարակություն, այլ կերպ ասած, տեղի ունի աշխատանքի բարոյականության ճգնաժամի յուրատեսակ արտահանում սոցիալիստական երկրներ։ Ահա թե ինչու, թե՛ սոցիալիզմի ներքնածին պրոբլեմները լուծելու, թե՛ արտաքին պրոպագանդային հակազդելու առումով շատ կարևոր է այն հստակ նպատակադրումը, որը կարմիր թելի պես անցնում է ՍՄԿԿ XXVI համագումարի և Կենտկոմի վերջին պլենումների փաստաթղթերի միջով, և որը մի անգամ ևս ցայտուն կերպով արտահայտված է ՍՄԿԿ Կենտկոմի «Կոմերիտմիության կուսակցական ղեկավարման հետագա բարելավման և երիտասարդության կոմունիստական դաստիարակության գործում կոմերիտմիության դերի բարձրացման մասին» որոշման մեջ։

Երիտասարդության մոտ աշխատանքի նկատմամբ պատասխանատու վերաբերմունքի ձևավորումը, մարդու կյանքն իմաստավորող, մարդու պահանջմունքները վեհացնող աշխատանքի դերի գիտակցումը մեր հասարակության հետագա ներդաշնակ սոցիալական առաջընթացի գլխավոր երաշխիքն է։ Առանց աշխատանքային բարոյականություն սերմանելու, աշխատանքային խղճի և արժանապատվության ձևավորման անհնարին կլինի և մեր մյուս բոլոր նպատակների իրագործումը։ Սոցիալիստական հասարակության կարևորագույն, վճռորոշ առավելությունը կապիտալիստականի նկատմամբ այն է, որ թե՛ սոցիալիզմի տնտեսական և սոցիալական զարգացման օբյեկտիվ նպատակը, թե՛ կոմունիստական կուսակցության ղեկավար գործունեությունը միտում են ոչ թե կատարյալ, համակողմանի սպառողի, այլ արարիչ, ստեղծագործ մարդկային կեցության բոլոր դրսևորումները ներդաշնակող անձնավորության ձևավորմանը, ոչ թե սպառման, այլ աշխատանքը կենսական կարևորագույն պահանջմունքի վերածելուն։ Եվ աշխատանքային բարոյականությունն իր իրական հաստատումն ստանում է ոչ թե ապագայազուրկ կապիտալիստական հասարակության պայմաններում, այլ աշխատանքի մարդկանց հասարակության՝ հասուն սոցիալիզմի իրողության մեջ։

---

Տասնմեկերորդ հնգամյակի

բնագծերում

# ՊԱՐԵՆԱՅԻՆ ԾՐԱԳՐԻ ԻՐԱԿԱՆԱՑՄԱՆ ԱՆՀՐԱԺԵՇՏ ՊԱՅՄԱՆԸ

Լ. ՊԵՏՐՈՍՅԱՆ
Գյուղատնտեսական գիտությունների թեկնածու

ՄՇԱԿԵԼՈՎ ԵՐԿՐԻ ՊԱՐԵՆԱՅԻՆ ծրագիրը, ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. մայիսյան պլենումը կարևորագույն խնդիր համարեց անասունների մթերատվության բարձրացումը, անասնապահության ինտենսիֆիկացումը։ Այս խնդիրը ներառնում է գլխաքանակի որակական կազմի կատարելագործումը, տոհմային աշխատանքի բարելավումը. բարձր մթերատու ցեղատեսակներին պատկանող կենդանիների բազմացումը և, իհարկե, կերի արտադրության և որակի զգալի աճը, ռացիոնալ օգտագործումը։

Կերի արտադրության հարցին լուրջ ուշադրություն նվիրվեց ագրոարդյունաբերական համալիրի պրոբլեմներին նվիրված հանրապետական տնտեսագիտական խորհրդակցությունում։ Եվ դա միանգամայն հասկանալի է։ Հանրապետության գյուղի աշխատավորները ձգտում են ընթացիկ հնգամյակում մսի միջին տարեկան արտադրությունը հասցնել 95 հազար տոննայի, իսկ հաջորդ հնգամյակում՝ 120—122 հազար տոննայի, կաթինը՝ համապատասխանաբար՝ 520 հազար և 570—590 հազար տոննայի։ Այս բարձր բնագծերի նվաճումը հնարավոր է նախ և առաջ կերի կայուն բազա ստեղծելու՝ կերի արտադրության ավելացման և արդյունավետ օգտագործման միջոցով։

Դեռևս 1981 թվականի հուլիսին Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը հատուկ քննության առարկա դարձրեց հանրապետության կերարտադրության զարգացման երկարաժամկետ կոմպլեքսային ծրագիրը, որտեղ սահմանված են կերարտադրության հետագա ինտենսիֆիկացման, այն ինդուստրիալ հիմքերի վրա փոխադրելու գլխավոր ուղղությունները։ Այնուհետև ՀԿԿ Կենտկոմի 1982 թ. հոկտեմբերյան պլենումը քննարկեց հացահատիկի ու կերի արտադրության հետագա ավելացման, դրանց արդյունավետ օգտագործման հարցերը։ Նշվեցին կերի արտադրության զարգացման և որակի բարձրացման ուղիները։ Հատուկ ուշադրություն նվիրվեց կերի արտադրությունն ավելացնելու ռեզերվների ռացիոնալ օգտագործմանը, հատկապես բնական կերահանդակներում՝ խոտհարքներում և արոտավայրերում. որոնք զբաղեցնում են հանրապետության բոլոր գյուղատնտեսական հողատարածությունների երկու երրորդը։ ՀԿԿ Կենտկոմի պլենումում ընկ. Կ. Ս. Դեմիրճյանն ասաց. «Ինչպես հայտնի է, կերի և անասնապահական մթերքների արտադրության ավելացման կարևոր ռեզերվներ են բնական կերահանդակները։ Սակայն բնական կերահանդակների կուլտուր-տեխնիկական վիճակը շարունակում է մնալ անբավարար։ Կերահանդակների զանգվածների մեծամասնությունն օգտագործվում է անխնամ, քիչ են տրվում հանքային և օրգանական պարարտանյութեր, չկան ջրի աղբյուրներ և ճանապարհներ։ Չեն կիրառվում մարգագետինների և արոտավայրերի ռացիոնալ օգտագործման առաջավոր մեթոդները, չի կազմակերպված խոտհարք-արոտավայրային շրջանառություն և այլն։

Մեծ է գիտության դերը բնական կերահանդակներում և վարելահողերում կերարտադրության այնպիսի արդյունավետ տեխնոլոգիաների մշակման ու արմատավորման գործում, որոնք ոռոգվող հողերում կապահովեն հեկտարից 10—15 հազար, իսկ անջրդի հողերում՝ 5—6 հազար կերամիավորի ստացումը:

Հանրապետությունում կատարած գիտական հետազոտությունները ապացուցում են, որ կուլտուրական արոտավայրեր ու խոտհարքներ ստեղծելու միջոցով՝ դրանց բերքատվությունը բնականի համեմատությամբ հնարավոր է ավելացնել 4—5 անգամ: Բնական կերային տարածությունները զբաղեցնում են շուրջ 817 հազար հեկտար (արոտավայրեր՝ 650 հազար, խոտհարքներ՝ 137 հազար), որոնք հիմնականում տարածված են տափաստանային, մարգագետնատափաստանային, ենթալպյան և ալպյան գոտիներում: Հանրապետության կոլտնտեսություններում ու սովխոզներում անցած հնգամյակի տարիներին կատարվել է շուրջ 200 հազար հեկտար խոտհարքների ու արոտավայրերի արմատական ու մակերեսային բարելավում: 1976—1983 թթ. միայն հանքային պարարտանյութերով յուրաքանչյուր տարի պարարտացվել են 31—38 հազար հեկտար բնական կերային հանդակներ: Չնայած դրան, հանրապետությունում բնական կերահանհանդակների կուլտուր-տեխնիկական վիճակը շարունակում է մնալ անբավարար: Կերահանդակների զանգվածների մեծամասնությունն օգտագործվում է անսիստեմ, գրեթե չեն կիրառվում մարգագետինների ու արոտավայրերի ռացիոնալ օգտագործման առաջավոր մեթոդները:

Փաստ է, որ բնական մարգագետիններից ստացված կերը 2—7 անգամ ավելի էժան է կերի բոլոր այլ տեսակներից: Փաստ է նաև, որ արոտային շրջանում ստացված սննդամթերքների ինքնարժեքը զգալի չափով ցածր է մսուրային շրջանում ստացվածից:

Վերջին տարիներին հանրապետության կոլեկտիվ ու պետական տնտեսություններում բնական կերային տարածությունների բարելավման և մարգագետինների բերքատվության բարձրացման ասպարեզում որոշակի աշխատանքներ են կատարվել Սակայն տարածության մեկ միավորի հաշվով անասունների արոտի մեծ բեռնվածության, դրա անսիստեմ օգտագործման, արոտաշրջանառության և հերթափոխ արածեցում չկիրառելու, հանքային և օրգանական պարարտանյութերի անբավարար օգտագործման հետևանքով շատ արոտավայրերում խիստ փոխվել է խոտածածկի բուսական կազմը, պակասել են օգտակար խոտաբույսերը և ավելացել են մոլախոտերը: Արոտների որոշ տարածություններ Հրազդանի, Սևանի, Կամոյի, Մարտունու և մի շարք այլ շրջաններում խիստ տրորվել են, որի հետևանքով տեղի է ունենում հողաշերտերի լվացում:

Չնայած բնական խոտհարքների ու արոտավայրերի մակերեսային բարելավման կուլտուր-տեխնիկական աշխատանքների պլանների կատարմանն ու գերակատարմանը, Եղեգնաձորի, Կրասնոսելսկի, Մարտունու, Հրազդանի և Սևանի շրջաններում ստացված գործնական արդյունքներն անբավարար են: Բնական կերային հանդակներում կատարված կուլտուր-տեխնիկական աշխատանքների ծավալներն ու որակը չեն համապատասխանում դրանց ինտենսիվ և արդյունավետ օգտագործման պահանջներին: Թույլ են իրականացվում կուլտուր-տեխնիկական աշխատանքները, դրանց հեղինակային և տեխնիկական հսկողությունը: Անհրաժեշտ է, որպեսզի ժողովրդական դեպուտատների շրջանային սովետների գործկոմները, ագրոարդյունաբերական միավորումները, տնտեսությունների ղեկավարները և մասնագետները հատուկ հսկողություն ու ուշադրություն դարձնեն մարգագետինների և արոտավայրերի օգտագործման և բարելավման աշխատանքներին, հետևեն, որպեսզի խստիվ կիրառվեն բնական կերահանդակների օգտագործման ագրոզոոտեխնիկական պահանջները, սահմանելով անասունների արածեցումն սկսելու և ավարտելու ժամկետները, ըստ յուրաքանչյուր արոտավայրերի դրանց օգտագործման հերթականությունը, մեկ հեկտարի անասնաբեռնվածության նորմաները, ինչպես նաև վաղօրոք հաստատել անասուններին արոտավայրեր տեղափոխելու երթուղիները:

Բնական մարգագետինների բարելավման բնագավառում ինստիտուտի գիտնականների կատարած աշխատանքների շնորհիվ մշակվել են մեծ թվով գիտականորեն հիմնավորված միջոցառումներ, որոնց ներդրմամբ կարելի է մի քանի անգամ բարձրացնել մարգագետինների բերքատվությունը, բարելավել խոտակազմը, ավելացնել խոտի սննդարժեքը և արդյունավետ օգտագործել արոտավայրերը:

Հաշվի առնելով անասնապահության հեռանկարային զարգացումը և բնական խոտհարքների ու արոտների արդի վիճակը, Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդը 1983 թ. փետրվարի 28-ի որոշմամբ հանրապետության բնական կերային հանդակների բարելավման լայն ծրագիր է մշակել: Նախատեսվում է մինչև 1990 թվականը կատարել բնական կերային հանդակների արմատական բարելավում 33 հազար հեկտարի վրա, 8 հազար հեկտարի բնական կերային հանդակներում ստեղծել ջրովի արոտներ և խոտհարքներ, կատարել 110 հազար հեկտար բնական արոտների և խոտհարքների մակերեսային բարելավում: Կցանկապատվեն երկու հազար հեկտար բնական արոտներ, կջրարբիացվի 60 հազար հեկտարը:

Ելնելով աշխատանքների մեծ ծավալից ու դժվարություններից, պետությունը զգալի օգնություն է ցույց տալիս կոլտնտեսություններին ու սովխոզներին բնական կերային հանդակների արմատական և մակերեսային բարելավումների աշխատանքների կազմակերպման գործում:

Բնական կերային հանդակների բուսականությունը բավական խոնավասեր է և պահանջում է լրացուցիչ ոռոգում: Ուսումնասիրությունները ցույց են տվել, որ բնական կերային հանդակների բուսականության նորմալ զարգացման և բերքատվության բարձրացման համար հողի խոնավությունը պետք է լինի 50—80 տոկոս: Հատկապես չոր շրջաններում երաշտի հասցրած վնասներից խուսափելու, արոտների և խոտհարքների արդյունավետությունը բարձրացնելու համար անհրաժեշտ է դրանք ոռոգել՝ արհեստական ջրահավաք ավազանների կառուցման և դրանցում բնական ջրերի կուտակման ու հետագա ռացիոնալ օգտագործման միջոցով: Անհրաժեշտ է գարնանը հեղեղաջրերը կուտակել և այն ուղղել դեպի արոտներն ու խոտհարքները, ինչպես այդ արդեն մոտ երկու տասնամյակ արվում է Արթիկի շրջանի Արթիկի և Մանթաշի սովխոզներում: Պարարտացման հետ ոռոգման զուգակցումը հնարավորություն է ընձեռում մի քանի անգամ բարձրացնել արոտների և խոտհարքների բերքատվությունը:

Անասնաբուծության և կերարտադրության գիտահետազոտական ինստիտուտի արոտների և խոտհարքների կերարտադրության տեխնոլոգիայի բաժինը երկարամյա ուսումնասիրությունների և գիտական փորձերի շնորհիվ մշակել է բնական մարգագետինների մակերեսային և արմատական բարելավման մի շարք միջոցառումներ՝ հանրապետության բազմազան գոտիականության պայմաններին համապատասխան: Փորձերի արդյունքները ցույց են տվել, որ բնական արոտների և խոտհարքների բարելավման միջոցառումների կոմպլեքս կիրառմամբ հնարավոր է բնական կերային տարածությունների բերքատվությունը հասցնել 38—75 ցենտների՝ չբարելավվածի 8—14 ցենտների փոխարեն և լավացնել արտադրվող կերի որակը:

Ինչպես բերքատվության բարձրացման, այնպես էլ կերի որակի բարելավման գործում մեծ է ազոտական, ֆոսֆորական, կալիումական պարարտանյութերի և մի շարք միկրոտարրերի դերը: Հանքային պարարտանյութերի նորմավորման և դրանց արդյունավետության բարձրացման երկարամյա փորձերի հիման վրա կազմվել են հանրապետության տարբեր գոտիների համար հանքային պարարտանյութերի օգտագործման նորմաները: Նկատի ունենալով, որ բերքի ամենամեծ հավելում ստացվում է բավարար խոնավ գոտիներում (մարգագետնատափաստանային, անտառատափաստանային և ենթալպյան), անհրաժեշտ է այդտեղ կենտրոնացնել պարարտանյութերի գործադրումը: Այս գոտիներում պարարտացումը հեկտարից ապահովում է 40—60 ցենտներ խոտ՝ ոչ բարելավված մարգագետինների 12—15 ցենտների փոխարեն:

Մարգագետնատափաստանային գոտում ազոտական պարարտանյութերի օպտիմալ նորման է ազդող նյութի հաշվով հեկտարին 60—120 կգ ֆոսֆոր և

կալիում։ Պարարտացման այս նորմաների դեպքում դաշտն ունենում է բարձր և խիտ խոտածածկ, բարձրանում է խոտհարքի և արոտային կանաչի որակը, ավելանում է պրոտեինի, ամինաթթուների, կարոտինի և ֆոսֆորի պարունակությունը, հետևաբար, և արոտամարգագետնային կերի կենսաբանական արժեքը։

Մարգագետնատափաստանային գոտու բնական մարգագետինների վրա ստեղծված կուլտուրական արոտավայրերում ուսումնասիրվել են նաև ազոտական պարարտանյութերի՝ հեկտարին 120, 180 և 240 կգ նորմաները։ Գիտաարտադրական փորձերի արդյունքները ցույց են տվել, որ այս միջոցառման շնորհիվ բնական արոտի բերքատվությունը բարձրանում է 2,5—3 անգամ։

Այս տարի մեր հանրապետության բնական կերային հանդակները պարարտացնելու համար նախատեսված է կոլտնտեսություններին և սովխոզներին հատկացնել 15 հազար տոննա հանքային պարարտանյութեր։

Ներկայումս մեծ անհամապատասխանություն գոյություն ունի բնական արոտների և խոտհարքների տեսակարար կշռի միջև, քանի որ մեկ հեկտար արոտավայրին ընկնում է մոտ 0,25 հեկտար խոտհարք։ Մի շարք պատճառներով հանրապետության բնական խոտհարքների զգալի տարածություններ սկսել են օգտագործվել որպես արոտ։ Այժմ կարելի է դրանց որոշ մասը նորից վերածել խոտհարքների, քանի որ հնարավորություն է ընձեռվում պարարտացնելու ոչ միայն խոտհարքները, այլև արոտավայրերը։ Ագրոտեխնիկական համալիր միջոցառումների կիրառմամբ վերականգնված խոտհարքների յուրաքանչյուր հեկտարից ստացվում է 35—40 ցենտներ խոտ։ Ցանովի խոտհարքներ հիմնելու նպատակով անասնաբուծության և կերարտադրության գիտահետազոտական ինստիտուտի բազմամյա ուսումնասիրությունների հիման վրա Հայաստանի տարբեր գոտիների համար երաշխավորված են հետևյալ խոտախառնուրդների տեսակները։

Առաջին տեսակը խոնավ և չափավոր խոնավ հողակլիմայական պայմաններում ցանովի խոտհարքներ հիմնելու համար է, որի մեջ որպես մշտական ուղեկիցներ կարող են լինել երեքնուկները (երեքնուկ կարմիր, վարդագույն, սիզախոտ մարգագետնային, շյուղախոտ մարգագետնային, ոզնախոտ հավաքված)։

Այս խոտախառնուրդով ցանովի խոտհարքներ նախատեսվում է հիմնել Ամասիայի, Ղուկասյանի, Կալինինոյի, Կրասնոսելսկի, Մարտունու, Ստեփանավանի, Կամոյի անվան, Գուգարքի շրջաններում, ինչպես նաև Ազիզբեկովի, Ալավերդու, Ապարանի, Արթիկի, Ախուրյանի, Գորիսի, Իջևանի, Սևանի և Հրազդանի շրջանների բարձրադիր տնտեսություններում։ Կալինինոյի շրջանի տնտեսությունների փորձը ցույց է տվել, որ այդպիսի խոտախառնուրդով հիմնըված խոտհարքը մեկ հեկտարից տալիս է բարձր որակի 40—45 ցենտներ չոր խոտի բերք։

Երկրորդ տեսակը նախատեսված է չափավոր չոր հողակլիմայական պայմաններում ցանովի խոտհարքներ հիմնելու համար։ Այս խոտախառնուրդում կորնգանի հետ կարելի է օգտագործել մարգագետնային խոտաբույսերի տեսակները՝ կորնգան անդրկովկասյան, առվույտ կապույտ, ցորնուկ անքիստ, ռայգրաս բարձր, ոզնախոտ հավաքված, սիզախոտ մարգագետնային։ Այս խառնուրդով կարելի է ցանովի խոտհարք ստեղծել Հայաստանի համարյա բոլոր շրջաններում,. որտեղ կորնգան է մշակվում։ Նման խոտախառնուրդով ստեղծված խոտհարքի մեկ հեկտարը տալիս է մինչև 35—40 ց բարձրորակ չոր խոտ։

Երրորդ տեսակի խոտախառնուրդը, որն առաջարկվում է չոր հողակլիմայական պայմաններում խոտհարքներ ստեղծելու համար, կազմված է միայն երեք տեսակի խոտաբույսերից. կորնգան անդրկովկասյան, ժիտնյակ լայնահասկ, ցորնուկ անքիստ։

Վերջին տարիներին ինստիտուտի արոտների և խոտհարքների կերարտադրության տեխնոլոգիայի բաժինը աշխատանքներ է ծավալել գյուղատնտեսական շրջանառությունից դուրս գրված (այսպես կոչված «թափված») հողերը



արմատապես բարելավելու և դրանք ցանովի բարձր բերքատու խոտհարքների վերածելու համար։ Արթիկի շրջանի յոթ տնտեսությունների մարգագետնատափաստանային և ենթալպյան գոտիներում փորձարկվել են տարբեր խոտաբույսերից կազմված խոտախառնուրդներ։ Բարձր բերքատվություն է ապահովել չորս խոտաբույսերից կազմված խոտախառնուրդը։

Այսպիսով, ինստիտուտի երկարամյա ուսումնասիրությունների հիման վրա ցանովի խոտհարքներ հիմնելու համար առաջարկվում են տարբեր խոտախառնուրդներ։ Սակայն արոտամարգագետնային խոտաբույսերի սերմերի խիստ պակասությունը հանրապետությունում խոչընդոտում է բնական խոտհարքների և արոտավայրերի բարելավման աշխատանքներին։ Վերոհիշյալ բարելավումների համար հանրապետության տնտեսությունների տարեկան պահանջը կազմում է 450—600 տոննա արոտամարգագետնային խոտաբույսերի սերմացու, սակայն այժմ արոտային և շարային սերմերի տարեկան արտադրությունը կազմում է պահանջի հազիվ կեսը։

Նոր, բարձր բերքատու արոտամարգագետնային խոտաբույսերի սորտերի ստեղծման և դրանց արմատավորման գործում մեծ անելիքներ ունեն Հայաստանի անասնաբուծության և կերարտադրության գիտահետազոտական ինստիտուտը և նրա բազաները։ Ինչպես հացազգի, այնպես էլ բակլազգի (թիթեռնածաղկավոր) արոտամարգագետնային խոտաբույսերի էլիտային սերմնաբուծության աշխատանքները կատարվում են Սևանի լեռնամարգագետնային կայանի և Կալինինոյի շրջանի Լոռվա փորձարարական բազայում։ Հանրապետության հարուստ վայրի բուսականությունից ստեղծվում են բարձր բերքատու թիթեռնածաղկավոր և հացազգի բույսերի սորտեր։ Վայրի հացազգի բույսերից մշակվում են մարգագետնային սիզախոտը, բարձր ռայգրասը, կծկավոր ոզնախոտը և այլ սորտեր։

Ուսումնասիրելով վայրի տեղական ժիտնյակի տեսակները, երկրագործության, անասնաբուծության և կերարտադրության ինստիտուտների աշխատակիցները ստեղծել են «Թալինի ժիտնյակի» նոր բարձր բերքատու սորտը։ Երկարամյա սելեկցիոն աշխատանքի շնորհիվ Վարդուհի Բալյանը ստեղծել է կարմիր երեքնուկի «Հայկական—40» սորտը։

Արոտամարգագետնային խոտաբույսերի սերմնաբուծության մասնագիտացումն ու ինտենսիվացումը մեր հանրապետությունում դեռևս չեն գտնվում ուշադրության կենտրոնում։ Ճիշտ է, արդեն առանձնացված են խոտաբույսերի սերմերի արտադրությամբ մասնագիտացող տնտեսություններ, սակայն դեռևս այդ ճյուղը չի դարձել առաջատար։ Արոտամարգագետնային խոտաբույսերի սերմնաբուծական տնտեսությունները կոչված են մասնագիտացման ինտենսիվացման և ագրոտեխնիկական կոմպլեքսային միջոցառումների կիրառմամբ կարճ ժամանակամիջոցում շեշտակի բարձրացնել խոտաբույսերի սերմերի բերքատվությունը։ Բնական կերային տարածությունների բարելավման աշխատանքների հետ զուգահեռ, կարևոր է նաև դրանց ռացիոնալ օգտագործման միջոցառումների կիրառումը։

Կուսակցական, սովետական, տնտեսական մարմինների հետևողական աշխատանքի, նշված միջոցառումների իրականացման շնորհիվ հնարավորություն կընձեռվի մեծ չափով ավելացնելու արոտային կերի և խոտի քանակը, բարձրացնելու դրանց որակը։ Իսկ դա, անշուշտ, մեծապես կնպաստի անասնապահական մթերքների արտադրության ավելացմանն ու որակի բարելավմանը, պարենային մթերքների առատության ստեղծմանը, սովետական մարդկանց բարեկեցության անշեղ բարձրացմանը։ Ընկեր Կ. Ս. Դեմիրճյանը նշել է, որ հանրապետության պարենային ծրագրի գլխավոր խնդիրներից մեկը անասնապահական մթերքների արտադրության ծավալների հետևողական ավելացումն է և այդ հիման վրա հանրապետության բնակչությանը մսամթերքներ ու կաթնամթերքներ մատակարարելու գործի բարելավումը։ Հիշյալ պրոբլեմի լուծման գործում առանձնակի տեղ են գրավում հացահատիկի և կերի արտադրության ավելացման և դրանց արդյունավետ օգտագործման հարցերը։

## Կուսակցական շինարարության տեսություն և պրակտիկա

# ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԷԱԿԱՆ ՕՂԱԿԸ

**Էմմա ՄՇԵՅԱՆ**
ՀԿԿ Աբովյանի շրջկոմի քարտուղար

*ԱՇԽԱՏԱՎՈՐԱԿԱՆ ԼԱՅՆ ԶԱՆԳՎԱԾՆԵՐԻ կոմունիստական դաստիարակության գործում առաջնակարգ դերը պատկանում է կադրերին՝ պրոպագանդիստներին, քաղինֆորմատորներին, ագիտատորներին, դասախոսներին, գաղափարախոսական ճակատի մյուս ներկայացուցիչներին։ Նրանց ձեռներեցությամբ ու հետևողական աշխատանքով է պայմանավորված կուսակցական ուսուցման, տնտեսագիտական կրթության, բանավոր քաղաքական ագիտացիայի, դասախոսական պրոպագանդայի, մասսայական միջոցառումների արդյունավետությունը և ներգործունությունը։ Եվ օրինաչափ է, որ ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան (1983 թ.) պլենումը կադրերին համարեց գաղափարախոսական աշխատանքի գլխավոր օղակը ու խնդիր դրեց կուսակցական մարմինների առջև՝ ունենալ այնպիսի պատրաստված կադրեր, «որոնք ընդունակ լինեն հմտորեն կազմակերպել բնակչության տարբեր խմբերի հետ տարվող գաղափարախոսական աշխատանքը, պատասխանատու լինեն դրա համար» (*ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումի նյութերը*, էջ 91)։ ՀԿԿ Աբովյանի շրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները մշտապես ձգտում են ապահովել գաղափարաքաղաքական աշխատանքի բարձր մակարդակը։ Այդ նպատակով կարևոր տեղ ենք հատկացնում այդ բնագավառի կադրերի պատրաստման ու վերապատրաստման, ընտրության, դաստիարակության գործին։*

*Մենք գաղափարախոսական կադրեր ենք ընտրում կոմունիստների, կոմերիտականների, բանվորների, կոլտնտեսականների, մտավորականության լավագույն ներկայացուցիչներից՝ հաշվի առնելով նրանց քաղաքական ու գործնական հատկանիշները և բարոյական կերպարը։ Եվ գաղտնիք չէ, որ կուսակցական ուսուցումն ու տնտեսագիտական կրթությունը հատկապես արդյունավետ են այնտեղ, ուր ունկնդիրներն իրենց պրոպագանդիստին հարգում են գործիմացության ու բարձր գաղափարայնության, կազմակերպչական ունակությունների, մարդկային լավագույն հատկանիշների համար։ Այդպիսի պրոպագանդիստի օրինակ են տալիս Զ. Զաքարյանը (Կոտայք), Ս. Գևորգյանը (Ակունք), Կ. Հակոբյանը (Արամուս), Դ. Գևորգյանը («Հայբյուրեղապակի» գործարան) և ուրիշներ։ Կոտայքի կոլտնտեսության նախագահ Զ. Զաքարյանն այդ գյուղի ծնունդն է, բարձրագույնն ավարտել ու վերադարձել է հայրենի բնօրրան։ Երեք տասնամյակ առաջ նրան վստահել են տնտեսության ղեկը և քաղուսուցման դպրոցի պրոպագանդիստի պատվավոր պարտականությունը։ Բանիմաց ղեկավար լինելու հետ միասին նա քաղաքական հմուտ դաստիարակ*



*է, մեծ հեղինակություն է վայելում կոմունիստների, աշխատավորների շրջանում։ Նրա ղեկավարած տնտեսությունը բարձրշահութաբեր է, որը հնարավորություն է ընձեռում հաջողությամբ լուծելու սոցիալ-տնտեսական խնդիրները։ Հայրենիքը բարձր է գնահատել Զաքարյան-նախագահի աշխատանքային ներդրումը և նրան արժանացրել սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչման, կուրծքը զարդարել Լենինի, Հոկտեմբերյան հեղափոխության, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշաններով։ Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով պարգևատրվել է նաև կոլտնտեսությունը։ Կոլտնտեսականները խորապես հարգում են իրենց ղեկավարին, հաշվի առնում նրա ամեն մի խոսքը։*

*«ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումների լույսի ներքո կուսակցական ուսուցման հետագա կատարելագործման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ նշվում է, որ պրոպագանդիստին պետք է հատուկ լինեն քաղաքական սրատեսությունը, տեղի ունեցող իրադարձությունները խորապես վերլուծելու կարողությունը, ակտիվ պայքարը լենինյան գործի համար, անհանդուրժողական վերաբերմունքը կոմունիստական բարոյականության նորմերի ամեն տեսակ խախտումների նկատմամբ։ Նույն պահանջը ներկայացվում է նաև ագիտատորներին, քաղինֆորմատորներին, դասախոսներին, ղեկուցողներին, գաղափարախոսական բնագավառի մյուս աշխատողներին։ Ահա թե ինչու համապատասխան կադրեր ընտրելիս՝ շրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները ճշտորեն ղեկավարվում են ՍՄԿԿ Կենտկոմի այդ որոշմամբ։*

*Ներկայումս շրջանի արդյունաբերական ձեռնարկությունների, կառույցների, կոլեկտիվ և պետական տնտեսությունների, կապի, տրանսպորտի, դպրոցական և ուսումնական մյուս հաստատությունների սկզբնական կուսկազմակերպություններում պրոպագանդիստների թիվն անցնում է 1.300-ից։ Նրանք ղեկավարում են կուսակցական ուսուցման և տնտեսագիտական կրթության համակարգի դպրոցներ ու սեմինարներ, հաջողությամբ կազմակերպում կոմունիստների, անկուսակցականների, բանվորների, կոլտնտեսականների, արտադրության տարբեր օղակներում աշխատող կադրերի մարքս-լենինյան ուսուցումը, նրանց զինում տնտեսագիտական գիտելիքներով։ Անչափ կարևորում ենք պրոպագանդիստների որակական կազմի բարելավումը։ Նրանց 90 տոկոսն ունի բարձրագույն կրթություն, երկար տարիների աշխատանքային փորձ։*

*Կուսակցությունը խնդիր է դնում, որպեսզի տնտեսական ղեկավարները կատարեն նաև դաստիարակչական դեր, ակտիվորեն զբաղվեն արտադրության մարդկանց գաղափարաքաղաքական կոփման այնքա՜ն պատասխանատու գործով։ Կուսշրջկոմն այդ խնդիրը մշտապես պահում է իր տեսադաշտում։ Այսօր պրոպագանդիստական աշխատանքով է զբաղված նաև շրջանի արդյունաբերական ձեռնարկությունների, տնտեսությունների, հիմնարկությունների, ուսումնական հաստատությունների ղեկավարների, գլխավոր մասնագետների, սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների ճնշող մեծամասնությունը։*

*Կուսշրջկոմը պարբերաբար հաշիվ է պահանջում նրանցից, պարզում, թե նրանք ինչպես են դրսևորում իրենց և՛ որպես ղեկավար, և՛ որպես պրոպագանդիստ։ Շրջկոմի բյուրոյում այդ առթիվ հաշվետվությամբ հանդես են եկել Ակունքի և Կոտայքի կոլտնտեսությունների նախագահներ Պ. Հարությունյանն ու Զ. Զաքարյանը, Կապուտանի և Մայակովսկու սովխոզների դիրեկտորներ Հ. Եփրեմյանն ու Է. Կարապետյանը, «Աբովյանշին» տրեստի կառավարիչ Վ. Ավագյանը և ուրիշներ։ Ակունքի կոլտնտեսության նախագահ Պ. Հարությունյանը սիստեմատիկաբար զբաղվում է իր գաղափարատեսական մակարդակի բարձրացմամբ, կուսակցական-տնտեսական ակտիվի դպրոցում ձեռք բերած տեսական գիտելիքներն օգտագործում է պրոպագանդիստական աշխատանքում, դրանք նպատակամղում արտադրության վերելքին, պետական պլանների ու ստանձնած պարտավորությունների կատարմանը։ Նա ակտիվորեն է մասնակցում միասնական քաղօրերի անցկացմանը, զանազան թեմաներով ելույթ ունենում աշխատավորների առջև, նրանց տեղյակ պահում տնտեսության, շրջանի սոցիալ-տնտեսական նվաճումներին, ընթացք տալիս նրանց արած*

առաջարկություններին։ Նրա ղեկավարած տնտեսագիտական դպրոցում ուսումնասիրվում են «Գիտատեխնիկական առաջընթացը և արտադրության արդյունավետությունը», «Կուսակցության պարենային ծրագիրը» թեմաները։ Պրոպագանդիստը խորամուխ է լինում տնտեսության վարման ժամանակակից մեթոդների մեջ, ծանոթանում տնտեսական և սոցիալական պրոցեսների կառավարման ասպարեզում գիտության և առաջավոր փորձի նվաճումներին։ Է. Կարապետյանն ուսուցումը սերտորեն շաղկապում է արտադրության արդյունավետության բարձրացման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման խնդիրների հետ և կարողանում է տնտեսությունում էապես ամրապնդել պետական, աշխատանքային կարգապահությունը, բարձրացնել միջին օղակի պատասխանատվությունը։

ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի կարևոր պահանջներից է գաղափարախոսական, մասնավորապես պրոպագանդիստական կադրերի ռեզերվ ստեղծելը։ Մենք այդ խնդիրը լուծում ենք երեք ճանապարհով՝ հասարակական-քաղաքական պրակտիկայի, ՀԿԿ Կենտկոմի մարքսիզմ-լենինիզմի համալսարանի և գաղափարախոսական ակտիվի դպրոցի միջոցով։ Ընդ որում, գաղափարախոսական ակտիվի դպրոցում հիմնականում ընդգրկում ենք սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների գաղափարական հարցերով զբաղվող տեղակալներին, ակտիվ քաղինֆորմատորներին և ագիտկոլեկտիվների ղեկավարներին։ Հետագայում նրանց ներգրավում ենք պրոպագանդիստական աշխատանքում։ Մեզ հաջողվել է այդ գործում շոշափելի արդյունքի հասնել. ընթացիկ տարում պրոպագանդիստների կազմը մոտ 20 տոկոսով համալրել ենք ռեզերվի հաշվին։

Տարեցտարի, կուսակցական քաղաքական ուսուցման և տնտեսագիտական կրթության կատարելագործմանը համընթաց, ստվարանում են նաև այդ համակարգերի ունկնդիրների շարքերը։ Շրջանի կուսակցական ու կոմերիտական քաղլուսցանցի և տնտեսագիտական կրթության 1.232 դպրոցներում ու սեմինարներում այժմ ընդգրկված են 32 հազար 200 ունկնդիրներ։

Մասսայականություն են վայելում ժողովրդական համալսարանները, որոնց թիվը հասնում է 12-ի։ Դրանց 54 ֆակուլտետներում ընդգրկված է ավելի քան 10 հազար մարդ։ Ընդհանուր առմամբ ուսուցման տարբեր ձևերին մասնակցում են նյութական արտադրության ոլորտում աշխատող կոմունիստների, կոմերիտականների, բանվորների ու կոլտնտեսականների 90 տոկոսից ավելին։ Այստեղից էլ ակնհայտ է այն մեծ ու պատասխանատու աշխատանքը, որ ծավալում են պրոպագանդիստական կադրերը։ Եվ բոլորովին էլ պատահական չէ, որ կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները հետևողականորեն զբաղվում են նրանց պատրաստման, վերապատրաստման, դաստիարակության հարցերով, նրանց ցույց տալիս տեսական և մեթոդական համակողմանի օգնություն ու աջակցություն։ Այդ նպատակով շրջկոմում ստեղծել ենք պրոպագանդիստների մշտական գործող սեմինար, որը պարապմունքներ է ունենում ամիսը մեկ անգամ՝ ողջ ուսումնական տարում։ Պարապմունքներում քննարկվում են մարքս-լենինյան տեսության, ՍՄԿԿ ներքին և արտաքին քաղաքականության հրատապ պրոբլեմները, մարքսիզմի դասականների առանձին աշխատություններ, որոնք սերտորեն առնչվում են ուսումնական ծրագրերով նախատեսված թեմաների հետ։ Առանձին պարապմունքներում արծարծվում են կուսակցական ուսուցման և տնտեսագիտական կրթության մեթոդիկայի, պրոպագանդիստական աշխատանքի վարպետության բարձրացման հարցեր, քննարկվում օրինակելի պարապմունքների ունկնդրումների արդյունքները, կատարվում փորձի փոխանակում։

Մշտական գործող սեմինարում ունկնդիրների առջև հանդես են գալիս հանրապետության ականավոր գիտնականներ, արվեստի ու գրականության գործիչներ, շրջանի կուսակցական, սովետական ղեկավար աշխատողներ։ Վերջին երկու տարիներին քննարկվել և ընդհանրացվել են պրոպագանդիստներ Հ. Ավագյանի («Աբովյանշին» տրեստ), Ի. Հովակիմյանի (Աբովյանի № 7 դպրոց), Զ. Զաքարյանի (Կոտայքի կոլտնտեսություն), Զ. Մարկոսյանի



(«Հայբյուրեղապակի» գործարան), Է. Կարապետյանի (Մայակովսկու սովխոզ), Հ. Եփրեմյանի (Կապուտանի սովխոզ) և ուրիշների աշխատանքի ուսանելի փորձը։

Մշտական գործող սեմինարի պարապմունքներն անցկացնելիս ձգտում ենք հաշվի առնել ունկնդիրների տարբեր կատեգորիաների պահանջներն ու հետաքրքրասիրությունները, հասնել նրան, որ յուրաքանչյուր պարապմունք ստեղծագործական բնույթ կրի, գործնականում դառնա պրոպագանդիստական վարպետության դպրոց։

Բազմաթիվ պրոպագանդիստներ իրենց որակավորումը բարձրացնում են ՀԿԿ Կենտկոմի քաղլուստան կազմակերպած մեկշաբաթյա դասընթացներում։ Կուսշրջկոմը և նրա պրոպագանդայի ու ագիտացիայի բաժինը հոգ են տանում, որպեսզի այդ դասընթացներում ներգրավվեն հատկապես երիտասարդ պրոպագանդիստները։

Պրոպագանդիստների համար կազմակերպվում են նաև այլ կարգի միջոցառումներ՝ զեկուցումներ, դասախոսություններ, գիտագործնական, գիտատեսական կոնֆերանսներ, հանդիպումներ՝ շրջանի կուսակցական, տնտեսական ղեկավարների, արտադրության առաջավորների ու նորարարների հետ։ Այս ամենի նպատակն է բարձրացնել պրոպագանդիստների գաղափարական-տեսական մակարդակը, օգնել նրանց՝ պարապմունքները վարելու աշխույժ, հետաքրքրական ձևով, բավարարելու ունկնդիրների հոգևոր պահանջները։

Կուսակցական ուսուցման և տնտեսագիտական կրթության համակարգի գործունեության արմատական բարելավման ու գաղափարական հագեցվածության ապահովումը կուսշրջկոմի գլխավոր հոգսն է։ Պրոպագանդիստների վարպետության բարձրացման միջոցով ձգտում ենք մշտապես կատարելագործել ուսուցման պրոցեսը, հասնել այն բանին, որ յուրաքանչյուր պարապմունք անցնի գաղափարատեսական պատշաճ մակարդակով, ունենա որոշակի նպատակաուղղվածություն, ներգործի ունկնդիրների վրա, ծառայի նրանց համոզմունքների ձևավորմանը, սերտորեն առնչվի կյանքի հրատապ պրոբլեմների հետ, ցույց տա տվյալ կոլեկտիվի առջև ծառացած խնդիրների լուծման կոնկրետ ուղիները։ Հարցն այնպես է դրվում, որ մարքս-լենինյան գիտությունը խորապես յուրացնի յուրաքանչյուր ունկնդիր, այն նրա համար դառնա համոզմունք, հուսալի կողմնացույց։

Տնտեսական շինարարության ներկա փուլում աստիճանաբար մեծանում ու բարդանում են կուսակցական, տնտեսական ղեկավարներին ներկայացվող պահանջները, նրանք պետք է զինված լինեն բազմակողմանի գիտելիքներով և պրոպագանդիստական, գաղափարաքաղաքական ու դաստիարակչական ակտիվ աշխատանք ծավալեն։ Այժմ, յուրաքանչյուր ղեկավար պետք է տիրապետի ժամանակակից տնտեսական և սոցիալական պրոբլեմների վերլուծության մարքս-լենինյան մեթոդաբանությանը, կազմակերպչական, տնտեսական ու դաստիարակչական աշխատանքի գիտական հիմունքներին, ձեռք բերի դրանց կոմպլեքսային մոտեցում ցուցաբերելու հմտություն ու կարողություն։ Հաշվի առնելով այս հանգամանքը՝ ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումից հետո շրջկոմում կազմակերպեցինք կուսակցական-տնտեսական ակտիվի դպրոց, որտեղ ուսումնասիրվում են սովետական մարդկանց կոմունիստական դաստիարակության խնդիրները։ Ակտիվի դպրոցում ընդգրկված են կուսակցական ու սովետական պատասխանատու աշխատողներ, արդյունաբերական խոշոր ձեռնարկությունների, տնտեսությունների ղեկավարներ, կուսկազմակերպությունների ազատված քարտուղարներ՝ թվով 88 մարդ։ Ընդ որում զեկուցողների կազմում ներգրավված են նաև շրջանի գաղափարախոսական բնագավառի կարող կադրեր, որոնք միաժամանակ սեմինարի ունկնդիրներ են։ Դպրոցը ոչ միայն նպաստում է ունկնդիրների գաղափարատեսական մտահորիզոնի ընդլայնմանը, այլև, ըստ էության, դարձել է շրջանի տնտեսական ու սոցիալական զարգացման ընթացիկ ու հեռանկարային պրոբլեմների քննարկման կենտրոն։ Ունկնդիրների կարդացած ռեֆերատներից շատերը տնտեսությունների և ձեռնարկությունների գործունեության տարբեր բնագավառ-

ների խորապես կշռադատված վերլուծություններ են, շատ օգտակար և ուսանելի են պրակտիկ աշխատանքի համար։ Բազմաթիվ կարևոր և հրատապ պրոբլեմներ ռեֆերատների միջոցով վաղօրոք քննարկվում են պարապմունքներում, ապա՝ համատեղ ուժերով, կոլեկտիվ ջանքերով համապատասխան լուծում ստանում։ Բազմաթիվ են այն ուշագրավ նախաձեռնությունները, որոնց գաղափարը ծնունդ է առել պարապմունքների ընթացքում, ապա՝ արմատավորվել արտադրության մեջ։

Դպրոցի ունկնդիրները ձեռք բերած գիտելիքներն ու փորձը լայնորեն օգտագործում են իրենց պրոպագանդիստական, գաղափարադաստիարակչական աշխատանքում։ Ի դեպ, անցյալ տարի առանձին գրքույկով հրատարակվեց դպրոցի ունկնդիրներ, Աբովյանի քաղսովետի գործկոմի նախագահ Լ. Ավետիսյանի, երկաթ-բետոնե կոնստրուկցիաների, քարերի մշակման գործարանների դիրեկտորներ Ա. Կարապետյանի, Լ. Մակարյանի, «Արշալույս» թերթի խմբագրի տեղակալ Ա. Հարությունյանի, ՀԼԿԵՄ շրջկոմի առաջին քարտուղար Կ. Ազատյանի, «Աբովյանշին» տրեստի կուսկոմիտեի քարտուղար Վ. Միրաքյանի լավագույն ռեֆերատների ժողովածուն, որը նույնպես կոնկրետ ու գործնական օգնություն է պրոպագանդիստական կադրերին։

Գաղափարախոսական կադրերի ուսուցման, նրանց ցույց տրվող օգնության ձևերից մեկն էլ կուսշրջկոմի բյուրոյում, սկզբնական կուսկազմակերպություններում նրանց հետ տարվող աշխատանքի, կուսակցական ուսուցման տնտեսագիտական կրթության հարցերի գործարար քննարկումն է։ Ամեն ամիս շրջկոմի բյուրոյում, պրոպագանդայի և ագիտացիայի բաժնում քննարկվում են քաղուսուցմանը վերաբերող տարբեր հարցեր, կուսբյուրոների և պրոպագանդիստների հաշվետվություններ, ամփոփվում են պարապմունքների ունկնդրումների արդյունքները։ Առանձնապես արդյունավետ են եղել ՍՄԿԿ XXVI համագումարի լույսի ներքո գաղափարախոսական կադրերի ընտրության և դաստիարակության ասպարեզում երկաթբետոնյա կոնստրուկցիաների, «Հայբյուրեղապակի» գործարանի, «Աբովյանշին» տրեստի, Ջրվեժի, Զորաղբյուրի անտառտնտեսությունների կուսկազմակերպությունների կատարած աշխատանքի հարցերի քննարկումները։ Գառնիի սովխոզի կուսբյուրոն հաշիվ է տվել երիտասարդության կոմունիստական դաստիարակության, Ակունքի կոլտնտեսության կուսբյուրոն՝ կուսակցական ուսուցման և տնտեսագիտական կրթության դրվածքի մասին։

ՍՄԿԿ XXVI համագումարը մեկ անգամ ևս շեշտեց, որ պրոպագանդիստը համարվում է կուսակցական ուսուցման համակարգի գլխավոր դեմքը։ Նրա ակտիվ գործունեությամբ են մեծապես պայմանավորված սեմինարների, քաղդպրոցների, համալսարանների հաջողությունը, դրանց՝ կուսակցական կենդանի մտքի ու խոսքի իսկական կենտրոններ դառնալու խնդրի պատշաճ լուծումը, մարդկանց վերաբերմունքը կուսակցական ուսուցման նկատմամբ (տե՛ս ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 127)։ Մենք ձգտում ենք, որպեսզի յուրաքանչյուր պրոպագանդիստ կարողանա ինքնուրույն աշխատել գրքի վրա, բարձր մակարդակով անցկացնել պարապմունքը կամ վարել սեմինարը։ Ոչ մի սեմինար, դասախոսություն, պարապմունք ու կոնֆերանս չի կարող փոխարինել սկզբնաղբյուրների, կուսակցական փաստաթղթերի, քաղաքական այլ գրականության հետ պրոպագանդիստների ինքնուրույն, սիստեմատիկ աշխատանքին։ Որպեսզի բավարարեն իրենց ունկնդիրների աճող հոգևոր պահանջմունքները, մեր պրոպագանդիստներից շատերը մշտապես սովորում, լրացնում են իրենց տեսական գիտելիքները։ Նրանց զգալի օգնություն են ցույց տալիս կուսշրջկոմի և խոշոր կազմակերպություններին առընթեր գործող քաղլուսկաբինետները։ Շրջկոմի քաղլուսկաբինետը դարձել է պրոպագանդիստների գործնական օգնության կենտրոն։ Այստեղ կան ուսումնասիրվող թեմաներին համապատասխան բազմազան միջոցներ (գրականություն, պարբերական մամուլ, դիագրամներ, դիաֆիլմեր, քարտեզներ, սխեմաներ), տեղեկություններ շրջանի, հանրապետության նվաճումների մասին, ցուցադրական և այլ պարագաներ, որոնք տրամադրվում են պրոպագանդիստներին՝



տեղում օգտվելու և քաղուսուցման կամ տնտեսագիտական դպրոցների քաղպարապմունքներում օգտագործելու համար։

ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. «Կուսակցության գաղափարախոսական, մասսայական-քաղաքական աշխատանքի հրատապ հարցերը» որոշմամբ դաստիարակչական աշխատանքների համալիրում կարևոր տեղ է հատկացվում քաղաքական բանավոր ագիտացիային, որը մասսաների վրա կուսակցական ազդեցության փորձված միջոց է։ Այդ գործով են զբաղված ագիտատորները, քաղինֆորմատորները, կուսշրջկոմի դասախոսական խմբի, ինչպես նաև «Գիտելիք» ընկերության շրջանային կազմակերպության անդամները։ Այստեղ նույնպես գործի հաջողությունը պայմանավորված է կադրերի բանիմացությամբ։ Շրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները մշտապես հոգում են ագիտատորների, քաղինֆորմատորների, դասախոսների ու զեկուցողների որակը բարձրացնելու մասին, նրանց ջանքերը նպատակամղում կոլեկտիվների առջև ծառացած խնդիրների լուծմանը։ Նրանց ճնշող մեծամասնությունն ունի բարձրագույն կրթություն, մասսաների հետ աշխատելու երկար տարիների փորձ։ Նրանց համար պարբերաբար մշակվում է զեկուցումների, զրույցների օրինակելի թեմատիկա։

Արդյունավետ աշխատանք է կատարվում կուսշրջկոմի դասախոսների, «Գիտելիք» ընկերության անդամների որակական կազմը բարելավելու, դասախոսական պրոպագանդայի մակարդակը բարձրացնելու համար։ Կուսշրջկոմի դասախոսական խմբում ընդգրկվել են շրջկոմի, շրջանային և քաղաքային սովետների գործկոմների պատասխանատու աշխատողներ, արտադրական ձեռնարկությունների, հիմնարկությունների ղեկավարներ։ Դասախոսական խմբի անդամներն ակտիվություն են ցուցաբերում հատկապես միասնական քաղօրերի ընթացքում։ Նրանք աշխատավորների առջև հանդես են գալիս վաղօրոք նախատեսված թեմաներով, դասախոսություններով ու զրույցներով, պատասխանում կոլեկտիվների բարձրացրած հարցերին։

Քաղօրերի նկատմամբ աշխատավորական լայն զանգվածները գնալով ավելի մեծ հետաքրքրություն են ցուցաբերում, նրանք հաղորդակից են դառնում կուսակցության և կառավարության կարևորագույն որոշումներին, կանխորոշում իրենց տեղն ու դերը դրանց կատարման գործում, բարձրացնում իրենց հուզող հարցերը։ Ի դեպ, այդ հարցերը կուսշրջկոմը խնամքով գրանցում, խմբավորում է և համապատասխան մարմինների միջոցով իրականացնում դրանք, ընթացք տալիս աշխատավորների դիտողություններին ու առաջարկություններին։ Առանձին հարցեր հասցեագրվում են հանրապետական վերադաս կուսակցական և պետական մարմիններին։ Այսպիսով, միասնական քաղօրերը բանավոր քաղաքական ագիտացիայի կարևորագույն ձևն են և էապես նպաստում են աշխատավորների հասարակական ակտիվության բարձրացմանը։

Հայտնի է, որ կապիտալիստական աշխարհի բուրժուական պրոպագանդան դիմում է գաղափարական դիվերսիաների, փորձում է սքողել սոցիալիստական ընկերակցության երկրների տնտեսական և սոցիալական նվաճումները, խաթարել մեր մարդկանց հավատը կոմունիզմի հաղթանակի նկատմամբ։ «...Իմպերիալիզմը, ամենից առաջ, ամերիկյան իմպերիալիզմը, ավելի ու ավելի զանգվածային, իր ծավալով աննախադեպ գրոհներ է ձեռնարկում մեր հասարակարգի վրա, մարքս-լենինյան գաղափարախոսության վրա, ձգտում է թունավորել սովետական մարդկանց գիտակցությունը, խեղաթյուրել մեր արտաքին քաղաքականության նպատակները, խանգարել ռեալ սոցիալիզմի՝ խաղաղության և ժողովուրդների ազատության գործի գլխավոր հենարանի, ազդեցության աճին։ Տեղի է ունենում երկու գաղափարախոսությունների լարված, հիրավի, գլոբալ պայքար» (ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումի նյութերը, էջ 33—34)։

Հաշվի առնելով այս ամենը՝ ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումից հետո կուսշրջկոմը մեծապես կարևորեց հակապրոպագանդայի նպատակով տարվող աշխատանքը և կուսկազմակերպությունների ու գաղափարախոսական

կադրերի ուշադրությունը սևեռեց դրա ուժեղացման վրա։ Շրջկոմի քաղլուսկաբինետում ստեղծվել է կուսակցության արտաքին քաղաքականությանը և հակապրոպագանդային նվիրված անկյուն, որտեղ առանձնացվել են այդ պրոբլեմին վերաբերող հարուստ գրականություն և այլ նյութեր։ Ամեն տարի շրջկոմը վերանայում և հաստատում է միջազգային թեմաներով հանդես եկող դասախոսական կազմը, այն համալրում միջազգայնագետ կարող ուժերով, կանխորոշում կարդացվող դասախոսությունների թեմատիկ պլանը, մեթոդական անհրաժեշտ օգնություն ցույց տալիս նրանց։ Կուսշրջկոմի պատասխանատու բոլոր աշխատողները ներգրավվել են հակապրոպագանդայի նպատակով տարվող աշխատանքում։

Գաղափարախոսական կադրերի ընտրության, դաստիարակության, պատրաստման ու վերապատրաստման ըստ ամենայնի բարելավման շնորհիվ ընդհանուր առմամբ շրջանում մեծապես բարձրացել է քաղաքական-դաստիարակչական աշխատանքի մակարդակը և այն, տնտեսական արդյունավետ գործունեության հետ միասին, էապես նպաստում է շրջանի էկոնոմիկայի անշեղ վերելքին ու դինամիկ զարգացմանը։ Նոր բնագծեր են նվաճում արդյունաբերության աշխատողները։ Նրանք հնգամյակի երեք տարիներին պլանից ավելի արտադրել են երկու միլիոն ռուբլու արտադրանք։ Հնգամյակի անցած ժամանակամիջոցում գրաֆիկից երկու-երեք ամսով առաջ են անցել շինարարական և տրանսպորտային կազմակերպությունները։ Գյուղատնտեսության աշխատողները բարձր ցուցանիշներով կատարեցին հնգամյակի անցած տարիների պլանային առաջադրանքները՝ ապահովելով մթերքների արտադրության ծավալների որոշակի աճ, իրենց արժանի բաժինը ներդրեցին պարենային ծրագրի կատարման գործում։

Արտադրական կոլեկտիվները, իրենց հայրենանվեր աշխատանքի շնորհիվ, հաճախ են նվաճում միութենական և հանրապետական փոխանցիկ դրոշներ։ Անցած երեք տարում շրջանը արժանացել է միութենական ու հանրապետական փոխանցիկ կարմիր դրոշների։ Ստեղծված են բոլոր նախադրյալները 1984 թ. և ամբողջությամբ տասնմեկերորդ հնգամյակը բարձր ցուցանիշներով եզրափակելու համար։ Մեկնակետ ունենալով կուսակցության XXVI համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան և հետհամագումարյան մյուս պլենումների պահանջները՝ կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները ուղիներ են որոնում գաղափարախոսական կադրերի հետ տարվող աշխատանքը արմատապես բարելավելու և կատարելագործելու համար։ Վերջերս «Պրավդա» թերթում հրապարակվեց «Կատարելագործենք մարքս-լենինյան ուսուցումը» առաջնորդող հոդվածը։ Դրանում արտացոլված են կուսակցության պահանջները քաղուսուցման և տնտեսագիտական կրթության նոր ուսումնական տարին բարձր մակարդակով անցկացնելու, պրոպագանդիստական կադրերի գործունեությունն աշխուժացնելու վերաբերյալ։ Մենք լուրջ հետևություններ ենք արել կուսակցության նոր ցուցումներից և առաջադրած խնդիրներից ու նկատելի բեկում ենք մտցրել այդ ասպարեզում մեր ծավալած աշխատանքում։ Նոր ուսումնական տարին հաջողությամբ սկսելու և անցկացնելու նպատակով ստեղծել ենք կոմպլեկտավորման հատուկ մատյաններ, որոնք ըստ ամենայնի արտացոլում են կուսկազմակերպության և կոլեկտիվի սոցիալական բնութագիրը, քաղուսուցման և տնտեսագիտական կրթության դպրոցների տիպերը, ունկնդիրների կազմը, ուսումնասիրվող թեմաները և առհասարակ գաղափարախոսական ողջ աշխատանքը։ Հրավիրել ենք սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների տարբերակված (ըստ բնագավառների) սեմինար-խորհրդակցություն, որտեղ արծարծվել են նոր ուսումնական տարվա կոմպլեկտավորման խնդիրները, մեթոդական անհրաժեշտ խորհուրդներ են տրվել քարտուղարներին։

Անցկացրել ենք նաև պրոպագանդիստների մշտական գործող սեմինարի առաջին պարապմունքը։ Այստեղ պրոպագանդիստներին տրվել են մեթոդական ցուցումներ առաջին թեման («Բարձրարդյունավետ աշխատանքը, հնգամյակի հաջող ավարտումը յուրաքանչյուրի, բոլոր աշխատավորական կոլեկ-



տիվների հայրենասիրական պարտքն է») անցկացնելու և այն ունկնդիրներին հաղորդելու ձևերի ու մեթոդների վերաբերյալ, ընդհանրացվել է առաջավոր պրոպագանդիստների փորձը, կարդացվել միջազգային դրության առնչվող դասախոսություն։

ՍՄԿԿ XXVI համագումարից հետո կուսակցությունն անչափ կարևորեց գաղափարախոսական կադրերի նյութական և բարոյական խրախուսման գործը։ Ըստ արժանվույն է գնահատվում նրանց աշխատանքը։ Մեծ պատվի են արժանացել նաև մեր շրջանի մի խումբ պրոպագանդիստներ։ Այսպես, անցած ժամանակաշրջանում հանրապետության կուլտուրայի վաստակավոր աշխատողի կոչմանն է արժանացել Գ. Գալստյանը (Գետաշենի կոլտնտեսություն), Լենինյան պատվոգրով պարգևատրվել են Է. Կարապետյանը (Մայակովսկու սովխոզ), Պ. Հարությունյանը (Ակունքի կոլտնտեսություն), սեղանի մեդալով՝ Ջ. Մարկոսյանը («Հայբյուրեղապակի» գործարան) և ուրիշներ։ Շրջանի կուսակցական, սովետական մարմինները ևս հոգատարությամբ են շրջապատում գաղափարախոսական կադրերին։ Այս տարի նույնպես մեծ շուքով նշեցինք պրոպագանդիստի օրը։ Առաջավորները պարգևատրվեցին շրջսովետի ու քաղսովետի գործկոմի պատվոգրերով և զանազան նվերներով։

ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան (1983 թ.) պլենումը գիտականորեն մշակեց կուսակցության գաղափարախոսական, մասսայական-քաղաքական աշխատանքի հիմնական ուղիները զարգացած սոցիալիզմի կատարելագործման փուլում և այդ առնչությամբ խնդիր դրեց կուսակցական մարմինների առջև՝ ամեն ինչ անել, որպեսզի գաղափարախոսական կադրերը կոմունիստական գաղափարայնության, աշխատանքի նկատմամբ բարձր պահանջկոտության, հանձնարարված գործի նկատմամբ պատասխանատվության օրինակ ծառայեն։

Կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները մշակել և իրականացնում են միջոցառումներ՝ գաղափարախոսական աշխատանքը իրենց գործին քաջահմուտ, քաղաքական ու տեսական մեծ պատրաստականություն ունեցող կադրերով ապահովելու, նրանց բարձր պատասխանատվության զգացումով դաստիարակելու համար։

---

# ԲՆՈՒԹՅԱՆ ՊԱՀՊԱՆՈՒԹՅԱՆ ՊՐՈԲԼԵՄԻ ՀԱՐԱՃՈՒՆ ԿԱՐԵՎՈՐՈՒԹՅՈՒՆԸ

**Ա. ՉԻԼԻՆԳԱՐՅԱՆ**
**Կենսաբանական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր**

*ԱՐՏԱԴՐԱՄԻՋՈՑՆԵՐԻ ԱՐԱԳ ԶԱՐԳԱՑՄԱՆ ու կատարելագործման, ազգաբնակչության նկատելի ավելացման պատճառով զգալի չափով ուժեղացել է հասարակության ազդեցությունը բնության վրա։ Այն հիմնականում արտահայտվում է բնական հումքի արդյունահանման, դրա վերամշակման, ինչպես նաև քաղաքաշինության, ճանապարհաշինության և այլ ոլորտներում։ Սակայն հասարակության նյութական բազայի ծավալման և դրա հիման վրա մարդկանց հարմարակեցության բարելավման պրոցեսը զուգակցվում է մի շարք անցանկալի երևույթներով։*

*Օգտակար հանածոների ոչ ռացիոնալ օգտագործման հետևանքով տեղի է ունենում վերականգնվող ռեսուրսների աստիճանական նվազում՝ հողերի էռոզիա, բույսերի և կենդանիների ոչնչացում, պակասեցում և այլն։ Նկատվում են առանձին ռեգիոնների բնության աղքատացում և շրջակա միջավայրի վատթարացում — առաջանում են նոր անապատներ, կրճատվում են անտառները, աղտոտվում են օդային ավազանը, ջրավազանները, հողատարածությունները և այլն։ Բնության պահպանության հարցերը հետզհետե առավել մեծածավալ ու բարդ բնույթ են ստանում, մեծանում է գիտության, բնությունը գիտական հիմունքներով օգտագործելու և նրա պահպանության դերը։*

*Անցյալում ևս մարդը հաճախ բացասաբար է ազդել բնության վրա, սակայն այն հիմնականում կրել է տեղական բնույթ և մեծ բացասական ազդեցություն չի ունեցել հասարակության զարգացման առաջընթացի վրա։ Ներկայումս արտաքին միջավայրի անբավարար վիճակը բնորոշ է գրեթե բոլոր, առաջին հերթին, զարգացած երկրներին։ Ավելին, մի երկրում գոյացած թունավոր գազերն ու կեղտաջրերը օդային զանգվածների շարժման և ջրային հոսքերի միջոցով տեղաշարժվում են մյուս երկրներ։*

*Բնության պահպանության հարցերի գիտական հիմնավորումները, մասնավորապես դրա զարգացման կանխագուշակումները, կարելի է գտնել Վ. Ի. Վերնադսկու՝ կենսոլորտի մասին մշակած ուսմունքում։ Վերնադսկին ցույց տվեց, որ կենսոլորտը զարգանում ու գոյատևում է իր կանոններով ու օրենքներով։ Մարդկության կողմից այս տեսակետի ըմբռնումը և քայլ առ քայլ, գիտականորեն բացահայտվող օրինաչափությունների համապատասխան տնտեսական գործունեության ծավալումը միայն կարող են ապահովել կենսոլորտի պահպանումը տարերային ազդեցություններից։*

*Մարդու կյանքն ու հասարակական գործունեությունն ընթանում են մեր մոլորակի աշխարհագրական թաղանթի համեմատաբար բարակ շերտում, որը կենսոլորտ (բիոսֆերա) անունն է ստացել։ Կենսոլորտը բնութագրվում է, այսպես կոչված, կենդանի նյութի՝ մարդկության, բուսականության, կենդանի-*



*ների և միկրոօրգանիզմների համակեցությունների գործունեությամբ։ Կենսոլորտը ներառնում է նաև լիտոսֆերայի, հիդրոսֆերայի և մթնոլորտի այն մասերը, որտեղ գոյություն ունեն կյանքի համապատասխան պայմաններ։ Կենսոլորտի կառուցվածքային տարրական միավորը կոչվում է երկրակենսահամակեցություն (բիոգեոցենոզ) կամ էկոսիստեմ։ Դա մի տարածություն է, որը տեղագրական, միկրոկլիմայական, հողային, ջրային և երկրաքիմիական առումով միասեռ է։ Երկրակենսահամակեցությունը, որպես կենսոլորտի կառուցվածքային և ֆունկցիոնալ տարրական միավոր, ցամաքում ընդգրկում է օրգանիզմների որոշակի համակեցություններ — հողը իր ենթահողի հետ, ինչպես նաև ջրերը, ներքնոլորտի (տրոպոսֆերայի) ստորին շերտերը։ Երկրակենսահամակեցությունների չափերը տատանվում են մի քանի քառակուսի մետրից (մանրափոսեր տափաստաններում և կիսատափաստաններում, ավազաթմբեր) մինչև տասնյակ հազարավոր քառակուսի կիլոմետրեր (աղուտներ, տափաստանների և անտառների միասեռ տեղամասեր և այլն)։ Համաձայն Վ. Ի. Վերնադսկու ուսմունքի, կենսոլորտի բաղադրամասերը՝ բույսերի և կենդանիների տեսակները, մթնոլորտի ստորին մասերը, ջրային ավազանները և այլն, օրինաչափորեն կապված են միմյանց հետ փոխանակման պրոցեսների միջոցով, միաժամանակ, կազմելով մի ամբողջություն։ Կոնսոլորտի ամեն մի բաղադրամաս որոշակի և անփոխարինելի դեր է խաղում դրա ամբողջության պահպանման և կարգավորման գործում։ Մի որևէ բաղադրամասի հիմնավոր փոփոխումն ազդում է մյուս բաղադրամասերի վրա և պայմանավորում դրանց փոփոխությունը ևս։ Բնության պահպանության նպատակով կիրառվող միջոցառումներն իրականացնելիս պետք է հաշվի առնել կենսոլորտի այս կարևոր հանգամանքը, այսինքն՝ նրա ամբողջականությունը։*

*Էկոսիստեմների կամ երկրակենսահամակեցությունների (հետևապես և կենսոլորտի) հիմնակմախքը տարբեր տեսակի բույսերի և կենդանիների համակեցությունների կենսագործունեությունն է։ Ավտոտորֆ (ինքնասուն) օրգանիզմների արդյունավետությամբ է պայմանավորված կենսաքիմիական ցիկլերի հզորությունը, մնացած բոլոր օրգանիզմների կյանքն ու զարգացումը, մթնոլորտի գազային կազմի (հիմնականում ածխաթթու գազի ու թթվածնի) և օդի, ջրի ու հողատարածքի մաքրությունը։ Ինչպես տեսանք, կենսոլորտն իր կառուցվածքով կազմում է մի ամբողջություն, սակայն ֆունկցիոնալ առումով բաղկացած է մի քանի փուլերից։*

*Առաջին փուլը բաղկացած է աբիոտիկ կամ բնական անկենդան շրջապատից, որտեղից երկրակենսահամակեցությունն ստանում է գոյամիջոց և որտեղ արտաթորում է նյութափոխանակության արգասիքները։*

*Երկրորդ փուլը կազմում է կանաչ բույսերի զանգվածը, որն ապահովում է տեղի ազգաբնակչությանը օրգանական նյութերով, հետևապես՝ էներգիայով։ Անօրգանական նյութերից օրգանական նյութերի առաջացման պրոցես է տեղի ունենում նաև քեմոտրոֆ մանրէների մոտ։ Սակայն այդ պրոցեսի ծավալը, ֆոտոսինթեզի համեմատությամբ, շատ չնչին է և կազմում է մոտ մեկ տոկոս։*

*Երրորդն ընդգրկում է տարբեր օրգանիզմներ, որոնց կյանքն ապահովվում է օրգանական նյութերով, պրոդուցենտների սինթեզած սննդանյութերի հաշվին («կոնսումենտներ» կամ «սպառողներ»)։*

*Չորրորդ փուլի մեջ մտնում է օրգանիզմների մի ամբողջություն, որը քայքայում և հանքայնացնում է օրգանական միացությունները («ռեդուցենտներ» կամ «քայքայիչներ»)։ Դրանք հիմնականում կազմում են մանրէները, սնկերը և նախակենդանիները։ Ռեդուցենտները, քայքայելով բույսերի ու կենդանիների մնացորդները և դրանց մահացած մասերը, վերածում են դրանք պարզ անօրգանական նյութերի՝ ածխաթթու գազի, ջրի, ամոնիակի և այլնի, այսպես կոչված, ընդհանուր «վալյուտայի», որը կանաչ բույսերն օգտագործում է օրգանական նյութ սինթեզելու համար։ «Եվ այսպես անընդհատ ու հավիտյան», — ինչպես նկատել է սովետական ականավոր գիտնական Ռոբերտ Վիլյամսը։ Կենսաբանական շրջապտույտի պրոցեսով են պայմանավորված կենսոլորտի գոյատևումն ու զարգացումը։ Տեղին է շեշտել, որ այդ անընդհատ ու հավիտե-*

նական պրոցեսը՝ կենսաբանական նյութերի շրջանառությունը, հիմնականում կատարվում է, այսպես կոչված, «ինքնապարփակ» ճանապարհով, այսինքն՝ առանց արտադրության մնացուկների ու թափոնների:

Ինչպես հայտնի է, օրգանական նյութի սինթեզը կանաչ բույսերում կատարվում է արեգակնային էներգիայի շնորհիվ, չնայած արևի հսկայական էներգիայի միայն 0,1—0,2 տոկոսն է օգտագործվում բույսերի կողմից օրգանական նյութ սինթեզելու նպատակով: Սակայն դրա քանակն այնքան մեծ է, որ այդ ճանապարհով օրգանական նյութի զգալի կուտակումներ են առաջանում: Մեր մոլորակի վրա ֆոտոսինթեզի միջոցով ամեն տարի ձևավորվում է 170 միլիարդ օրգանական նյութ: Այսինքն՝ ամեն մի հեկտարից ստացվում է մոտ երեք տոննա կենսազանգված: Այդ մեծաքանակ սինթեզված օրգանական նյութի միայն որոշ մասն է օգտագործվում բույսերի կողմից իր կենսական պահանջները բավարարելու նպատակով, մյուս մասը՝ կոնսումենտների կողմից, մի մասն էլ վերամշակվում է ռեդուցենտների միջոցով, իսկ մնացածը տորֆի, ածխի, հերձաքարի ձևով մնում է երկրագնդի խորքերում:

Երկրակենսահամակեցությունները բնորոշվում են տարբեր նյութաէներգետիկական տենդենցներով, ընդգրկում տարբեր տեսակ բույսեր ու կենդանիներ, արտադրում տարբեր քանակությամբ կենսազանգված: Համեմատաբար ցածր արտադրողականություն ունեն անապատը և տունդրան: Բավականին արդյունավետ են անտառազանգվածները, մասնավորապես բարձրարդյունավետությամբ աչքի են ընկնում արևադարձային անտառները:

Օրգանական աշխարհը, այդ թվում և մարդը, լինելով մեր մոլորակի երկարատև պատմական զարգացման արդյունք, առավել չափով են հարմարված երկրագնդի բնական պայմաններին: Ժամանակակից մարդը թափանցում է նոր միջավայրեր՝ տիեզերքի անհունները, ծովային խորությունները: Թվում է, թե, ընդլայնելով իր կենսաբանական հարմարվածության շրջանակները, մարդը ևս ազատվում է էվոլյուցիոն անցյալի կապանքներից: Սակայն այդպես չէ: Տիեզերքում և մյուս վայրերում մարդն իր գոյությունը պահպանում է երկրային միկրոմիջավայր ստեղծելու միջոցով: Մարդկությունը, որպես կենդանի նյութ, նկատում է Վ. Ի. Վերնադսկին, անքակտելիորեն կապված է կենսոլորտի նյութաէներգետիկ պրոցեսների հետ: Հասարակությունը ոչ մի րոպե չի կարող ֆիզիկապես անկախ մնալ կենսոլորտից, այսինքն՝ երկրային բնական շրջապատից: Հետևապես, կենսոլորտի պահպանումը մարդու սրբազան պարտքն է նաև այն առումով, որ կենսոլորտը մարդու բնակեցման միակ վայրն է:

Կենսոլորտի կարևոր հատկություններից է նաև նրա հարաբերական կայունությունը: Օրգանիզմների միջև գոյություն ունեցող բազմազան ու սերտ փոխհարաբերության շնորհիվ երկրակենսահամակեցությունները ձեռք են բերում զարգացման անկախություն ու հարաբերական կայունություն: Վերջինս մասնավորապես արտահայտվում է նրանում, որ երկրակենսահամակեցություններն ունակ են դիմադրողականություն ցուցաբերելու տարբեր տեսակ արտաքին ազդեցությունների հանդեպ: Երկրակենսահամակեցության այդ կարևոր հատկությունը հոմեոստազ (համակշռող) անունն է ստացել: Երկրակենսահամակեցության համեմատական կայունությունը պայմանավորված է բավականին երկար ժամանակի ընթացքում նրա կառուցվածքային-ֆունկցիոնալ գործունեության անփոփոխ կամ ավելի ճիշտ սակավափոխ վիճակում հարատևելով: Այդ կարևոր հատկությունը բնական երկրակենսահամակեցությունները ձեռք են բերել էվոլյուցիոն պրոցեսի ընթացքում: Երկարատև պատմական զարգացման բարդ ճանապարհին երկրակենսահամակեցություններն ավելի են կայունացել և մինչև իսկ արտաքին շրջապատի զգալի փոփոխման դեպքում պահպանում են իրենց կառուցվածքը և կենսագործունեության ռիթմը: Այսպես, օրինակ, սովորական խառն անտառը, որը բնորոշվում է այդ անտառին հատուկ ծառատեսակներով, կենդանական աշխարհով, խոտածածկով և այլնով, չնայած եղանակի հաճախակի էական փոփոխություններին, տարեցտարի պահպանում է իր կառուցվածքը, նյութերի փոխանակության ուղղությունը և այդ տիպի անտառին բնորոշ այլ հատկանիշներ: Այդ կարևոր հատկությունը պահպանվում



է շնորհիվ այն բանի, որ երկրակենսահամակեցություններին հատուկ է ինչ-որ չափով մեղմել շրջապատի ազդեցությամբ առաջացած շեղումները՝ վերակառուցելով համակեցության ներքին պրոցեսները: Օրինակ, ուշացած գարնան օրերին ծառերի բողբոջներն ուշ են բացվում: Արտաքին շրջապատի գերխոնավության ժամանակ ավելի ակտիվ են սկսում գործել հերձանցքերը: Մշտական կերի սպառման կամ նվազման ժամանակ կենդանիները փորձում են օգտագործել նոր տեսակի կերեր և այլն: Սակայն պետք է հաշվի առնել այն հանգամանքը, որ երկրակենսահամակեցությունների կայունությունը բացարձակ չէ, այն սահմանափակված է որոշ պայմաններով: Վերին աստիճանի անկայուն են մարդու տնտեսական գործունեության ազդեցությամբ առաջացած երկրակենսահամակեցությունները: Ամենաանկայուն երկրակենսահամակեցությունների շարքին են դասվում, այսպես կոչված, «կուլտուրական» կամ անտրոպոգեն համակեցությունները: Այսպիսիք են հացահատիկային, բանջարաբոստանային կուլտուրաների ցանքսերը, արհեստական արոտավայրերը, պտղատու այգիները, խաղողի և տեխնիկական կուլտուրաների պլանտացիաները և այլն: Անտրոպոգեն համակեցությունների կայունությունը հնարավոր է պահպանել միայն արհեստական ճանապարհով, կիրառելով տարբեր տեսակի ագրոտեխնիկական միջոցառումներ: Այստեղ առանց վնասատուների դեմ պայքար կազմակերպելու համարյա անհնար է բարձր բերք ապահովել:

Երկրակենսահամակեցությունների կայունությունը, ինչպես նշվեց, բացարձակ չէ: Տարբեր բնույթի ազդեցությունների պատճառով փոխվում են երկրակենսահամակեցության բաղադրիչ մասերը, նյութերի փոխանակության ընթացքը և այլն: Նման փոփոխություններն ընթանում են տարբեր ուղղությամբ, արագությամբ ու խորությամբ: Երկրակենսահամակեցություններն ըստ տեղի ունեցող փոփոխականության բաժանվում են երկու կատեգորիայի՝ սուկցեսիաների և ֆլուկտացիաների: Առաջին դեպքում փոփոխություններն ընթանում են որոշակի ուղղությամբ, և այդ ճանապարհով առաջացած նոր համակարգը հետադարձ ընթացք չունի: Իսկ այն փոփոխությունները, որոնք առաջանում են երկրակենսահամակեցություններում և որոշակի ուղղություն չունեն, չեն առաջացնում ընդհանուր կառուցվածքի վերակառուցում, տեղի ունեցող փոփոխությունները հետադարձ բնույթ ունեն և կոչվում են ցիկլային կամ ֆլուկտացիոն փոփոխություններ: Սուկցեսիոն փոփոխություններն առաջանում են երկրակենսահամակեցության բաղադրիչ մասերի ներքին հակասական տենդենցների զարգացման ազդեցությամբ: Սուկցեսիայի տիպիկ օրինակ կարող է ծառայել օլիգոտորֆ լճերի վերածումը սովորական ճահճի: Այդ վերափոխման պրոցեսն իրականացվում է հիմնականում նյութերի նորմալ շրջանառության խախտման հետևանքով: Ջրավազանում հանքայնացող մանրէները չեն հասցնում ժամանակին վերամշակել հոսքերի միջոցով ջրավազան լցվող օրգանական նյութերի կուտակումները, որի պատճառով վերակառուցվում են ջրավազանի բնական կառուցվածքը և ընթացող կենսական պրոցեսները: Փոխվում են օրգանական աշխարհի տեսակային կազմը, սննդային շղթայի ուղղությունը, կենսական նյութի բաղադրիչ մասերը և այլն: Ի վերջո, լիճը վերածվում է սովորական ճահճի՝ իր ուրույն կառուցվածքով, բուսական ու կենդանական կազմով, նյութերի փոխանակության նոր տենդենցներով և այլն:

Ֆլուկտացիոն փոփոխությունները երկրակենսահամակեցություններում բնորոշվում են տարբեր տևողությամբ և պայմանավորված են տարբեր պատճառներով: Տարբերակվում են երկրակենսահամակեցության գործունեության և վիճակի օրական, սեզոնային ու տարեկան ցիկլեր: Օրական ցիկլում արտահայտվում է երկրակենսակենտրոն համակարգի դիֆերենցումն օրվա տարբեր ժամերին: Ի տարբերություն ցերեկվա ժամերի, գիշերը տեղի չի ունենում ֆոտոսինթեզի պրոցես, հետևապես չի կայանում օրգանական նյութի կուտակում, չի կլանվում ածխաթթու, չի արտաթորվում թթվածին, իջնում է ջերմությունը և դանդաղում են քիմիական ռեակցիաները: Ցերեկային ապրելակերպ ունեցող կենդանիների ակտիվությունը խիստ դանդաղում է, իսկ գիշերայինը՝ ակտիվանում: Երկրակենսահամակեցությունների աշխատանքի օրական ցիկլում կարելի

է առանձնացնել առավոտյան և երեկոյան ցիկլեր. վերջիններս իրարից տարբերվում են բույսերի ֆիզիոլոգիական գործունեությամբ, կենդանիների ակտիվությամբ, այնպիսի ֆիզիկական պրոցեսներով, ինչպիսիք են՝ գոլորշիացումը, ջերմային փոփոխությունները բույսերի, մթնոլորտի ու հողի միջև և այլն։ Նման փոփոխություններ տեղի են ունենում նաև տարբեր սեզոններում և տարիներին։ Տարակերպ փոփոխությունները կարող են լինել չնչին և ծանրակշիռ, մինչև անգամ կարող են փոփոխվել երկրակենսահամակեցության բաղադրիչ մասերը։ Սակայն այս բոլոր փոփոխությունները ժամանակավոր բնույթ ունեն և անցողիկ են։ Օրական, սեզոնային և տարեկան բնական փոփոխությունները, որոնք առաջանում են արտաքին շրջապատի ազդեցությամբ, սուկցեսիաներ չեն առաջացնում, դրանք արտահայտում են երկրակենսահամակեցության կյանքի ու գործունեության օրինաչափ ռիթմիկան։ Բոլորովին այլ պատկեր է ստացվում, երբ հասարակությունը, տեխնիկայի հզոր միջոցներով անտեսելով երկրակենսահամակեցությունների զարգացման օրինաչափությունները (հաճախ անգիտակցաբար), իր կարիքները հոգալու նպատակով վերափոխում է երկրահամակեցությունները, հաճախ առանձնացնելով ամայի տարածություններ։ Ստորև բերված տվյալները կրկին վկայում են կենսոլորտի վրա հասարակության ազդեցության հզորության մասին։ Ներկա պայմաններում մոլորակի խորքերից տարեկան արդյունահանվում են 5—7 միլիարդ տոննա մետաղ, ածուխ, նավթ և այլ նյութեր, որոնց հետ միասին երկրագնդի ընդերքից հանվում են 50—70 միլիարդ տոննա տարբեր տեսակի ապարատեսակներ։ Մինչդեռ հրաբուխներից արտավիժած ապարների տարեկան քանակը կազմում է երեք միլիարդ տոննա։

Հարցն այն է, որ հասարակության ազդեցությունը կենսոլորտի վրա առայժմ չի նպաստում վերջինիս ինքնականոնավորման և ինքնավերականգնման պրոցեսներին։ Այս վիճակը երկար շարունակվել չի կարող։ Կենսոլորտի հարաբերական կայունությունը, ինչպես տեսանք, ունի իր սահմանը, որի խախտման դեպքում առաջանում են ճգնաժամային իրադրություններ և էկոսիստեմների քայքայում։ Մարդու չմտածված միջամտությունը կենսոլորտում ընթացող բնական պրոցեսներին հարուցում է դրա ինքնականոնավորման և հարաբերական կայունության. կամ, ինչպես ընդունված է ասել, հավասարակշռության խախտումներ։ Մինչդեռ արդի պայմաններում երկրակենսահամակեցությունների հարաբերական կայունության պահպանումը ամենակարևոր պրոբլեմներից է։

Հասարակության զարգացման տարբեր դարաշրջաններում տարբեր բնույթ է կրել մարդու ազդեցությունը բնության վրա և հիմնականում պայմանավորված է եղել արտադրամիջոցների մակարդակով, հասարակության սոցիալական կառուցվածքով։ Հասարակության ազդեցությունը բնության վրա, ինչպես նկատել է Ֆ. Էնգելսը, մեծ մասամբ ընթացել է անգիտակցաբար, ավելին, հաճախ այն ունեցել է քայքայիչ հետևանք։

Ֆ. Էնգելսը Աշխատանքի դերը կապկի մարդացման պրոցեսում աշխատության մեջ զգուշացնում է բնության նկատմամբ տարած հաղթանակներով հրապուրվելուց, խոսում է «բնության վրեժի» մասին՝ մարդու ոչ խելամիտ վերաբերմունքի դեպքում։ «Այն մարդիկ,— գրում է Էնգելսը,— որոնք Միջագետքում, Հունաստանում, Փոքր Ասիայում և այլ տեղերում անտառներն արմատախիլ էին անում, որպեսզի այդ ճանապարհով վարելահող ձեռք բերեին, երազել անգամ չէին կարող, որ դրանով իրենք այդ երկրների այժմյան անապատացման սկիզբը դրին, զրկելով այդ երկրները, անտառների հետ միասին, խոնավության կուտակման ու պահպանման կենտրոններից» (Բնության դիալեկտիկա, Երևան, 1969, էջ 178)։

Մինչև XX դարի 60-ական թվականները բնության պահպանության պրոբլեմը փորձում էին լուծել անձեռնմխելի տարածքների կազմակերպմամբ, այսպես կոչված, տարբեր տեսակի արգելավայրեր կազմակերպելու կամ «գենոֆոնդի պահպանման» միջոցով։ Սակայն այդ պրակտիկան լրիվ չլուծեց և չէր էլ կարող լուծել բնության պահպանության օրըստօրե բարդացող հարցե-



րը։ Անձեռնմխելիության ապահովման համար պահանջվում է արգելավայրերի տևական ընդլայնում, որը հակասում է տնտեսության զարգացման խնդիրներին։ Վերջապես, բնության պահպանության նկատմամբ նման մոտեցումը փաստորեն հակադրվում է բնական համալիրների ռացիոնալ օգտագործմանը։ Մինչդեռ բնական ռեսուրսների պահանջն օրեցօր ավելանում է, և տնտեսական շրջանառության մեջ ներգրավվում են հողային ու ջրային խոշոր զանգվածներ։

Էկոլոգիական ճգնաժամը հիմնականում պայմանավորված է կենսոլորտի ամբողջականության ու ինքնականոնավորման համակարգերի խախտմամբ։ Իհարկե, առանձին նմուշների կամ տեսակների պահպանումը կարևոր նշանակություն ունի, սակայն այդ չէ բնության պահպանության պրոբլեմի գլխավոր ուղին։ Սննդային օղակների խախտումները նույնպես կարող են հարուցել լուրջ բացասական երևույթներ։ Սակայն այդ պրոցեսն ավելի քիչ նշանակություն ունի կենսոլորտում գոմեոստազի մեխանիզմների պահպանության համար, եթե նկատի ունենանք, որ առանձին տեսակների անկումը օրինաչափ երևույթ է կենսական ձևերի էվոլյուցիայում։

1970-ական թվականներին միջազգային կազմակերպությունների նախաձեռնությամբ ձևավորվեց շրջակա միջավայրի մոնիտորինգի գլոբալ համակարգը։ Մոնիտորինգ ասելով հասկացվում է անտրոպոգեն ազդեցության ներքո էկոլոգիական համակարգերի և դրանց բաղադրիչ տարրերի սիստեմային ուսումնասիրությունները, գնահատականներն ու նախագուշակումները։ Մոնիտորինգի հիմնական նպատակն է գլոբալ մասշտաբով մշակել և իրականացնել այնպիսի ծրագիր, որն ապահովի կենսոլորտի ամենաբարենպաստ վիճակը։ Այսինքն՝ ապահովել կենսոլորտի հարաբերական կայունությունը, հետևապես և՝ կյանքի հարատևությունը։ Այդ հնարավոր է նյութերի և էներգիայի կենսաքիմիական շրջանառությունների կառավարման միջոցով։

Մոնիտորինգի արմատական տարբերությունը բնության պահպանության վերաբերյալ գոյություն ունեցած նախկին բոլոր տեսակետներից այն է, որ ուսումնասիրման ու պահպանման ենթակա են ոչ թե կենսոլորտի առանձին մասերը և տարրերը, այլև կենսոլորտն ամբողջովին, իր կենդանի ու անկենդան նյութերի կոմպլեքսով, գոմեոստազի և ինքնականոնավորման համակարգով։ Նման համապարփակ մոտեցումը կենսոլորտի պահպանման վերաբերյալ ամենևին չի ժխտում բնության պահպանության մյուս ձևերը։

Մոնիտորինգի ծրագրով նախատեսված հարցերը տարբեր երկրների կողմից ուսումնասիրվում են 8 գլոբալ (մայրցամաքային), 77 բազային և 626 կենսոլորտային ռեգիոնալ կայաններում։ 1978 թ. սեպտեմբերին գումարվեց համամիութենական գիտական խորհրդակցություն՝ նվիրված մոնիտորինգին։ Մինչ այդ 1976 թ. տեղի էին ունեցել սովետա-ամերիկյան և սովետա-անգլիական գիտաժողովները՝ նվիրված նույնպես մոնիտորինգին։

1983 թ. սեպտեմբերի 27-ին Մինսկում գումարվեց կենսոլորտային արգելոցների առաջին միջազգային կոնգրեսը։ Այդ համաժողովում քննարկվեցին այդ տիպի արգելոցների այսօրվա և վաղվա հրատապ պրոբլեմները։ Կոնգրեսն ընդունեց կենսոլորտային արգելոցների, այսպես կոչված, գործուն պլան, որի նպատակն է աջակցել միջազգային համագործակցության էկոլոգիական հետազոտությունների ծավալման, կադրերի պատրաստման կազմակերպման, բնական վերականգնվող ռեսուրսների կառավարման հարցերին։

Սովետական Միությունն ակտիվ մասնակցում է բնության ուսումնասիրման ու պահպանման բոլոր միջազգային միջոցառումներին։ Մարդ և կենսոլորտ ծրագրի իրականացմանը մասնակցում են տասնյակ գիտահետազոտական ինստիտուտներ ու բարձրագույն ուսումնական հաստատություններ։ Համաձայն շրջակա միջավայրի համաշխարհային կոմիտեի որոշման, Սովետական Միությանը հանձնարարված են կենսոլորտի կենսաքիմիական ցիկլերի ուսումնասիրությունները և այդ բաժնի գիտական կոորդինացիան՝ գլոբալ մասշտաբով։

Ինքնին հասկանալի է, որ շրջակա միջավայրի մոնիտորինգի ծրագրի հաջող իրականացումը հնարավոր է տարբեր երկրների միջև վստահության ամրապնդման և խաղաղության սահմանման դեպքում։

Բնության պահպանումը և նրա ռեսուրսների արդյունավետ օգտագործումը պետական կարևորագույն պրոբլեմներից են։ Հասարակության ու բնության ներդաշնակ վիճակով է պայմանավորված ժողովրդական տնտեսության համաչափ զարգացումը, հետևապես և՝ ազգաբնակչության բարեկեցության բարձրացումը։ Այդ ոլորտում զգալի աշխատանք է տարվում Սովետական Միությունում և, մասնավորապես, Սովետական Հայաստանում։

Ընկեր Կ. Ս. Դեմիրճյանը ՀԿԿ Կենտկոմի 1983 թ. ապրիլյան պլենումում անդրադարձավ այդ ասպարեզում կատարված խոշոր աշխատանքներին, Հայաստանի էկոլոգիական վիճակի հետագա բարելավման անհրաժեշտությանը։

Այժմ կոմպլեքսանյորեն լուծվում է Սևանի բնական միջոցների պահպանության և օգտագործման պրոբլեմը։ Այսօր մեծ գոհունակությամբ կարելի է ասել, որ լճի մակարդակն աստիճանաբար բարձրանում է։ Դադարեցված է Հրազդանի հանքաքիմիական կոմբինատի շինարարությունը։ Ավարտին է մոտենում նրա վերապրոֆիլավորումը ժամանակակից հզոր մեքենաշինական ձեռնարկության։ Փակվել է «Նաիրիտ» գիտաարտադրական միավորման կարբիդի՝ արտաքին շրջապատի համար վնասակար արտադրությունը։ Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատի թափոնների օգտագործումն այնպիսի աստիճանի է հասցված, որ դրանք այլևս չեն վնասի շրջակա բուսականությանը։

Այդ ամենով հանդերձ, պետք է ասել, որ, չնայած ձեռք առած խոշոր պետական միջոցառումներին և կապիտալ մեծ ներդրումներին, շրջակա միջավայրի, մասնավորապես օդային ավազանի վիճակը մեծ քաղաքներում և արդյունաբերական կենտրոններում բարվոք չէ։ Այդ երևույթը հիմնականում բացատրվում է հումքի արդյունահանման ու վերամշակման դեռևս ցածր տեխնոլոգիայի առկայությամբ։ Ասենք, որ առկա տեխնիկական միջոցները, որոնք կոչված են մաքրելու արդյունաբերության, գյուղատնտեսության և կոմունալ տնտեսության թափոնները, լիարժեք չեն գործում։ Բացի դրանից մինչև օրս չկան ավտոմոբիլային տրանսպորտի արտանետած թունավոր գազերը կանխելու արդյունավետ միջոցներ։ Սակավաթափոն և անթափոն տեխնոլոգիայի մշակումը և արմատավորումը ժողովրդական տնտեսությունում, որը լրիվ կարող է լուծել շրջակա միջավայրի աղտոտման հարցը, կարելի է ասել, որ դեռևս գտնվում է սաղմնային վիճակում։

1983 թ. հուլիսի 27-ին կայացած ՍՍՀՄ Գերագույն սովետի և Ազգությունների սովետների՝ բնության պահպանության և բնական միջոցների ռացիոնալ օգտագործման հանձնաժողովների համատեղ նիստում քննադատվեց գունավոր մետալուրգիայի մինիստրությունն այն բանի համար, որ այնտեղ, ուր տեղադրված են մինիստրության ձեռնարկությունները, չի նկատվում օդային ավազանի աղտոտվածության նկատելի իջեցում։ Ավելին, որոշ տեղերում հակառակը՝ նկատվում է օդային ավազանի աղտոտվածություն, մինչև իսկ դրա բարձրացում։ Տեղադրված փոշեգազամաքրման սարքավորումների մեկ երրորդը չի գործում կամ գործում է ցածր արդյունավետությամբ։

Հարկ է նշել, որ դեռևս բարվոք չէ Երևանի, Կիրովականի, Ալավերդու և Արարատի օդային ավազանների վիճակը։ 1983 թ. օգոստոսի 4-ին ընդունվեց ՀԿԿ Կենտկոմի և ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի համատեղ որոշումը «Հայկական ՍՍՀ-ի քաղաքներում մթնոլորտային օդի պահպանման մասին», որտեղ մշակված են գործուն միջոցառումներ օդային ավազանների բարելավման նպատակով։

Այսօր մարդկությունը որոնում է շրջակա միջավայրը աղտոտումից զերծ պահելու նորանոր ուղիներ։ Դրանցից մեկը ինքնապարփակ, այսինքն՝ անմնացորդ կամ սակավամնացորդ արտադրության կազմակերպումն է՝ բնական նյութերի փոխանակման էկոլոգիական ցիկլի ընդօրինակով։

Ինչպես հայտնի է, կենսոլորտի գոյության սկզբնաղբյուրը համարվում է նյութերի էկոլոգիական ցիկլը, որը հիմնականում ընթանում է ինքնապարփակ ձևով։ Նման էկոլոգիական պրոցեսում ցիկլի մի փուլում առաջացած մնացուկներն անհրաժեշտ հումք են ծառայում մյուս փուլի համար։

Էկոլոգիական ցիկլայնությունը ենթակա է կիբեռնետիկական ինքնականոնավորման օրենքին, որի հիման վրա, անորոշ երկար ժամանակի ընթացքում պահպանվում է միջավայրի հարաբերական հավասարակշռությունը։ Ինքնին հասկանալի է, որ անմնացորդ արտադրությունում շրջակա միջավայրի աղտոտումը լիովին բացառվում է։ Սակայն, ինչպես նշվեց, արդյունաբերության շատ ճյուղերում հումքի արդյունահանման ու վերամշակման տեխնոլոգիան չի ապահովում անմնացորդ կամ սակավամնացորդ արտադրությունը։ Արդյունաբերության որոշ ճյուղերում սկզբնական հումքի կեսից ավելին մնում է արտադրության թափոնների մեջ, որը չընդգրկվելով նյութերի փոխանակման բնական էկոլոգիական ցիկլում, աղտոտում է շրջակա միջավայրը։ Չմոռանանք, որ այդ արտադրության թափոնները պարունակում են արժեքավոր նյութեր, որոնք արտադրության չկատարելագործված տեխնոլոգիայի հետևանքով անվերադարձ կորչում են։

Արտադրության ինքնապարփակ տեխնոլոգիայի մշակումն ու արմատավորումը արդյունաբերության, տրանսպորտի և գյուղատնտեսության տարբեր ճյուղերում պահանջում են ժամանակ և սերտորեն կապված են գիտության ու տեխնիկայի հետագա զարգացման հետ։ Կարելի է համաձայնել այն կանխագուշակումների հետ, որ այսօր մարդկությունը կանգնած է արտադրության ինքնապարփակ պրոցեսների նախօրյակին։ Սակայն մինչև արտադրության անմնացորդ տեխնոլոգիային անցնելը պետք է գործադրել կազմակերպական ու տեխնիկական բոլոր միջոցները, որոնք այս կամ այն չափով կնպաստեն շրջակա միջավայրի աղտոտման նվազեցմանը և չեզոքացմանը։ Այս առումով կարևոր նշանակություն ունեն կեղտաջրերի մաքրման կայանների և փոշեորսիչ ու գազամաքրիչ սարքավորումների տեղադրումը, դրանց անխափան աշխատանքի ապահովումը։

Ընկ. Կ. Ու. Չեռնենկոն ընտրողների հետ ունեցած հանդիպման ժամանակ արտասանած ճառում հասարակության ուշադրությունը վերստին հրավիրեց շրջակա միջավայրի պահպանության կարևորագույն նշանակության վրա և առանձնապես շեշտեց այդ ասպարեզում տեղական սովետների գործունեության ուժեղացման անհրաժեշտությունը։

---

# ՎԱՍՏԱԿԱԾ ՀԵՂԻՆԱԿՈՒԹՅՈՒՆ

**ԱՇՈՏ ԱՂԱՆԻԿԻ ՆԻԿՈՅԱՆ:** Շատ սովորական անուն-ազգանուն, բայց ուշագրավ կենսագրություն ունի այս մարդը: Բազում զրկանքներ է տեսել Աշոտ Նիկոյանը, թափառել և վերջապես բնակություն հաստատել Արեգ գյուղում, տուն-տեղ դրել, հողագործի ազնիվ աշխատանքով հաղթանակներ ձեռք բերել, արժանացել փառքի ու պատվի: Այսօր սոցիալիստական աշխատանքի հերոս, վաստակավոր մեխանիզատոր կոմունիստ Աշոտ Նիկոյանը կրկին շարքում է:

— Բարև՛, Աշոտ հայրիկ,— դիմեցի ես:

— Բարո՛վ, տղաս:

Մեր առաջին իսկ հանդիպումից զրույցի բռնվեցինք վաղեմի ծանոթների պես, այդ անկաշկանդ մթնոլորտում իմ առջև բացվեցին նրա կյանքի տարեգրության էջերը:

Մեր մտերմիկ ձեռքսեղմումից զգացի նրա ուժն ու կորովը: Շուրջ յոթնւկես տասնամյակ ապրած երկրագործը այդ ուժն առել էր մայր հողից, դարձել բերք ու բարիք ստեղծող:

— Աշոտ հայրիկ, պատմիր, խնդրում եմ, կյանքում քո առաջին ուրախության մասին:

Նա լարվեց անակնկալ պահանջից, լռեց, ասես, քիչ առաջվա համով-հոտով խոսող Աշոտ հայրիկը չլիներ, դարձավ մտածկոտ:

— Լավ չէ, որ մարդ մարդուն ավելորդ հոգսի տակ է գցում: Ընդհանրապես, ես ուզում եմ իմ առաջին տխրության մասին խոսել: Անհոգ մնա՝ կարճ կկապեմ...— Հայր կորցնող մարդը,— տխուր շարունակեց նա,— մի տեսակ շուտ է մեծանում, հոգսի մեջ ընկնում, բայց հոր սերը անսպառ ուժ է տալիս զավակին, դառնում զորավիգ ողջ կյանքի ընթացքում: Տխրել պետք չէ. միայն ինձնով չէր: Մի ո՞ղջ ժողովրդի ճակատագիր էր: Ավե՞ր էր, արյուն, գա՞ղթ...

Այդ պահին նրա խոնավացած աչքերը մշուշվել էին: Պարզորոշ զգացի, որ, այո՛, ուժեղ տղամարդն էլ է խոցելի վշտից լաց լինում:

Իսկ հետո մեկեն կերպարանափոխվեց, նույնիսկ ժպիտ երևաց դեմքին և, ձեռքը դնելով ուսիս, հայրաբար վրա բերեց.

— Հիմա ինչքան ուզում ես ուրախությունների մասին պատմեմ: Ա՛յ,— և ձեռքը պարզեց աջ ու ձախ,— տեսնում ես, ի՞նչ կյանքով եմ ապրում՝ շեն տուն-տեղ, հարս ու տղա, անուշիկ թոռնիկներ: Երջանի՞կ եմ, գո՛հ: Միայն թե աշխարհը խաղաղ մնա: Աստված չանի հանկարծ...

Խոսում էր խաղաղ օրերի զինվորը, հողի զինվորը...

Երանի միշտ այդպես լիներ: Իսկ այն օրերին, երկնքում մութ, մահաբեր ամպեր էին կուտակվում: Թշնամին թակարդներ էր լարում, արյունալի օրեր... Աշխարհում պատերազմ եղավ:

— Նոր էինք ավարտել խոտհարքի աշխատանքները,— այդ օրերի մասին պարզորոշ հիշում է նա,— կողք-կողք կալերում դիզվել էին խոտի ու կորնգանի դեզերը: Կերն առատ էր: Հերթը հացահատիկային կուլտուրաներինն էր. եռանդով էինք նախապատրաստվում դրանց բերքահավաքին: Առատ բերք էր աճել դաշտերում: Մեր ուրախությանը չափ չկար: Ոչ մեկը չէր ուզում ետ մնալ մյուսից: Բերքահավաքը լավ սկսելու համար ժողով գումարեցինք, վերցրինք բարձր պարտավորություններ: Իսկ հաջորդ օրը... 1941 թվականի հունիսի 22-ն էր...

Նրա համար դժվար էր շարունակելը: Աշխարհում պատերազմ էր սկսվել, մահու և կենաց կռիվ: Իսկ նա թե՝ «Ո՞նց թե պատերազմ է, բա հա՞ցը, բերքահավա՞քը...»:

Եվ նրա դեմքին նորից գծագրվեց հին օրերի մտահոգությունը. շատերն էին մեկնել ռազմաճակատ հենց բերքահավաքի առաջին օրը: Շատերն էլ գնացին ու էլ ետ չեկան. Սուրենը, Բարդուղը, Վաղարշակը տուն չդարձան, չցանեցին, չհնձեցին...

Ճիշտ է, Աշոտ հայրիկը չէր կռվել երկրորդ աշխարհամարտում, չէր հասել Բեռլին, բայց կռվել էր համայնական դաշտում և անարգ թշնամուն հաղթել անուշաբույր հացով և այսօր էլ, վաստակած մարդու հպարտությամբ ու իրավունքով, վայելում է անդուլ աշխատանքով ձեռք բերած հաղթանակների քաղցրությունը...

Հաղթանակնե՞ր: Դրանք շա՞տ են: Դրանք տարիների մեջ են, տարիների անձնվեր աշխատանքով սրբագործված... Նրա կյանքի պատմությունն ուսանելի դաս է, որ պետք է սերտեն ո՛չ միայն նրանք, ովքեր ապրում են մեր կողքին, այլև նրանք, ովքեր դեռ նոր են լույս աշխարհ գալու...

Տխուր է եղել մանկությունը, մի կտոր հացի համար թափառել է գյուղից գյուղ, հարուստների մոտ բատրակություն արել, քիչ է քնել, շատ բանել: Ապրել էր պետք, և ապրել է տառապանքով, հաստատ համոզված, որ հեռու չէ լուսավոր օրը՝ պայծառ գալիքը:

Եվ եկավ այդ օրը: Արդեն խանդավառ պատանի էր, երբ հայրենի գյուղում՝ նախկին Փիրմալաքում, այսօր արդեն շեն ու նորոգ Արեգում կոմերիտական բջիջներ ստեղծվեցին: Անմոռաց է նրա համար 1926 թվականը: Նոր կյանքի վառ երազներով լեցուն, ընդունվեց կոմերիտմիության շարքերը: Բացվեց գործունեության լայն ասպարեզ: Առաջիններից մեկն էր նա, որ շրջկենտրոնի մեքենատրակտորային կայանում սովորեց մեխանիզատորի մասնագիտությունը: Հետո կատարելագործվեց Լենինականի գյուղմեխանիզացիայի դասընթացներում և կոմբայնավար-մեխանիկի մասնագիտությամբ վերադարձավ Թալին՝ մեքենատրակտորային կայանում աշխատելու:

Այսօր էլ տարեցները, Աշոտ հայրիկի հասակակիցները, լավ են հիշում նրան Սուսերում ու Յամաքասարում, Գետափում ու Սորիկում: Այսօր դժվար է հիշել բոլոր նրանց անունները, ովքեր տարիների ընթացքում անցել են նրա ձեռքի տակով, դարձել իրենց գործի հմուտ մասնագետներ՝ կոմբայնավար-մեխանիկներ: Նա առաջիններից մեկն էր, որ 1943 թվականին արժանացավ «Կոմբայնային բերքահավաքի վարպետի» կոչման:

— Բերքահավաքի օրերին հոգնելու մասին ավելորդ էր մտածելը, նա է սովորեցրել մեզ այդ օրենքը,— զրույցին միանում է Աշոտ Նիկոյանի սաներից մեկը՝ արդեն հմուտ մեխանիզատոր Արամայիսը և ավելացնում,— ասես, երկաթից լինի քեռի Աշոտը. ո՞վ կփորձի ոտք մեկնել նրա հետ: Այսօր էլ, որ պատկառելի տարիքում է, մեզ նեղում է... իր դիմացկունությամբ: Մարդը հողի մարդ է, գործի մարդ...

Ու հիշում են Աշոտ հայրիկի կյանքի հիշարժան օրերից մեկը, գուցե ամենահիշարժանը: 1939 թվականի ամռան գիշերն արդեն կիսվել էր, բայց նրա կոմբայնի աղմուկը չէր դադարում: Անմոռաց, լուսնյակ գիշեր էր: Նա չզգաց էլ, թե ինչպես էր կողքին հայտնվել Սարոնչիի (այժմ Հացաշեն) կոլտնտեսության նախագահ, հին բոլշևիկ Հարություն Ղազարյանը:

— Ուզեց ինձ գովել,— պատմում է Նիկոյանը,— հետո թե՝ ուշ է, գնա հանգստացիր, իսկ վաղը կմտնես «Մայիսի մեկ» հանդամասը, կհնձես, կկանգնես կենտրոնում: Հարությունի հնձելը հասկացա, բայց կենտրոնում կանգնելը գլուխս չմըտավ...

— Վաղը կիմանաս,— հանելուկի պես ասաց ու ծռեց ձիու գլուխը:

Իսկ գաղտնիքը, իրոք, պարզվեց հաջորդ օրվա աշխատանքային կարճատև հանգստի պահին: Բերքահավաքի դաշտ էին եկել շրջանի գրեթե բոլոր ղեկավարները: Պահն անսովոր էր: Ավելի շատ հուզվել, անհամբեր էին դարձել Աշոտի պատանի օգնականները: Խոսել սկսեց կուսշրջկոմի քարտուղար Գուրգեն Կարապետյանը:

— Այսօրվա ժողովը շատ է առանձնահատուկ. բերքահավաքի այս ծանր օրերին, ընկեր Աշոտ Աղանիկի Նիկոյանին աշխատանքից չկտրելու նպատակով, որոշեցինք նրան ՍՄԿԿ շարքերը որպես անդամության թեկնածու ընդունել դաշտում: Այդ պատվին նա լիովին արժանի է, առաջին հերթին՝ անձնվեր աշխատանքի համար:

Այդ օրը շատերը նրան գովեստի խոսքեր ասացին, իսկ նա՝ սաստիկ հուզված, հազիվ կարողացավ շնորհակալություն ասել, իսկ հետո, երբ խաղաղվել էր փոքր-ինչ, խոստացավ այդուհետ ավելի լավ աշխատել: Նա հավատարիմ մնաց իր խոստմանը և 1943 թվականին լավագույն աշխատանքի համար արժանացավ հայրենիքի ամենաբարձր պարգևին՝ Լենինի շքանշանի: Նրա աշխատանքային սխրանքը այն ծանր օրերին այսօր էլ անհավատալի է թվում:

Հաց էր պետք կարմիր բանակին, գյուղում մնացած անօգնական երեխաներին ու ծերերին... Ոչ մի հատիկ չթողնել դաշտում...

Իր պարտքը մեծ նվիրումով է կատարել նա կյանքի բոլոր փուլերում: Եվ այսօր, երբ թղթին եմ հանձնում այս տողերը, նա կրկին իր տարերքի մեջ է, միշտ հաճելի հոգսերի մեջ, միշտ այնտեղ, ուր զգացվում է նրա կարիքը:

Ու կրկին ցավով հիշում է.

— Բոլորը մեկնեցին ռազմաճակատ: Հրայրը, Սուրենը, Վարոսը... Եվ էլի շատերը: Նրանք գնացին կռվելու, իսկ արտերը մնացին հնձելու: Հնձվորն էլ զինվոր էր և, ինչպես մեկը, առյուծի պես, մի քանի հոգու նման էր կռվում, այնպես էլ մեկը մի քանիսի փոխարեն պետք է հնձեր... Ես էլ ցանկություն հայտնեցի ռազմաճակատ մեկնել, բայց մերժեցին. դաշտն էլ յուրատեսակ ռազմադաշտ է, բանակին հաց է պետք: Փորձեցի համոզել՝ ես ումի՞ց եմ պակաս: Չստացվեց: Այո՛, ընկերներս մեկնեցին ռազմաճակատ: Իսկ երբ հաջորդ օրը գնացի ՄՏ կայան, տեսարանը տխուր էր. կոմբայնները որբացել էին, հիմա ո՞ւմ հետ եմ աշխատելու: Բայց գլուխ կորցնելու ժամանակը չէր: Անմիջապես գործի անցա. տարբեր գյուղերից 10—13 տարեկան տղաներին հավաքագրեցի, և շարունակեցինք ընդհատված գործը՝ բերքահավաքը: Պատանի օգնականներս ժամերով էին հասակ առնում: Ժամանակն այդ էր պահանջում...

Եվ հիմա, երբ Աշոտ հայրիկը հիշում է այդ ծանր օրերը, իմ սիրտն էլ է ցավում այն պատանիների համար, ովքեր, դեռ մի մատ, նստում էին տրակտորի կամ կոմբայնի ղեկի մոտ և քունն աչքերին աշխատում... Երբեմն էլ տղաների քունը հաղթում էր: Հարկավոր էր մի հնար գտնել: Եվ նա գտավ: Մի փոսի մեջ ջուր հավաքեց: Հենց որ տղաները հոգնում էին, քունը հաղթում էր.

— Գնացեք ձեր «ավազանում» լողացեք,— ասում էր նա:

Չորս տարի շարունակ, պատերազմի ողջ ընթացքում... Հոգնում էին, բայց չէին զիջում դիրքերը, ինչպես ռազմի դաշտում՝ հայրենասեր մարտիկները: Այլ կերպ հնարավոր չէր, հայրենիքի սերը, հողի սերը այդպես էր պահանջում: «Պարտավորվում եմ 300-ի փոխարեն հնձել 400 հեկտար»: Եվ խոսքի տերն էր լինում: Նա պատմում է, իսկ ես հիշում եմ Գեղամ Սարյանին.

*«Այնտեղ կռվում էին, այստեղ հնձում էին՝*
*Ամեն մեկը դարձած երեք կոմբայնավար»:*

Մեկը՝ երեքի փոխարեն: Այդպես էր այն օրերին, 3—4 ժամ էին քնում մարդիկ: Եվ անքուն գիշերների հոգնությունը պսակվեց հաղթանակով. օրական՝ 700—800 ցենտներ հաց...

1952 թվականին Աշոտ Նիկոլյանին շնորհվեց սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչում: Պարգևի մասին նա լսեց բերքահավաքի օրերին, դաշտում, բայց գործը կիսատ չթողեց, շարունակեց հունձը:

Մեր հանդիպման ժամանակ հստակ զգացի, որ ամեն բարձր պարգևի դեպքում Նիկոլյանը ոչ թե հանգստանում, այլ հաճելի խռովք է ապրում: Իսկ հիշողը՝ անհանգստություն: Եվ միշտ վառ է մնացել նրա հոգում մարդկային ամենանվիրական հատկանիշը՝ մարդկանց օգնելու ցանկությունը, որը և առավոտ կանուխ նրան բերել էր գյուղի տրակտորային կայան: Պարզվել է, որ արհեստանոցում պղօղակների պահանջ կա: Ուրիշ էլ ո՞ւմ, եթե ոչ նրան էին դիմել մարդիկ, ու նա շտապել էր շրջկենտրոն, դիմել ում որ հարկն է, և գործը գլուխ էր բերել:

— Ամեն տեղ ինձ ընդունում են սիրով,— ասաց նա,— ավելին՝ կատարում են իմ պահանջը: Շատ համառն եմ, գործը ինչո՞ւ տուժի: Ախր, ամառ է...— և լայն ժպտաց՝ հաղթողի ժպիտով...

Մարդիկ հարգում են նրան, գնահատում: Արեգում զուր չէ, որ Աշոտ հայրիկի կենսագրությունը շատերին է լավ հայտնի. առաջին հերթին՝ նրա երբեմնի սաներին՝ Հովսիկին ու Երջանիկին, Ռազմիկին ու Սերյոժային, Արամայիսին ու Յուլիկին, նրանց, որ այսօր հասցրել են դառնալ համայնական դաշտերի հերոսներ ու բարիք են ստեղծում, շենացնում իրենց ու ուրիշների կյանքը:

Ուրախության օրեր շատ է ունեցել Աշոտ հայրիկը: Ու հիշում է դրանցից մեկը: Սուսեր գյուղում հունձ էր անում իր պատանի գործընկերների հետ: Մոտ մեկ ամիս էր անցել այն բերկրալի օրից, ինչ մեր երկիրն իր սուրը փառքով դրել էր պատյան: Հնձում էին, ու մի պատանի վազեվազ գալիս էր Աշոտ ապորը մի նոր ուրախալի լուր հաղորդելու: Նրա աչքն էլ ճամփին էր, ականջը՝ ձայնի:

— Ապե՛ր, Աշոտ ապե՛ր, աչքալուսանք, աչքալուսա՛նք... Շուշան զալոն զույգ է ունեցել՝ մի տղա, մի աղջիկ...

Ու նա աշխարհով մեկ եղավ:

— Տես, է՛, Շուշանս էլ ինձնից ետ չմնաց...

Տարիներ անց՝ 1954 թվականին, Մոսկվայում նաև մասնակցեց մեքենատրակտորային կայանների աշխատողների համամիութենական խորհրդակցությանը, որպես աշխատանքի հերոս: Հայաստանից նա միակն էր, դա մե՛ծ պատիվ էր...

— Մարդիկ միշտ էլ իրարից սովորելու պահանջ ունեն, թե չէ միտքը կանգ կառնի, առաջ գնալ չի լինի,— ասաց նա,— և թող ոչ մեկն էլ չմտածի, թե ինքն ամենազոր է: Ժամանակն իրենն է թելադրում:

Ապա, մի փոքր լռելով, ավելացրեց.

— Ամեն մարդ միշտ էլ կարիք ունի ջերմ, բարի խոսքի, ոչնչի հետ չի կարող համեմատվել գովասանքի թևավորող ուժը. մազերս ճերմակել են ու տարիների հեռվից ավելի լավ եմ տեսնում, թե գովեստի ուժով ի՞նչ սարեր ենք շրջել պատանի օգնականներիս հետ:

Եվ ավելի հաստատուն է դարձել նրա համոզմունքը. «Պետք է լավ աշխատել, ավելին անել, քանի որ ամեն գործ ըստ արժանվույն է գնահատվում մեր երկրում: Մարդը՝ հատկապես աշխատավոր մարդը, իր երկրի տերն է: Ավելիով է փոխհատուցվել տարիների իմ վաստակը— ոսկե մեդալ, «Պոբեդա» ավտոմեքենա»,— վերապրելով այն ժամանակվա ուրախությունը, պատմում էր Աշոտ Նիկոլյանը, որ միշտ ապրել էր մարդկանց մեջ, մարդկանց համար:

Հանրապետության Գերագույն սովետի դեպուտատը ակտիվ մասնակցում է հայրենի գյուղի վերակառուցմանը:

Աշոտ հայրիկ են ամենքը կոչում նրան. նա հպարտ է և իր լավ զավակներով, որ ձգտել են նմանվել նրան, լինել ազնիվ, աշխատասեր, մարդկանց միշտ օգտակար: Նրանցից ավագը՝ Ռազմիկը, տասը տարեկան էր, երբ հայրենիքը վտանգի մեջ էր, բանակին հաց էր պետք, նա հոժարակամ դարձավ հոր օգնականը բերքահավաքի օրերին: Բանակին օգնելու, կոլտնտեսության դաշտերում աշխատելու համար Ռազմիկը պարգևատրվում է «Հաղթանակի համար» մեդալով: Տասը տարեկանում մեդալակիր: Հանաք բան չէ, Աշո՛տ հայրիկ: Ռազմիկը հիմա էլ իր գործին է՝ շրջկենտրոնում: Շեն տուն ու տեղ ունի, համերաշխ ընտանիք, լուսերես թոռնիկներ: Երջանիկ հայր ու բախտավոր պապիկ է Ռազմիկը:

Մյուս զավակները ևս գտել են իրենց տեղը կյանքում՝ աշխատում են, բարիք ստեղծում, ապրում երջանիկ կյանքով: Աղջիկը՝ Գոհարիկը, երեք երեխաների մայր է, աշխատում է գյուղում: Տղաներից երկուսը՝ Վաչագանն ու Ռուբիկը, իսկ աղջիկներից մեկը՝ Ամալյան, ապրում և աշխատում են Երևանում: Ռաֆիկն ավարտել է պոլիտեխնիկական ինստիտուտը և այժմ ինժեներ է Մինսկում...

— Իսկ ես,— ուզում է ավարտել իր խոսքը Աշոտ Նիկոլյանը,— եթե նորից ծնվեմ, կդառնամ մեխանիզատոր: Հող կհերկեմ, սերմ կցանեմ, արտ կհնձեմ, որ միշտ առատություն ու խաղաղություն լինի աշխարհում...

Եվ շարունակում է երկրագործի իր ամենաբարի աշխատանքը, կրկին հնչում է նրա երգը՝ անկեղծ զգացումով, բայց արդեն ծերունական ձայնով.

*«Աշխարհքի շեն վեր գութնին էր,*
*Գութան չըլնիր, աշխարհքն ի՞նչ էր»:*

Դա նաև նրա հոգու երգն է, հողի՛ երգը, հացի՛ երգը... խաղաղության, կյանքի հարատևության երգը...

Ս. ՊԱՏՅԱՆ

## Երիտասարդ գիտաշխատողի ամբիոն

# ՄԱՄՈՒԼԸ ԵՎ ՀԱՆՐԱՅԻՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՈՒՄԸ

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ պաշտպանական և տնտեսական հզորությունն ամրապնդելու, սոցիալական արմատական պրոբլեմները լուծելու ճանապարհին ՍՄԿԿ-ն մշտապես հենվել է մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի միջոցների, մասնավորապես մամուլի վրա, այն համարել մասսաների վրա ազդելու, նրանց լուսավորության ու կազմակերպման հզոր զենք: Մամուլը եղել ու մնում է ժողովրդի հոգևոր կյանքի հաստատման վճռական միջոցը, կուսակցական-հասարակական կյանքի գլխավոր բնագավառներից մեկը: Զուր չէր Վ. Ի. Լենինն ասում, որ մամուլը ոչ միայն կոլեկտիվ ագիտատոր ու պրոպագանդիստ, այլև կոլեկտիվ կազմակերպիչ է: Ըստ ամենայնի արժեքավորելով մամուլի դերն ու նշանակությունը՝ ՍՄԿԿ-ն մեծ ուշադրություն է նվիրել ու նվիրում է դրա գաղափարական մակարդակի բարձրացմանը, բովանդակության խորացմանն ու ներգործունության ուժեղացմանը:

ՍՄԿԿ XXVI համագումարը որոշակիորեն նշեց. «...մենք բոլորս շահագրգռված ենք, որ մասսայական ինֆորմացիայի ու պրոպագանդայի մեր միջոցները միշտ էլ լինեն կուսակցական ու համաժողովրդական կարծիքի իսկական ամբիոնը: Թերթի կամ ամսագրի յուրաքանչյուր հոդվածը, հեռուստատեսության կամ ռադիոյի յուրաքանչյուր հաղորդումը պետք է դիտել որպես լուրջ խոսակցություն մարդկանց հետ, որոնք անկնկալում են փաստերի ոչ միայն ճշմարտացի ու օպերատիվ շարադրանք, այլև դրանց խոր վերլուծություն, լուրջ ընդհանրացումներ» (**ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը,** էջ 124—125):

ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան (1983 թ.) պլենումը նշեց, որ սոցիալիստական շինարարության ամբողջ փորձով հաստատվում է Վ. Ի. Լենինի առաջ քաշած այն դրույթի ճշմարտացիությունը, որ մամուլը գաղափարական ազդեցության, հասարակության քաղաքական ղեկավարման հզորագույն գործիք է: «**Մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի միջոցները,**— ասաց ընկ. Կ. Ու. Չեռնենկոն,— **աշխատավորների կոմունիստական դաստիարակության ու կազմակերպման, կուսակցության ներքին ու արտաքին քաղաքականության գաղափարախոսական ապահովման ներգործուն գործիք են, իսկական համաժողովրդական ամբիոն:** Հենց նրանց գործունեությունն է մեր օրերում զգալիորեն կանխորոշում կուսակցական պրոպագանդայի արդյունավետությունը, գործերի վիճակը գաղափարախոսական ճակատի մյուս տեղամասերում» (**ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումի նյութերը,** «Հայաստան» հրատ., 1983, էջ 49):

Մեր հանրապետությունն անցած՝ տասներորդ հնգամյակում տնտեսական ու սոցիալական զարգացման, գիտության ու կուլտուրայի անշեղ վերելք ապրեց: Հնգամյակի ընթացքում հասարակական համախառն արտադրանքն աճեց 38,5 տոկոսով, ազգային եկամտի աճը կազմեց 43 տոկոս: Աննախընթաց նվաճումների համար հանրապետությունը հնգամյակի բոլոր տարիներին հաղթող ճանաչվեց համամիութենական սոցմրցության մեջ և հինգ անգամ անընդմեջ արժանացավ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին:

Տասներորդ հնգամյակի տարիներին տնտեսական ու սոցիալական բարդ և դժվարին խնդիրների լուծման ասպարեզում ամբողջ ուժով դրսևորվեցին նաև հանրապետական մամուլի կարողությունները: Ե՛վ «Սովետական Հայաստան», և՛ «Կոմունիստ» թերթերը օգնեցին կուսկազմակերպություններին՝ պարզաբանելու, կոնկրետացնելու ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրած դրույթները: Պրոպագանդելով կուսակցության որոշումները՝ նրանք պայքարել են դրանց անվերապահ կենսագործման համար, վերլուծել կուսկազմակերպությունների աշխատանքը, նշել խընդիրները, բացահայտել թերությունները, լուսաբանել աշխատանքի առաջավոր փորձը: Այստեղից էլ հետևում է նրանց գըլխավոր խնդիրը. օգտակար լինել կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացմանը, և դրանով իսկ մեծ ներդրում ունենալ տասներորդ հնգամյակում հանրապետության տնտեսական ու սոցիալական կանխագծումների իրականացման գործում:

ՍՄԿԿ XXV համագումարը տասներորդ հնգամյակը հռչակեց որպես բարձր արդյունավետության և որակի հնգամյակ: Խնդիր էր դրված հետևողականորեն պայքարել ոչ միայն առանձին թերությունների վերացման համար, որոնցից հնարավոր չի եղել խուսափել անցյալում, այլև ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում արմատապես բարձրացնել պլանավորման, կառավարման, գիտական հետազոտությունների, մատակարարման կազմակերպման, բնակչության սպասարկման աշխատանքների մակարդակը:

Կուսակցության առաջադրանքների անշեղ կատարմանն ակտիվ մասնակցություն ունենալու հանգամանքը մամուլից պահանջեց՝ հանդես բերել հաստատակամություն, բանիմացություն, վճռական կերպով միջամտել հասարակական կյանքի զարգացման բոլոր երևույթներին:

Հնգամյակի տարիներին առանձնապես արժեքավոր են եղել աշխատանքի կազմակերպման ու վարձատրման բրիգադային ձևին առնչվող հրապարակումները: Սիստեմատիկաբար լուսաբանելով կոլեկտիվ աշխատանքը, ցույց տալով բրիգադային աշխատանքի առավելությունները հատկապես նյութերի խնայողության, աշխատաժամանակի կորուստների կրճատման առումով՝ թերթերը բացահայտել են նաև դրա դաստիարակիչ դերը: Նույն կոլեկտիվում միասնական ձգտումով ապրող մարդիկ միմյանց նկատմամբ դառնում են ուշադիր, հարգալից, նրանց մոտ փոխադարձ օգնությունն ու վստահությունը ձեռք է բերում որակական նոր, կոլեկտիվիզմի հատկանիշներ: Այստեղ է, որ թերթերը կուսակցական կազմակերպությունների առջև նոր խնդիր են դնում՝ համարձակ, գործնական քայլերի դիմել, պահպանել ու տարածել, արմատավորել բարձր արտադրողականություն ապահովող մեթոդը, որի արդյունքն ու արդյունավետությունը հաստատվել են առաջավոր ձեռնարկությունների պրակտիկ օրինակով:

Թերթերի հրապարակումներում շեշտվում է այն միտքը, որ բրիգադային եղանակը արտադրական կոլեկտիվներին դարձնում է կայուն, նախաձեռնող ու բանիմաց: Իր վրա կրելով կոլեկտիվ դաստիարակության կնիքը՝ նրա յուրաքանչյուր անդամի մոտ կոլեկտիվի ամրապնդման ձգտումը ձեռք է բերում գործնական բովանդակություն: Այսպես, Կիրովականի լուսատեխնիկական գործարանի կուսկոմիտեի քարտուղար Յու. Վարդանյանը «Գլխավոր ուղղությունը» հոդվածով հանդես է եկել «Սովետական Հայաստան» թերթում (30-ը դեկտեմբերի 1976 թ.): Հոդվածագիրը իրենց գործարանի օրինակով ցույց է տալիս, թե ինչպիսի տնտեսական արդյունք է ապահովում բրիգադային ձևը: Տասներորդ հնգամյակի առաջին տարվանից չորս բրիգադներ ներգրավվեցին «Որակի հնգամյակին՝ բանվորական երաշխիք» շարժման մեջ: Նրանք իրենց առջև նպատակ էին դրել աշխատել առանց հսկիչների և ամբողջ արտադրանքի 96 տոկոսը հանձնել միայն բարձր որակով: Առաջավոր մեթոդը ցանկալի արդյունք տվեց: Չորս բրիգադներն էլ հասան դրան, «պլանավորված ցուցանիշը գերազանցվեց 2,3 տոկոսով կամ արտադրանքի 98,3 տոկոսի նկատմամբ ոչ մի առարկություն չարվեց»:

Ի՞նչ առավելություններ ունի բրիգադային ձևը պրակտիկ խնդիրները լուծելիս և ո՞րն է դրա առավել ուսանելի կողմը: «Կոմունիստ» թերթի 1976 թ. ապրիլի 27-ի համարում տպագրված «Արդյունավետությունը ընդհանուր մտահոգություն» հոդվածը ամբողջությամբ վերաբերում է դրան: Հեղինակը «Երարդշին» տրեստի կուսկոմիտեի քարտուղար Վ. Արևշատյանն է, նա այն կարծիքն է հայտնում, որ իրենց տրեստի պլանների կատարման բարձր ցուցանիշների հասնելու հիմնական երաշխիքը պայմանավորված է բրիգադային մեթոդին անցնելով: Առանց այս հանգամանքի դժվար կլինի խոսել որակյալ արտադրանքի և արդյունավետ աշխատանքի մասին: Այնուհետև նա նշում է հետևյալ փաստը. կուսկոմիտեի հերթա-

կան նիստում քննարկվում էին ամբողջապես բրիգադային համակարգին անցնելու, արտադրողական ուժերի տեղաբաշխման հարցերը: Առաջինը ձայն վերցրեց սոցիալիստական աշխատանքի հերոս Գառնիկ Մանասյանը: Եվ դա պատահական չէր: Նրա ղեկավարած բրիգադը գործարկել էր Ջրվեժի արդյունաբերական հանգույցը, լրացուցիչ շահագործման հանձնել մեկ բնակելի շենք և Երևանի հացի գործարանը: Կարևորն այն է, որ բրիգադը տվել է մեծ քանակությամբ շինանյութերի խնայողություն և նրա անդամների աշխատավարձն էլ սովորական մեթոդով աշխատողներից զգալիորեն բարձր է: Այստեղից էլ՝ մասնագետ կադրերի կայունությունը, հետևաբար՝ արտադրության աճի ապահովումը:

Սակայն միշտ չէ, որ բրիգադային ձևը արմատավորվում է արագ և իր բովանդակությանը համապատասխան: Առանձին ձեռնարկություններում դրան երբեմն նայում են մատների արանքով, չտեսնելով դրա առավել արդյունավետ կողմերը: Ահա թե ինչու երկու թերթերը խիստ քննադատության են ենթարկել այդպիսի վերաբերմունք դրսևորողներին: «Սովետական Հայաստան» թերթը (12-ը հունիսի, 1976 թ.) կոնկրետ փաստերով ցույց է տալիս, որ «Կիրշին» տրեստի բրիգադներում թույլ է աշխատանքային կարգապահությունը, ժամանակին չեն կատարվում պլանները: Եվ դա այն պատճառով, որ անբավարար է նյութատեխնիկական մատակարարումը: Հետևանքը լինում է այն, որ մարդիկ թողնում են աշխատանքը: «...պարզապես դրանք կրում են ձևական բնույթ»:

«Կոմունիստ» թերթը, առաջնորդող հոդվածում (№ 10, 1979 թ.) անդրադառնալով այս հարցին, նշում է, որ չնայած թերթը բրիգադային ձևը լուսաբանում է խոր ու բազմակողմանի կերպով, սակայն առայժմ դրա հետագա զարգացման վերաբերյալ արդյունաբերության շինարարության մինիստրությունից և ոչ մի կոնկրետ առաջարկություն չի ստացվել: «Իսկ զլոբինյան շարժման զարգացման գործը շարունակում է մնալ լավագույն ցանկություն, այն ծավալվում է շատ դանդաղ, և դրա ճանապարհին հանդիպում են արհեստական շատ դժվարություններ»:

Արտադրության կազմակերպման առաջավոր եղանակների պրակտիկ արմատավորման համար պայքարին զուգընթաց՝ «Սովետական Հայաստան» և «Կոմունիստ» թերթերը կուսկազմակերպությունների ուշադրությունը հրավիրեցին նաև չլուծված պրոբլեմների վրա, որոնք դեռևս խանգարում են արդյունավետության ու որակի բարձրացման կուսակցության կուրսի լիովին իրականացմանը: Եվ այստեղ ոչ թե ավելի շատ խոսք է եղել թերությունների վերաբերյալ, այլ նրանց ծնող պատճառների շուրջ, մի բան, որը ավելի շատ էական ու կարևոր է կոնկրետ արդյունքի հասնելու տեսակետից: Բնականաբար, այս բնույթի հրապարակումների նպատակը հանգում է «էկոնոմիկան պետք է լինի խնայողական» կուսակցության ծրագրային պահանջի կատարմանը:

Հարկ է նշել, որ խնայողության հարցերը ավելի հիմնովին են լուսաբանվել: Թերթերը կոնկրետ օրինակներով ու փաստերով ցույց են տալիս, թե ինչպիսի վնաս է հասցվում ժողովրդական տնտեսությանը աշխատաժամանակի կորուստների, ֆինանսական կարգապահության խախտումների, նյութական և աշխատանքային ռեսուրսների աննպատակ օգտագործման հետևանքով:

«Սովետական Հայաստան» թերթի 1976 թ. (№ 235) առաջնորդող հոդվածում նշված է, որ խոտանի պատճառած կորուստները մեծ չափերի են հասնում ժողովրդական սպառման ապրանքներ թողարկող ձեռնարկություններում: «Միայն տարվա առաջին կիսամյակում,— նշել է թերթը,— հանրապետության արդյունաբերության մեջ աշխատաժամանակի կորուստները կազմել են 316 հազար մարդ-օր, որը հավասարազոր է 22 միլիոն ռուբլու համախառն արտադրանք թողարկելուն»: «Անդրկովկասկաբել» արտադրամիավորման Երևանի գլխավորող գործարանում կատարված ընտուգումներից մեկի արդյունքներն ամփոփելիս այն պատկերն առաջացավ, որ ընդմիջման ժամանակն արհեստականորեն երկարացնելու, աշխատանքից մշտապես բացակայելու պատճառով աշխատաժամանակի կորուստները երեք օրում հասել են հաստոցի վեց աշխատանքային ժամվա: Իսկ դա նշանակում է, որ այդ ընթացքում կարելի է արտադրել «ՊՍԴ» մակնիշի 470 կգ հաղորդալար: Մինչդեռ ՍՄԿԿ անդամ Հովհաննես Գրիգորյանն օրական լրացուցիչ արտադրում է 48—50 կգ հաղորդալար «...ու եթե նույն մասնագիտությամբ մնացած 28 հաստոցավարներն աշխատեն այդ առաջավորի օրինակով, ապա արտադրամասը օրական լրացուցիչ կթողարկի 1,5 տոննա արտադրանք» («Սովետական Հայաստան», 22-ը հունվարի, 1980 թ.):

Խնայողության համար մղվող պայքարում «Սովետական Հայաստան» և «Կոմունիստ» թերթերի ակտիվ դիրքը նկատելի է նաև ժամանակակից արտադրության բոլոր օղակների փոխադարձ կապի, միմյանցով պայմանավորված հարցերը քննարկելիս: Այստեղ շեշտվում է, որ մի ձեռնարկության ցածրորակ արտադրանքը կամ արտադրանքի պակաս թողարկումը բացասաբար է անդրադառնում արտադրության ընդհանուր պրոցեսի վրա, այն ետ է պահում. Այստեղից էլ՝ տնտեսական մեծ վնասները, ֆինանսական միջոցների փոշիացումը, աշխատաժամանակի կորուստները և այլն: «Սովետական Հայաստան» թերթի «Նահանջելու տեղ չկա» հոդվածը (11-ը սեպտեմբերի, 1978 թ.) ամբողջությամբ վերաբերում է վերը թվարկված հարցերին: Լենինականի հղկող հաստոցների գործարանը ութ ամիսների ընթացքում նախատեսված պլանից պակաս թողարկեց 2 միլիոն 400 հազար ռուբլու արտադրանք: Նույն ժամանակահատվածի համար գործարանին պլանավորել էին արտադրելու 730 հաստոց, սակայն պլանը թերակատարվեց 140 հատով: Տարբեր պատճառներով, իհարկե, ոչ օբյեկտիվ, թերակատարվեցին ավտոմատ կոմբայնների և մի շարք այլ կարևորագույն արտադրատեսակների թողարկման պլանները: Բացի այդ, 110 միավոր մեքենասարքավորումներ չեն օգտագործվել համապատասխան կադրեր չլինելու պատճառով: Մինչդեռ այդ արտադրատեսակներին սպասում էին երկրի և մեր հանրապետության ձեռնարկությունները՝ գործարանի հետ ունենալով իրենց պայմանագրերը: Եվ ահա այդ ամենի հետևանքով Լիտվական ՍՍՀ-ի Մաժեյկայի էլեկտրատեխնիկական գործարանը, Կիրովականի «Ավտոմատիկա» հատուկ կոնստրուկտորական բյուրոն, Գորիսի վերլուծական սարքերի գործարանը և շատ այլ ձեռնարկություններ իրենց պատվերները չեն կարող ստանալ: Արտադրության կազմակերպման նման տխուր վիճակ չէր կարող առաջանալ, եթե իր բարձրության վրա լիներ կուսակցական կազմակերպությունը: Այս օրինակով թերթը ցույց է տալիս, որ կուսկազմակերպությունները պետք է ավելի մոտիկից խորամուխ լինեն գործի բուն էության մեջ, պարզեն թերությունների պատճառները, ընդունեն համարձակ որոշումներ և հասնեն դրանց կենսագործմանը:

Հասարակական արտադրության զարգացման մասշտաբները հրամայաբար նոր պահանջներ են առաջադրում: Ժամանակակից փուլում որակական բարձր ցուցանիշների և արդյունավետ աշխատանքի ապահովման համար բավարար չեն միայն արտադրության տեխնիկական վերազինումը, աշխատատար պրոցեսների կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումը: Իհարկե, դրանք շատ կարևոր են, սակայն ոչ պակաս կարևորություն են ձեռք բերում նաև պայմանները, այն մթնոլորտը, որտեղ աշխատում է մարդը:

Որպեսզի բանվորի մեջ արմատավորվի իր ձեռնարկության նկատմամբ տիրոջ զգացումը, թերթերը կուսկազմակերպությունների առջև խնդիր են դնում ապահովել ստեղծագործական աշխատանքի, ակտիվ հանգստի, ընկերների հետ շփման լավագույն պայմաններ, այնպիսի սոցիալ-հոգեբանական մթնոլորտ, որտեղ լիովին բացահայտվեն սովետական բնավորության լավագույն հատկանիշները: Այնտեղ, որտեղ ամուր է արտադրական և աշխատանքային կարգապահությունը, բարձր է աշխատանքի կազմակերպման մակարդակը, այնտեղ կոլեկտիվն ամուր է, կայուն են նրա ցուցանիշները: Չարենցավանի ավտոտրանսպորտային ձեռնարկությունը լավագույններից է հանրապետությունում: Պետական պլանների կատարումը վաղուց է դարձել կոլեկտիվի յուրաքանչյուր անդամի ամենօրյա աշխատանքի նորմա: Այդ հաջողությունը ինչպե՞ս է ձեռք բերվել, ո՞րն է դրա գաղտնիքը: Պատասխանը պարզ ու որոշակի տրված է «Սովետական Հայաստան» թերթի (27-ը նոյեմբերի, 1979 թ.) հոդվածում: Ընդհանրացնելով այդ կազմակերպության աշխատանքի փորձը՝ հեղինակը եզրակացնում է, որ գործերի հաջողությունը պայմանավորված է առողջ բարոյահոգեբանական մթնոլորտի առկայությամբ: Այս հանգամանքը բացառում է կադրերի հոսունությունը, մարդկանց փոխհարաբերությունները դարձնում մտերիմ, անկաշկանդ պայմաններ ստեղծում բարձր արտադրողական աշխատանքի համար: Եվ այն, որ այստեղ 300 աշխատողներ ունեն 14 տարուց ավելի աշխատանքային ստաժ, նվազագույնի է հասցված մասնագետ կադրերի հոսունությունը, ինքնին խոսում է կուսկազմակերպության ու ադմինիստրացիայի համատեղ արդյունավետ գործու-

նեության մասին: Նրանք մեծ ուշադրություն են նվիրում աշխատանքի ու հանգըստի անհրաժեշտ պայմանների ստեղծմանը: Գործին շատ է օգնում նաև այն հանգամանքը, որ այստեղ հաստատվել է խրախուսման հստակ համակարգ, որն է՛լ ավելի է բարձրացրել բրիգադների, նրանց անդամների շահագրգռությունն ու պատասխանատվությունը:

Զարգացած սոցիալիզմի պայմաններում սոցմրցությունը ստացել է նոր ձև ու բովանդակություն: Հասարակական կյանքի զարգացմանը համընթաց շեշտակիորեն աճել է դրա ազդեցությունը տնտեսավարման, կառավարման, ինչպես նաև աշխատավորների կոմունիստական դաստիարակության ասպարեզում: Սոցիալիստական մրցության բովանդակությունն ու նպատակն աշխատանքի արտադրողականության ըստ ամենայնի բարձրացումն է, պայքարը՝ թողարկվող արտադրանքի որակի, աշխատաժամանակի կորուստների կրճատման, հումքի, վառելիքաէներգետիկ ռեսուրսների խնայողության համար: Հենց այդ նպատակի իրականացման համար «Սովետական Հայաստան» և «Կոմունիստ» թերթերն անգնահատելի ծառայություն մատուցեցին հանրապետության տասներորդ հնգամյակի պլանների կատարման գործին: Նրանք դարձան սոցմրցության կազմակերպիչներ: Շատ հաճախ օգնում էին կոլեկտիվներին՝ մշակելու սոցպարտավորությունները, սոցիալիստական մըրցության պայմանները: Թերթերը սահմանեցին իրենց հուշադրոշները, պարգևատրում և խրախուսում էին բարձր ցուցանիշների հասած մարդկանց: Մի խոսքով, սոցմրցության մեջ թերթերն իրենց վրա էին վերցրել **մրցավարի** պատվավոր դերը:

Տասներորդ հնգամյակի տարիներին «Սովետական Հայաստան» և «Կոմունիստ» թերթերը շեֆական մեծ օգնություն ցույց տվեցին ատոմակայանի և մետրոպոլիտենի շինարարներին:

Հայկական ատոմակայանում «Կոմունիստ» թերթն ստեղծեց իր առաջին թըղթակցական կետը: «Շինարարները պարտավորվել են երկրորդ հերթը գործարկել ժամկետից շուտ՝ դեկտեմբերի 22-ին», այս խորագիրն էր կրում թղթակցական կետի նախապատրաստած առաջին թողարկումը: Հետագա թողարկումներն ունեին ուրիշ հնչեղություն: Ընդհանուր առմամբ 1979 թ. ընթացքում «Հայկական ատոմակայանը գործարկվող կառույց է» խորագրով թերթը նախապատրաստեց տասներեք թողարկում: Այդ ընթացքում տպագրվեցին հարյուրից ավելի բանվորների, մասնագետների, կառույցի տեղամասերի ղեկավարների ելույթներ, որոնք օգնեցին շինարարներին հայտնաբերելու նոր ռեզերվներ, վերացնելու աշխատանքում եղած թերությունները: Շինարարների, կառույցի ակտիվի հետ խմբագրության արտագնա հանդիպումները աշխատանքային նոր լիցք էին հաղորդում և՛ շինարարներին, և՛ ստեղծագործական կոլեկտիվին: Անկաշկանդ գործնական, անմիջական զրույցների, նաև առաջարկությունների ու պահանջների հիման վրա թերթի հրապարակումները դառնում էին ավելի բազմաբովանդակ, շոշափում նոր պրոբլեմներ, նախանշում դրանց լուծման ուղիները: Այսինքն՝ տպագիր խոսքն ամրապնդվում էր կոնկրետ գործով: Այլ խոսքով ասած, շինարարների և ժուռնալիստների միջև ստեղծվեց մի յուրատեսակ դաշինք: Հատկապես շինարարների մշտական հաղորդումները հնարավորություն ընձեռեցին թերթին՝ լուծելու պետական նշանակություն ունեցող խնդիր՝ համամիութենական հարվածային կառույցը գործարկել ժամկետից շուտ: Սա, իհարկե, գլխավորն էր, որն իր առջև նպատակ էր դրել «Կոմունիստ» թերթը: Սակայն շեֆական օգնությունը պայմաններ ստեղծեց լուծելու նաև ուրիշ խնդիրներ, որոնք իրագործելի դարձրին բուն նպատակը: Նախ՝ թերթն այդ ժամանակահատվածում (այսինքն՝ մեկ տարի առաջ, մինչև երկրորդ հերթի գործարկումը) ոչ միայն պրոպագանդեց աշխատանքի կազմակերպման առաջավոր մեթոդները, այլև հետևողականորեն պայքարեց դրանց պրակտիկ ներդրման համար: Երկրորդ՝ թերթն իր շուրջը համախմբեց լայն թղթակցական ակտիվ, մասնավորապես լավագույն շինարարներին, հասարակական կազմակերպությունների, ադմինիստրացիայի ներկայացուցիչներին:

Թերթի անընդհատ որոնումները միաժամանակ իրենց ճանապարհին հանդիպեցին լուրջ դժվարությունների: Ճիշտ է, ատոմակայանի շինարարները պարտավորվել էին երկրորդ հերթը գործարկել ժամկետից շուտ, բայց նույնանման նախաձեռնություն պետք է հանդես բերեին նաև սարքավորումներ առաքող կազմակերպությունները: Այլապես չէր կարող իրագործվել այն, ինչ պարտավորվել էին շինարարները: Եվ, ահա, թերթը կապվեց տեղական կուսկոմիտեների, կազմակերպությունների հետ: Այս անգամ սոցիալիստական մրցությունը կազմակերպվեց «բանվորական էստաֆետի» սկզբունքով: Թերթում երևացին «Կատարում են պարտավորությունները», «Մատակարարումն ընդհատվում է» և այլ խորագրեր: Այս առնչությամբ յուրաքանչյուր թողարկում ուղարկվում էր համապատասխան կուսակցական կոմիտե, մինիստրություն, գերատեսչություն, աշխատանքային կոլեկտիվ: Նախաձեռնությունը գործնական պաշտպանություն գըտավ: Շուտով Լենինգրադի «Իժորսկիյ գործարան» արտադրամիավորման աշխատողները, Ուկրաինայի կաբելագործները, Վրաստանի մետալուրգները, Ուրալի սարքաշինարարները առաջ անցան գրաֆիկից և կատարեցին իրենց առաջադրանքները՝ հսկայական ներդրում ունենալով ատոմակայանի երկրորդ հերթի գործարկման մեջ:

Շեֆական օգնության ավանդույթների աստիճանական զարգացումը «Սովետական Հայաստան» և «Կոմունիստ» թերթերին հնարավորություն ընձեռեցին «բանվորական էստաֆետի» սկզբունքները արմատավորել նաև Երևանի մետրոպոլիտենի շինարարությունում: Թերթերն այստեղ ցուցաբերեցին ստեղծագործական մոտեցում: «Բանվորական էստաֆետի» թեման դարձավ թերթերի գլխավոր մտահոգությունը և շատ բանով օգնեց ժամանակին ստանալու մետրոշինարարներին անհրաժեշտ բոլոր սարքավորումները:

Կուտակված փորձը թերթերի համար նոր քայլ կատարելու ասպարեզ բացեց: Այս անգամ նրանք ստանձնեցին նաև կառույցի շահագործման ենթակա առանձին տեղամասերի շեֆությունը, որոնք համարվում էին կառույցի «նեղ տեղը»: Նշենք մեկ օրինակ. աշխատանքները հարթ չէին ընթանում մետրոպոլիտենի հորիզոնական և զուգահեռ հորաններում: Գործին անմիջապես միջամտեցին թերթերը: Նրանք հանդես եկան ոչ միայն առաջարկություններով, այլև գործնական մրցություն կազմակերպեցին հորատողների բրիգադների միջև: «Կոմունիստ» թերթը սահմանեց փոխանցիկ հուշադրոշ, որը յուրաքանչյուր ամիս հանդիսավոր պայմաններում հանձնըվում էր ռեկորդային ցուցանիշի հասած բրիգադին: Այնուհետև այն բրիգադին, որն իր ձեռքում երեք անգամ անընդմեջ կարողանում էր պահել հուշադրոշը, իրավունք էր վերապահվում կատարելու մետրոպոլիտենի ստորգետնյա անցուղու վերջին հատվածի հորատումը: Այդ պատվին արժանացան Ա. Առաքելյանի (Երևան), Մ. Տիխոնչուկի (Լենինգրադ) բրիգադները:

Մրցության այս ձևը շուտով լայնորեն տարածվեց նաև կառույցի մյուս կարևորագույն տեղամասերում: Թերթերը դարձան մրցության անմիջական կազմակերպիչներ, ապահովեցին դրա հրապարակայնությունը:

Որակի և արդյունավետության համար մղվող պայքարում, շեֆական օգնությունից բացի, «Սովետական Հայաստան» և «Կոմունիստ» թերթերը հանդես եկան ուրիշ շատ նախաձեռնություններով, որոնք նըպաստեցին հանրապետության էկոնոմիկայի հարաճուն զարգացմանը: Նրանք պաշտպանեցին և լայնորեն տարածեցին թեթև արդյունաբերության աշխատողների փորձը, ամուր կապեր հաստատեցին ձեռնարկությունների ինժեներատեխնիկական անձնակազմի, բանվորների հետ, որի շընորհիվ մոտավորապես երկու անգամ կըրճատվեցին նոր նմուշի մոդելների ներդըրման ժամկետները:

Առանձնահատուկ ուշադրության են արժանի հատկապես թերթերի՝ գյուղատնտեսության զարգացմանը վերաբերող հրապարակումները: «Անասնապահությունը՝ հարվածային ճակատ» ընդհանուր խորագրով թերթերը խորությամբ վերլուծում էին ժամանակակից գյուղատնտեսության հրատապ պրոբլեմները, նշում դրանց լուծման առավել նպատակահարմար ուղիները: Մասնավորապես շեշտվում էր այն միտքը, որ անհրաժեշտ է բարձրացնել անասնապահության և հողագործության վարման կուլտուրան: Այստեղ արդեն պետք է իրականացվեն կոմպլեքսային միջոցառումներ, ստեղծվեն ագրոարդյունաբերական խոշոր միավորումներ, որպեսզի հնարավոր լինի գյուղատնտեսությունը փոխադրել ինտենսիվ զարգացման ուղու վրա:

«Կոմունիստ» թերթը, վերլուծելով Նոյեմբերյանի շրջանի խաղողագործների աշխատանքը, հնգամյակի առաջին տարվանից հանդես եկավ «Այգիներին և խաղողի պլանտացիաներին՝ գերազանց որակ» կոչով: Շուտով այդ շարժման մեջ ներգրավվեցին ուրիշ խաղողագործական շրջաններ, որոնք նոյեմբերյանցիների օրինակով սկսեցին վերակառուցել այգիները, կիրառեցին ջրման ու խնամքի նրանց մեթոդները: «Որակի անձնագրի» համար պայքարը դարձավ մասսայական, ընդգրկեց ավելի մեծ թվով կոլեկտիվների: Հրապարակայնորեն ներկայացնելով գոր-

ծերի իրավիճակը՝ թերթը ոչ միայն նպաստեց խաղողագործության վարման կուլտուրայի բարձրացմանը, այլև հողագործության մասշտաբային զարգացմանն առհասարակ: Այդ ճյուղն սկսեց ավելի վճռական դեր խաղալ հանրապետության էկոնոմիկայում:

Թվարկված թեմաները հանգամանորեն լուսաբանվել են «Սովետական Հայաստան» և «Կոմունիստ» թերթերի հրապարակումների միջով: Նրանք մանրակրկիտ վերլուծել են հանրապետության էկոնոմիկայի զարգացման առանձնահատկությունները, ընդհանրացրել արտադրության կազմակերպման ասպարեզում ձեռք բերված առաջավոր փորձը:

Տասներորդ հնգամյակի տարիներին կուսկազմակերպությունների մարտունակության բարձրացման նպատակով «Սովետական Հայաստան» և «Կոմունիստ» թերթերի ծավալած գործունեությունը որոշակիորեն նպաստեց հանրապետության սոցիալ-տնտեսական զարգացմանը: Այն միաժամանակ է՛լ ավելի հարստացրեց մամուլի պրոպագանդիստական և կազմակերպչական աշխատանքի փորձը: Ընդհանուր հսկողության տակ առնելով էկոնոմիկայի հանգուցային հարցերը՝ թերթերը ոչ միայն նշեցին դրանց լուծման առավել արդյունավետ ուղիները, այլև իրենք նպաստեցին դրանց գործնական իրականացմանը: Թափանցելով արտադրության կազմակերպման բոլոր բնագավառները՝ թերթերն իրենց հրապարակումներով նպաստեցին խնայողության ռեժիմի, արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման և մյուս գործոնների խըստագույն կիրառմանը:

Տնտեսական դաստիարակությունը Վ. Ի. Լենինը համարում էր մամուլի առաջնակարգ խնդիրներից մեկը: Հետևելով լենինյան այս պատվիրանին՝ «Սովետական Հայաստան» և «Կոմունիստ» թերթերը հաջողությամբ շարունակում են կոլեկտիվ ագիտատորի ու պրոպագանդիստի և կոլեկտիվ կազմակերպչի իրենց դերը: Դրանով իսկ նրանք անգնահատելի ծառայություն են մատուցում նաև ընթացիկ հնգամյակում կուսակցության սոցիալ-տընտեսական կանխագծումների իրականացմանը:

**Ֆ. ՂԱԶԱՐՅԱՆ**



# ՈՒՇԱԳՐԱՎ ՀԵՏԱԶՈՏՈՒԹՅՈՒՆ ԳԻՏՈՒԹՅԱՆ ԾԱԳՄԱՆ ԵՎ ՖՈՒՆԿՑԻԱՆԵՐԻ ՄԱՍԻՆ

ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԿԵՆՍԱԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅԱՆ մեջ գիտության դերի հետ կապված պրոբլեմները գտնվում են մարքսիստական հասարակագիտության հետազոտությունների կիզակետում: Նման իրավիճակն ամենից առաջ պայմանավորված է XX դարի կեսերից սկսված գիտատեխնիկական հեղափոխությամբ, որի ազդեցությունը ողջ հասարակական կյանքի վրա անընդհատ աճում է: Արդ, գիտության մարզում կատարվող հեղաշրջումը ելակետային գործոնի դեր է խաղում, որոշում տեխնիկական առաջընթացի, հասարակական արտադրության զարգացման միտումը: Սոցիալիստական հասարակարգում գիտության դերի աճը պայմանավորված է նաև այդ հասարակության բուն էությամբ:

Սոցիալիզմի պայմաններում գիտատեխնիկական հեղափոխության ծնած նոր հնարավորությունները որակապես ընդլայնում են հասարակության կյանքի վրա գիտության ազդեցության ոլորտը և էականորեն խորացնում այդ ազդեցության չափը: ԳՏՀ-ի շնորհիվ սոցիալիստական հասարակությունն սկզբունքորեն նոր հնարավորություններ է ստանում երկրի սոցիալ-տնտեսական և գիտատեխնիկական զարգացման պլանավորման, սոցիալ-տնտեսական և կուլտուրական շինարարության պրոցեսների գիտական կառավարում իրականացնելու համար:

Անընդհատ աճում է սոցիալիստական հասարակության կենսագործունեության այն ոլորտների թիվը, որոնց արդյունավետության բարձրացումն անհրաժեշտաբար պահանջում է գիտության միջամտություն: Կարելի է համարձակ պնդել, որ ինչպես մեր հասարակության նոր նյութատեխնիկական հիմքը, այնպես էլ սոցիալիստական հասարակական հարաբերությունների կատարելագործման ու նոր մարդու դաստիարակության եռմիասնական խնդրի լուծումն այսօր պահանջում են գիտության զարգացման որակական թռիչք:

Հիրավի, գիտության՝ որպես սոցիալական երևույթի, ծագման, զարգացման ու գործառնության օրինաչափությունների մեր իմացությունը հարստացնող ամեն մի հետազոտություն խորացնում է հասարակության կյանքում գիտության դերի, ինչպես և գիտության կողմից այդ դերի «մեխանիզմի» ըմբռնումը և, հետևաբար, ունի առաջնակարգ տեսական ու գործնական նշանակություն:

Այս առումով արժանի է նշել Ա. Մ. Էկմալյանի **Գիտությունը. ծագումը և սոցիալական ֆունկցիան*** մենագրությունը: Դրա հրատապությունը պայմանավորված է այն բանով, որ հետազոտության առանցքում դրված է գիտության սոցիալական ֆունկցիայի և դրա իրականացման եղանակի հարցը: Բուն այդ խնդրով էլ որոշվում է գրքում քննարկված հետազոտական պրոբլեմների ողջ շրջանակը:

Գիտության սոցիալական ֆունկցիայի բնույթի հետազոտությունը, նշված է գրախոսվող մենագրությունում, պահանջում է, մի կողմից, բուն գիտության իմացաբանական, տրամաբանամեթոդաբանական, սոցիոլոգիական վերլուծություն, մյուս կողմից՝ աշխատանքային գործունեության, հասարակական-պատմական պրակտիկայի՝ որպես այդպիսինի վերլուծություն: Վերջապես, մատերիալիստական դիալեկտիկայի այն հիմնարար պահանջի համաձայն, ըստ որի առարկան իրապես իմանալու համար անհրաժեշտ է այն դիտարկել իր առաջացման և զարգացման մեջ, գրքում հետազոտվում և վերլուծվում

* А. М. Экмалян — Наука: генезис и социальная функция. Ереван, изд. АН Арм. ССР, 1983, 250 стр.

է գիտության ծագման և նրա սոցիալական ֆունկցիայի կազմավորման պրոցեսը:

Ընդսմին աշխատության մեջ և՛ բուն գիտության, և՛ հասարակական-պատմական պրակտիկայի, և՛ գիտության ծագման վերլուծությունը խստորեն ենթարկվում են հետազոտության գլխավոր խնդրին՝ գիտության սոցիալական ֆունկցիայի բնույթի ըմբռնման խորացմանը: Ահա թե ինչու գիտության վերլուծությունն աշխատության մեջ տարվում է առավելապես նրա յուրահատուկ սոցիալական ֆունկցիայի իրականացումն ապահովող հատկանիշների առանձնացման տեսանկյունից, իսկ հասարակական-պատմական պրակտիկայի հետազոտության ժամանակ վերլուծվում է գլխավորապես նրա այն առումը, որն առանձնապես ակնառու է դարձնում աշխատանքի կառուցվածքում գործունեության հոգևոր և ֆիզիկական պոտենցիալի գործառնությունը: Վերջապես, գիտության ծագման վերլուծությունը նպատակամղված է առաջին հերթին բացահայտելու այն հասարակական պահանջմունքները, որոնք անմիջականորեն որոշում են գիտության ծագումը, ինչպես և իմաստավորելու գործոնների այն ողջ համակարգը, որը հնարավոր է դարձնում այդ պրոցեսը:

Հեղինակն իր հետազոտությունն սկսում է սովետական և արտասահմանյան գրականության մեջ «գիտություն» հասկացության առկա սահմանումների վերլուծությունից, միևնույն ժամանակ ձևակերպելով սեփական դիրքորոշումը տվյալ հարցում, հանգելով այն եզրակացությանը, որ առավել ճշգրիտ է գիտության բնութագրումը՝ որպես գիտական գիտելիքի արտադրության հասարակական ենթահամակարգ, որպես ամբողջական սոցիալական օրգանիզմ:

Գրքում հիմնավոր կերպով ցույց է տըրված, որ հասարակության մեջ գիտությունն այն նույն դերն է խաղում, ինչ որ և առօրեական, օբյեկտիվորեն ճշմարիտ իմացությունը, սակայն նա դա կատարում է որակապես ավելի բարձր մակարդակով: Ըստ հեղինակի, և՛ գիտությունը, և՛ առօրեական իմացությունը սերտորեն առնչվում են մարդկանց աշխատանքային գործունեությանը, որպես գիտակցված-նպատակամղված պրոցես, բանական բնույթ հաղորդելով դրան: Սակայն գիտությունը, նշում է հեղինակը, ընդունակ է ապահովել գործունեության նպատակահարմարության այնպիսի աստիճան, որն սկզբունքորեն անմատչելի է առօրեական իմացությանը: Դա նպատակահարմարության այն աստիճանն է, որում մարդկային գործունեությունը հետևողական բանական բնույթ է ձեռք բերում: Նշենք, որ այս կապակցությամբ հեղինակը գրականության մեջ առաջին անգամ տալիս է «հետևողական բանական գործունեություն» հասկացության սահմանումը: Գիտության և առօրեական իմացության մանրազնին ու համակողմանի համադրական վերլուծության միջոցով բացահայտվում են գիտության այն յուրահատուկ հատկանիշները, որոնք, ի տարբերություն առօրեական իմացության, բացատրում են մարդկային գործունեությանը հետևողական բանական բնույթ տալու կարողությունը:

Համոզիչ է նաև այն հետևությունը, որ աշխատանքի բոլոր տեսակները, ներառյալ և գիտությունը, աշխատանքի սուբյեկտի ֆիզիկական և հոգևոր իրականացումն են և սկզբունքորեն միևնույն կառուցվածքն ունեն: Դա **Կապիտալում** Կ. Մարքսի հայտնագործած նյութական-արտադրական **աշխատանքի կառուցվածքն** է, որն արտահայտվում է աշխատանքի պրոցեսի դրսևորումներում: Դա հեղինակին հնարավորություն է ընձեռում մասնահատելու, հանգամանորեն վերլուծելու աշխատանքի հոգևոր բաղադրիչը, որը գրքում անվանվում է հոգևոր պոտենցիա: Ըստ հեղինակի սահմանման, աշխատանքի հոգևոր պոտենցիան ոչ այլ ինչ է, եթե ոչ աշխատանքի գործողության մեջ աշխատանքի սուբյեկտի հոգևոր ուժերի իրականացված մասը: Ընդսին շեշտվում է, որ պոտենցիալ կերպով մարդու բոլոր ֆիզիկական և հոգևոր ուժերը կարող են գործառնել որպես աշխատանքի ֆիզիկական կամ հոգևոր պոտենցիա: Միաժամանակ, աշխատանքի սուբյեկտի ընդունակությունների կառուցվածքում հատկապես ակնառու առանձնանում է նրա հոգևոր ընդունակությունների այնպիսի մասը, որը մշտապես իրականանում է աշխատանքի պրոցեսում: Հեղինակն այդ մասը հոգևոր պոտենցիայի միջուկ է անվանում և հաստատում, որ դրա կարևորագույն բաղադրիչը աշխատանքի սուբյեկտի իմացական կարողությունը և դրա արդյունքը՝ գիտելիք է: Ահա թե ինչու այդ դերում, ինչպես նշում է հեղինակը, կարող են (մի շարք պատճառների հետևանքով) հանդես գալ կա՛մ առօրեական իմացությունը, կա՛մ գիտությունը, կամ էլ այդ երկուսը միաժամանակ: Գրքում այդ պատճառները բացահայտվում և հանգամանորեն հետազոտվում են, ինչը գործնական առումով կարևոր նշանակություն ունի (տե՛ս էջ 63—78):

Այստեղ հիմնավորվում է այն եզրահանգումը, որ աշխատանքի բոլոր տեսակները, այդ թվում և գիտությունը, ունեն իրենց հոգևոր պոտենցիան: Աշխատանքային պրոցեսում նրա գործողության հետևանքով, նշում է հեղինակը, ձևակերպվում է աշխատանքային ակտի նպատակը, մշակվում է դրա իրականացման պլանը, վերահսկվում են այդ պրոցեսում աշխատանքի սուբյեկտի գործողությունները: Սակայն և՛ նպատակի ձևակերպումը, և՛ պլանի ընտրությունը, և՛ աշխատանքի սուբյեկտի գործողությունների վերահսկումը հնարավոր են դառնում միայն այն բանի շնորհիվ, որ աշխատանքի հոգևոր պոտենցիայի մեջ կա այնպիսի բաղադրիչ, ինչպիսին աշխատանքի սուբյեկտի իմացական ընդունակությունն է, որի մակարդակի զարգացումով են պայմանավորված մեր կողմից ձևակերպվող նպատակների և գործողության պլանի ռեալության ու ճշգրտության աստիճանը: Գիտությունը՝ որպես առօրեականի համեմատությամբ իմացության և գիտելիքի որակապես ավելի զարգացած ձև, ապահովում է մեր գործողությունների նպատակահարմարության ավելի բարձր աստիճան, քան առօրեական իմացությունը (տե՛ս էջ 75—77):

Գիտության, որպես հասարակության ենթահամակարգի, էությունը բացահայտվում է աշխատանքի հոգևոր պոտենցիայի նրա դերում, որի գործողության շնորհիվ որակապես աճում է մարդկային գործունեության նպատակահարմարության աստիճանը: Հեղինակն, ընդսմին, հանգամանորեն հետազոտում է գիտության՝ աշխատանքի այս կամ այն տեսակի հոգևոր պոտենցիայի վերածվելու պայմանները: Այստեղ ցույց է տրված, որ գիտության վերածումը նյութական-արտադրական գործունեության հոգևոր պոտենցիայի, պայմանավորված է եղել փորձարարական բնագիտության ծագումով, մեքենաների գյուտով, դրանց մասսայական տարածումով և բուրժուական հասարակական հարաբերությունների հաղթանակով:

Գիտության սոցիալական ֆունկցիայի նման մեկնաբանությունը հեղինակին հնարավորություն է ընձեռել հանգելու նաև մի ուրիշ հիմնարար եզրակացության. հոգևոր պոտենցիայի իր սոցիալական ֆունկցիան գիտությունը կատարում է ի սկզբանե, այլ ոչ թե միայն իր զարգացած փուլերում: Հիմնավորելով այս դրույթը, հեղինակը քննարկում է գիտության ծագումը, մասնահատում և հետազոտում է դրա պատճառները՝ հատուկ նշանակություն վերագրելով այն էական փոփոխություններին, որոնց ենթարկվում է անտիկ հասարակության հասարակական պահանջմունքների կառուցվածքը:

Գրքում զարգացվում են նաև մի շարք այլ ինքնուրույն գիտական գաղափարներ, այդ թվում իրավական գիտակցության զարգացման մակարդակի նշումը՝ որպես գիտության ծագման հոգևոր աղբյուրներից մեկի, առաջադրվում, հիմնավորվում և օրինակներով լուսաբանվում է «փիլիսոփայության երկրորդ ծագումը» հասկացությունը և այլն:

Օգտագործելով քննարկվող պրոբլեմի շուրջ հայրենական և արտասահմանյան ականավոր հետազոտողների բազմաթիվ աշխատություններ, հեղինակն ընդսմին լայնորեն հղում է կատարում Սովետական Հայաստանում, մասնավորապես ՀՍՍՀ գիտությունների ակադեմիայի փիլիսոփայության և իրավունքի ինստիտուտում Ս. Թովմասյանի, Հ. Գևորգյանի, Է. Մարգարյանի, Ս. Ավետիսյանի, Ա. Մանասյանի և իր կողմից գիտաբանության բնագավառում առաջադրած և միութենական ճանաչում գտած մի շարք նոր մոտեցումներին ու հայեցակետերին: Գիտության ծագման պրոբլեմը հետազոտելիս նա լայնորեն շրջանառության մեջ է դնում նաև գիտության ծագման վերաբերյալ հայ իրականությունում եղած մի շարք հետաքրքիր փաստեր ու իրողություններ: Ընդհանրապես պետք է նշել, որ աշխատության մեջ բավականին լայն ու խոր վերլուծված, իմաստավորված ու տեղին օգտագործված են փիլիսոփայության դասականների կարևորագույն հարցադրումներն ու եզրահանգումները, որոնց շնորհիվ աշխատությունն առանձնակի արժեք է ստանում:

Ամբողջությամբ բարձր գնահատելով աշխատությունը, հարկ է նշել, որ այն զերծ չէ որոշ բացթողումներից ու վրիպումներից: Այսպես, գիտության սոցիա-

լական ֆունկցիայի հեղինակային մեկնաբանությունը, մեր կարծիքով, պահանջում էր ավելի հանգամանորեն քննարկել, մի կողմից, հասարակության՝ որպես բարդ կազմակերպված համակարգի, հարցը, որի մեջ գիտությունը նրա ենթահամակարգերից միայն մեկն է, մյուս կողմից, տալ գիտության՝ որպես հասարակության ենթահամակարգի ամբողջականության, ավելի խոր հիմնավորում: Դա անհրաժեշտ է մասնավորապես այն առումով, որ գրախոսվող աշխատությունում խոսքը ոչ թե պարզապես առանձին գիտությունների, այլ ամբողջությամբ վերցրած գիտության՝ որպես սոցիալական ինստիտուտի, սոցիալական ֆունկցիայի մասին է: Այնուհետև, մեր կարծիքով, երրորդ գլխի 1-ին և 2-րդ պարագրաֆները ծանրաբեռնված են ավելորդ պատմափիլիսոփայական նյութերով: Լրացուցիչ փաստարկման կարիք ունի 4-րդ գլխի 2-րդ պարագրաֆում գիտության կազմավորման և պատմական զարգացման պրոցեսում գիտական գործունեության պահանջմունքների խաղացած դերի մասին հեղինակի առաջադրած հույժ ինքնատիպ դրույթը: Սակայն նշված թերացումները մասնակի բնույթ ունեն և չեն նսեմացնում գրախոսվող գրքի բարձր արժեքը: Գրված լինելով գիտական բարձր մակարդակով, պարունակելով մեծաքանակ ու բազմազան փաստական նյութ, Ա. Մ. Էկմալյանի հետազոտությունը հաջողությամբ լուծում է տեսական ու գործնական առումով հույժ արդիական մի շարք սոցիալական հարցեր, հանդիսանում է գիտության՝ որպես մարդու աշխատանքային գործունեության հոգևոր ասպեկտի մասին ամբողջական հայեցակետի մշակման միանգամայն հաջողված փորձ, որը կարող է տեսական հիմք ծառայել հասարակական արտադրության մեջ գիտության դերի հետագա բարձրացման բնագավառում ՍՄԿԿ XXVI համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի հետհամագումարյան պլենումների առաջադրած մի շարք սոցիալ-տնտեսական խնդիրների գործնական մշակման համար:

**Մ. ՄԵԼԻՔՅԱՆ**
**Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր**
**ՀՍՍՀ գիտության վաստակավոր գործիչ**

---



Վերստուգող սրբագրիչ՝ Մ. Բ. ՑԱՅԼՈՅԱՆ, թողարկիչ՝ Մ. Պ. ԲՈՅՆԻԿՅԱՆ

Адрес редакции: 375023, Ереван—23, пр. Орджоникидзе, 2.

Խմբագրության հասցեն՝ **375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—06, պատասխանատու քարտուղար՝ 52—99—22, մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի բաժին՝ 52—05—58, կուսակցական կյանք բաժին՝ 52—25—43, էկոնոմիկայի բաժին՝ 52—57—56, գիտության և կուլտուրայի բաժին՝ 52—99—34, խմբագրության վարիչ՝ 52—99—36, գրական աշխատողներ՝ 52—66—77:

*Հանձնված է շարվածքի 18.09.84 թ.: Ստորագրված է տպագրության 16.10.84 թ.: ՎՖ 04696: Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրություն՝ բարձր: 8,4 պայմանական տպ. մամ., 9,8 հրատ. մամ., Տպաքանակ՝ 16.032: Պատվեր 1822*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան 23, Օրջոնիկիձեի պող. № 2:*
Типография издательства ЦК КП Армении.
Ереван-23, пр. Орджоникидзе, 2.